# ԸՆԴՀԱՆՈՒՐ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԴԱՐԱԳԱՏՈՒՄ

Տեառն Հ. Ղուկասու Վարդապետի
Ինճիճեան
'Ի Միաբանութենէ Մխիթարեան։



ՈՐ Է

## ԱՇԽԱՐՀԱՄԱՐ

ԿԱՄ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Քաղաքական, Եկեղեցական, Ուսումնական, և Արուեստական.

Դարուց 'ի չորս բաժանեալ։



-1-

ԴԱՐ ՈՒԹՈՒՏԱՍԱՆԵՐՈՐԴ
1750—1757

'Ի ՎԵՆԵՏԻԿ
'Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ
1824

# ԱՌ ԸՆԹԵՐՑՈՂՍ

Ընդհանուր աշխարհական պատմութիւն յոլովից ազգաց ծանօթ գոլով՝ գեղեցիկ և ցանկալի գիտեմք լեալ ամենեցուն 'ի բարեկիրթ քիմս բանասիրաց անձանց, որոյ և բազմաւորակի յաճախութի առ քաղաքացեալ անձինս՝ զնոյն յայտ առնեն։

Սորայս բարետոհմութեան արգասիք որչափ հարկաւորք և օգտակարք՝ նոյնչափ և առաւել պակասեալ գտանին յարամեանս մեր բարբառ, յորում հազիւ է տեսանել զիւրոյ ազգին պատմութի, իսկ ասկս այլոց ազգաց ընդ համօրէն աշխարհ սփռելոց՝ գրեթէ համակ վերջացեալ տեղեկութի, որ արդարև ցաւալի պակասութի ասացի, եթէ 'ի կարևորագոյն ինչ շահեկանութէ զրկեալ։ Տենչ բանասիրաց գեղեցիկ մոլութբ 'ի սոյն վարելոց, 'ի սոյն յայս խրախուսեալ թևակոխել ասպարէզ՝ զօտևորեալ զմեզ զօրացոյց 'ի սորայս ձեռնարկութի. գործ բարեխորհուրդ դատեալ միաձայնաւ զամենայն ազգաց միանգամայն տալ պատմու-

թիւն համաշխարհական, քան թէ ուրոյն
զմիոյ զմիոյ ազգի տեղեկութի։

'Ի յոքնախուռն ընդհանուր պատմութիւնս եւրոպացւոց մինչեւ ցայժմ 'ի վեր երեւեալս բազմագիր վիպասանութիւք, Ճոխագոյն եւ Ճշգրտապատում հանդիսացեալ գտաւ այն՝ որ 'ի յանգղիականն արձանագրեալ կայ բարբառ Ընդհանուր Պատմութիւն։ Գործ 'ի յոգունց բանասիրաց աշխատասիրեալ 'ի մէջին անդ ժը դարուն, 'ի բազմապատիկ հատորս ընդարձակեալ, եւ յայլեայլ լեզուս թարգմանեալ, որ 'ի գաղղիական թարգմանութեան 'ի ժե հատորս բովանդակի, որոյ եւ համառօտութիւն ուրումն Անքվիդելլ անուն մատենագրի 'ի գաղղիականն յօրինեալ յերկոտասան փոքր հատորս, նոյնպէս 'ի զանազան լեզուս եղեւ թարգմանեալ։

Այլ առաջինն կարէ իմն ընդարձակ վասն մեր նորուսումն ազգի, յորում վարք երկուց կամ երից կայսերաց զուգընթաց գրաւեալ ունին հատոր. իսկ երկրորդն կարի իմն համառօտեալ հարեւանցիկ պատմութիւք Ճշդելով կարօտ թողու զլսելիս տենչողացն յանկրնդրութի տեղեկութեանց կարեւոր անցից, զոր եւ չիք մերոյ յայս գիրս ինչ գտանել։ Յորմէ ապա հարկ 'ի վերայ առեալ գուն գործեցաք ոչ երկարապատում բանիւք աշխատ առնել զունկնդիրսն, եւ ոչ սղագունիւքն զեղչելով զրկել զլսելիս 'ի կարեւորաց, այլ երկոցունց հրաժեշտ տուեալ առաւելութեանց, զմիջինն պատուեալ չափաւոր տեղեկութեանք տալ ծանօթութի անցիցն ան-

ցեղոց ըստ պարագայից, ըստ ժամանակին, ըստ տեղւոյ՝ և ըստ անձանց խօսակցուեց, ոչ զանց առնելով զկարեւորօքն որչափ ինչ բերէր յարմարութիւն պատմութեան, որպէս զի մի կարօտասցին ընթերցողացն վարանք և յայլոց գրոց ակնկառուցց դեգերել առ 'ի լրութիւն պակասութեան.

Ընդ լրութեան պատմութեան՝ և նման բաժանմանն դիւրութեան փոյթ յանձին կալաք. քանզի ոմանց 'ի թուականս բաժանեալ, այլոց 'ի գիրս և 'ի գլուխս՝ (որ է բաժանումն ըստ կամի,) իսկ կիսոց ոչինչ բաժանումն արկեալ՝ զընթացան անընդհատ հանապազորդեն: Նախագրեալ աշխարհամար պատմութիւն անգղիական նախ անդուստ 'ի սկզբանէ լինելութեան աշխարհի մինչ 'ի քն տարեալ հասուցեալ զպատմութիւն, իսկ որ զկնի այնր՝ յերկուս մասունս բաժանեալ, 'ի քնէ մինչ յառումն բիւզանդիոյ որ 'ի Փաթիհ Բ. սուլդան մէհէմմէտէ՝ կոչէ Հին պատմութիւն, իբր յայնժամ ըստ ամենայնի աւարտ լեալ նախնի հռոմէական կայսերութեան, և զորս զկնի առմանն բիւզանդիոյ՝ կոչէ Նոր պատմութիւն:

Նա այսուքիւք խորհրդածեալ՝ զայն մեզ 'ի ճահ թուեցաւ մուծանել բաժանումն յայսմ աշխարհամար պատմութեան, զոր բանագիտաց դասք մուծին յեկեղեցական պատմութիւն, այն է 'ի դարս կամ 'ի հարիւրեակս բաժանել, զոր Մակտէպուրկեան հնգեակ վիպասանիցն ընկերութեան եղեւ նախ առաջին զայս հնարել խորհուրդ.

Ֆրանչիսքոսի Պալատինի 'ի գերմանիա, յոր ապա յաւելան և այլ չորքեքին ընկերակիցք. զկնի և այլք հետզհետէ առ սոսա յարակցեալք, բայց գլուխ առ նոսա դասեալ Մատթիա Ֆլաքքոս Լիւրիկեցի. որոց միահամուռ 'ի մէջ Հարիւրերեակս բաժանեալ զպատմութիւն, որ է ասել 'ի մէջ Դարս, և զանցնիւր դար 'ի մէջ նիւթս եկեղեցական պատմութեան կարգեալ, տպագրեցին 'ի 1559 'ի մէջ մեծամեծ հատորս: Որոց ապա զհետ երթեալ և երևելւոյն Պարոնիոսի իբր նովին բաժանմամբ՝ բայց առաւել ճոխագոյն և հմտագոյն տեղեկութեամբ 'ի լոյս եհան զիւրն Տարեգրութիւն 'ի մէջ մեծամեծ հատորս տպագրեալ 'ի Հռոմ 'ի 1588: Նու-յայնմ օրէ և առյապայ իբր օրէնք իմն եղև սահմանեալ առ հասարակ առ եկեղեցական պատմագիրս 'ի նոյն ընթանալ շաւիղ 'ի բաժանմունս դարապատումս՝ մի քան զմի առաւել բարեկարգեալս:

Ըստ սմին սակի բաժանման կարգել նաև զառաջիկայս ընդհանուր պատմութիւն՝ և մեզ ընտրելի. որոյ լայնածաւալ իմն սփռեալ տարատարոհեալ 'ի բազմաշեղջ ամաց յոլովութիւն՝ որ 'ի նախնականն՝ և որ յառյապայսն, քանզի դիւրութեան արդեօք հանդիպել դատեսցի ընթերցողն հարիւրեմեան դարապատում հոլովմամբ, որոշ և ամփոփ հաւաքմամբ առաջի աչաց բոլորեալ տանել զանկոպար ծաւալեալսն, յիւրաքանչիւր հարիւրեակս զհարիւրեմեանն ունելով զանցից պատմութիւն, զոր այլք սփիւռ տարաբաշ-

խեալ, առանց ինչ չափու սահմանի դըժուարին գործեցին յընդունելութիւն համբակաց :

Ո կարգ պատմութեն ոմանք 'ի վերայ ամաց ունին, հանդէպ իւրաքանչիւր ամաց դնելով զեղելսն, այլ այս է զզանազանութի այլեւայլ գործոց 'ի մի ամփոփել, իսկ զհանապազորդութիւն մի եւ նոյն գործոյ համարէին ընդհատել, միայն զժամանակին դիտեալ զնոյնութի եւ զստուգութի, զոր եւ տարբեր իմն ոճ համարելով օտար 'ի պատմութենէ, տարբերեալ անուամբ Ժամանակագրութիւն անուանեցին. յորում գլուխ հանդիսացեալ առ նախնիս Եւսեբեայ կեսարացւոյ, ապա զշաւղաց նորա զհետ երթեալ առ մեզ Սամուէլի երիցու, իսկ յայժմուս երեւելի քան զամենեսին արձանացեալ Պետաւիոս, եւ առաւել եւս Ուշըր (ուսսերիոս) անգղիացի (1) : Մեք 'ի վերայ

---

(1) Գեղեցիկ եւ ճոխագոյն ժամանակագրութիւն 'ի լոյս հանին եւ պենետիկտեանք, այլ խառն հարուստ պատմութեք միահամուռ ամենայն տէրութեց փոքունց եւ մեծաց, բայց 'ի Քնէ եւեթ սկզբնաւորեալ 'ի գիրսն մակագրեալ. Արուեստ ստուգելոյ զթըւականս : Գործ արժանի պսակման, ուր առ 'ի ստուգել զժամանակս՝ յաւելին նաեւ զամենայն խաւարմունս լուսնի եւ արեգական աստղաբաշխական հաշուիւ գտեալս 'ի սկզբանէ անտի մինչեւ ցայժմ. որով ամենայն յիշատակութիւնք նոյն խաւարմանց առ պատմագիրս յիշելոց այսպէս ուղղեալք, լինին իբր ընդհանուր կանոն ստուգելոյ զժամանակս ամենայն անցից պատմելոց 'ի նոյն ժամանակս : Մի այն պակասութիւն այսր գործոյ գտանիմք զարեւ-

ազգաց կարգադրեալ զբաժանմունսն, ըստ զանազան ազգաց նոյնչափ և 'ի զանազան հատորս բաժանեցին. բայց զայս անկ էր կոչել ոչ ընդհանուր պատմութիւն, այլ հաւաքումն պատմութեանց զանազան ազգաց, զոր մարթ էր ընթերցողին գտանել, ուրոյն ուրոյն ընթեռնլով զիւրաքանչիւր ազգաց պատմագիրս: Ո՛ւր թողցուք զի զմի և ըզնոյն գործ կամ զպատերազմ հարկ լինի 'ի բազում հատորս կրկնել ուր համառօտ, և ուր ընդարձակ, յայնմանէ որոց կամք լինին զմիոյ միայն պատերազմի կատարեալ ընթեռնուլ պատմութիւն, 'ի նոյնչափ հատորս պէտք են յածեալ թարթափել, որչափ ինչ ազգաց մասնակցութիւն գտանի յայնմ պատերազմի:

Ո այսոսիկ համօրէն կշռադատեալ, ըստ կարգի գործոյն ընտրեցաք հետևել, բայց և ոչ կամելով այնչափ ինչ 'ի ժամանակակիտէն հեռանալ արտավէպ նահանջմամբ, մի եղեալ յետ պատմելոյ զերևելի գործս միոյ ազգի և տեղւոյ՝ այնուհետև անցանել և 'ի պատմութիւն գործելոց յայլոց ազգաց, իսկ առ 'ի ստուգագէտ տեղեկութիւն ժամանակին՝ յիւրաքանչիւր գլուխս 'ի դիւ-

---

լեան անուանց ուղղաղեալ հնչումն, և զպակասութիւն յաջորդութեանց քանի ինչ տէրութեանց, զոր օրինակ տաճկական տէրութեանց, զորոց զանուանս և զտևողութիւն եդեալ է մեր յԵղանակն 1813 ամին, 'ի թղթահամարն 139. յորոց ոչ ամենեքին գտանին յայսմ ժամանակագրութեան:

րութն ընթերցողաց՝ յայտնի նշանագրեալ
'ի վերոյ զամենն յորս գործեցան :

Ո տեսակ պատմութեան դասակարգեալ գի-
տեմք 'ի Պատմականին՝ որ ճառէ զամենայն
անցից, գործոց, զկառավարութեանց անց-
նիւր թագաւորութեանց և իշխանութեանց
'ի պատերազմի և 'ի խաղաղութեան, որ է ա-
ռաջին նպատակ ընդհանուր պատմութեան :

'Ի Յեկեղեցականին, որ պատմէ զյաջորդութիւն
և զգործս աթոռոց եպիսկոպոսաց, ժողո-
վոց, այլովքն հանդերձ, յորոց յընդհա-
նուր պատմութեան անդ զերևելիս ևեթ
յիշատակել է անկ, իսկ զմանաւորսն առ
'ի ճոխագոյն պատմել, ուրոյն եկեղեցական
պատմութեան թողուլ :

'Ի Քաղաքականին՝ կամ առաւել ընդհանուր
անուամբ ասացուք 'ի յՈւսումնականին, ուր
խօսի յաղագս յառաջանալոյ դպրութեանց
ամենասեռ ուսմանց, նաև յաղագս գոր-
ծոց և վարուց ուսումնականաց և գիտնոց։

'Ի յԱրուեստականին, որ նոյնօրինակ աւանդէ
յաղագս ծաղկելոյ արուեստից և արուես-
տաւորաց յանցնելուր դարս, յորոց զնշա-
տականն արուեստս յաւէտ 'ունիմք յիշա-
տակել :

Ո երկուս առաջինսն 'ի կարգի պատմու-
թեան աւանդեալ, իսկ հազիւ ուրեմն 'ի վախ-
ճանի պատմութեան 'ի լրումն ԺԸ դարու՝
ուրոյն տացուք նաև զերկուց մնացելոց հա-
մառօտեալ իմն տեղեկութիւն. ոչ զանց առա-
րեալ ընդ նոսին յիշատակել և զայնոցիկ
բարեացապարտ արանց՝ որք 'ի գործս կեն-

ցաղօգուտս, կամ յայլ բարեգործութիւնս բա-
րոյականս գեղեցիկ քաղաքավարեալ՝ քան
զայլ եկեալ բազմութիւնս ԺԸ. դարուն՝ բա-
րերարող գտան մարդկայնոյն ազգի, արժա-
նի յիշատակաց Թողեալ զարդիւնս իւր-
եանց, և արձան անմոռաց յօրինակ մեզ
յետագայից:

Օ այս գործ բազմաշխատ 'ի բարբառ գրոց
Հիմնուածոյ գոգցես արժան էր արտադրել,
բայց Թախանձանք ընթերցասիրաց անտե-
ղեակ եղելոց գրաբառին՝ սերտ ըղձակեր-
տեալք 'ի լուր ընթերցուածոյ բանի պատ-
մութեանց՝ ոչ ներեցին մեզ զրկեալս կացուցա-
նել 'ի ճաշակացն՝ որոց փափագէին, այլ
կամայ ակամայ հարկ յանձին կալեալ յաշ-
խարհիկ յօրինել բարբառ, որ ապաքէն տառ-
նապատիկ առաւել ծանրացոյց մեզ աշխա-
տութեան բանի՝ գոլով լեզու անկիրթ աղ-
քատին, և արդարև անյարմար 'ի յերիւ-
րել զխօսս ըստ բերելոյ ոճոյ՝ և ըստ կարգի
արտաճառութեան ասպարիզի բազմազգի բա-
նախօսութեանցն, որով հարկադրեալ ձգէր
զմեզ զարտուղիլ 'ի ծէքումն ռամկական
ոճոյն կամ կրկնութեան խօսից: Նա, առա-
ւելագունին իմն զիջանելով ոչ հրաժարե-
ցաք զամենայնն կարգել ըստ տանելոյ այժ-
մեան վիճակի ազգին, որոյ անընտել գոլով
տակաւին յընտրողականութեան ճաշակացն
գեղեցիկ դպրութեանց և կատարեալ գիտու-
թեանց, նախ ըստ համբակաց օրինի հա-
սարակ ոճով պատմողականին անկ էր ըն-
տելացուցանել զլսելիս, առ 'ի ճանապարհ-

Հորդել 'ի բարեձեւութիւն բերելոյ զիւրն բնաւորութեան նաեւ առ անխորժակս բարոյական կրթականութեան, եւ 'ի դրունս այլոց մակացութեանց ։

'Ի վախճանի ծանուսցուք նաեւ սակս Լյենցաղանկրնութեան անուանս՝ զորս դէպ լինի մեզ 'ի կիր առնուլ փոխանակ եւրոպացւոց անուանս Բօլէոլէօ. զի Թէպէտ Բօլէօ՝ առ յոյնս նշանակէ քաղաք, եւ Բօլէոլէօ՝ քաղաքականութիւն, բայց եւրոպացիք յայլեւայլ միտս որոշեալ ունին զԲօլէոլէօ եւ զՉէՆէլէն, որ նոյնպէս նշանակէ քաղաքականութեան ։ Օ որ օրինակ յասելն՝ Ճ առլը վուա յսեան յօրինեալ ունի զՉէՆէլէ Ե զԲօլէոլէօ պատմութիւն որ դոմինիկոս կըզըւոյն ։ Հարկ լինի անդանօր կրկին անուանս դտանել, յորս սակս զբանս քաղաքական եղեալ փոխանակ ՉէՆէլէ բառին, իսկ վասն Բօլէոլէօ բառին՝ եդաք զբառս կենցաղանկերն ։ Նոյնպէս եւ յասելն՝ Թէ այս ոք քաջ կրթեալ էր 'ի ՉէՆէլէն, այլ ոչ 'ի Բօլէոլէօյն, հարկ լինի զերկուս բառս սահմանել, որոյ աղագաւ յօրոշումն եդաք. Կրթեալ 'ի քաղաքականութեան, այլ ո՛չ 'ի կենցաղանկրնութեան, կամ 'ի կենցաղավարութեան ։

քաղկան պատմութեան մէջ չար յափշտակող ու խռո-
վարար մարդիկներուն գործքերը պատճառ կըլլան
որ զանազան պատմութիւններ կըբերեն պատերազ-
մելու՝ դաշնադրութիւններ ընելու՝ քաղքըններ տէ-
րութիւններ կործանելու՝ երկրէ երկիր փախչելու՝
նոր նոր տեղվանք երթալու՝ նոր ուրիշ առուտուր
սկսելու՝ ուսկից ելան նոր արուեստներ վաճառա-
կանութեան, նաւարկութեան, անոնց պատճառովալ
ուրիշ արուեստներ ելան նաև գիտութիւններ. ինչ
պէս ըսենք օրինակի մը համար՝ աստղաբաշխութիւնը
չէր ծաղկէր, թէ որ նաւարկութեան խիստ հարկաւոր
չըլլար ։ Ասանկալ եկեղեցական պատմութեան մէջ
մոլորամիտ կամ խելացնոր մարդիկներ այնչափ հե-
րետիկոսութիւններ հանելով պատճառ եղան վիճ-
մունքներ ժողովքներ ընելու՝ քշվելու՝ արիւն թա-
փելու՝ մարտիրոսներ ու սբ հայրապետներ երևան
հանելու՝ որուն վրայ յայտնի կըսէ պօղոս առա-
քեալը. ա. կորնթ. ժա. 19: Հերձուածք լինելոց են ՚ի
ձեզ, զի որ ընտիրքն իցեն ՚ի ձեզ՝ երևեսցին ։
Ասանկով մարդկային գործոց պատմութիւնը ընդհանրա-
պէս նայելու ըլլաս, աւելի կըգտնաս մէկ յիշատա-
կարան մը մարդուն անօրէնութեան, բռնաւորու-
թեան, ու խելացնորութեան. մէջի պատմածները թէ-
պէտ աւելի մարդկային չարութեան վրայ են, բայց ան
չարութիւնները որովհետև կըբերեն առարկայից զա-
նազանութիւն, կրից կենդանութիւն ու կատա-
ղութիւն, խորամանկութեան հնարագործութեան
նրբութեան, բարուց պէսպիսութեան, մտաց զարգացում
կամ խանգարում, ներհակութեան սկզբանց, օտար
մտածմունքներ, իբր մէկ պատկեր մը զանազան
գունով քաշված, որ կենդանի է ու մարդու սրտին
թափանցող, ասով կըլլայ պատմութիւնը անչափ զը-
ւարճալի՝ անչափ հարկաւոր՝ որ ինչ ազգ ըլլայ աշ-
խըրհիս վրայ՝ որոնց մէջը ուսումը մտած չըլլայ կար-
դալու սէր եղած չըլլայ, բայց պատմութեան կարդա-
լու սէրը մէջերնին կայ, ուրիշ ուսման գիրք մը չու-
նենան՝ պատմագրութեան գիրք մը ունին ։ Ամէն ազ-

գաց Թագաւորներուն հարկաւոր գիրք՝ կըլլեն որ իրենց ազգին՝ և ուրիշ ազգաց յիշատակարանն է եղեր. ամէն Թագաւորներուն վարքերնին իմանալ՝ ըրածնին լսելն է եղեր. անոր համար Թագաւորներ՝ Թագաւորազուն մարդիկներ խրատ առնելու համար՝ զուարճանալու համար՝ պատմուճ կըկարդան ։ Ածաշունչը կըպատմէ (Եսթեր. Զ. 1.) թէ գիշեր մը արտաշէս Թագաւորին քունը փախաւ, ատեն անցընելու (էյլէնմիշ ըլլալու) համար ուրիշ բան չըրավ որ՝ իրենց Թագաւորներուն վարքը յիշատակարանը կարդալ տըվավ. ատանկալ մեծին աղէքսանդրի վրայ կըլլեն թէ ինչ սէր ունի եղեր պատմութէն վրայ, ինչպէս ախորժելով կըկարդայ եղեր հոմերոսին գիրքը՝ աքիլլէսին քաջութինները լսելու համար (1)։

Թէ որ ամէն պատմութիւն՝ կըզուարճացընէ՝ բայց աւելի ընդհանուր պատմութիւնը, որ առջևդ կըբերէ կարգը ժամանակը ամէն Թագաւորներուն՝ որոնց վրայ որ կըպատմէ. ամէն ազգաց գործքերնին՝ պատերազմնին՝ քաջագործութինին՝ առաքինութիւննին՝ մոլութիւննին՝ սովորութիւննին ։ Ասոր նման կըպատմէ կրթութիւննին՝ որ կուտան ամէն տէրութենց մէջ, պակսութիւննին՝ որոնց մէջէն որ կելնան, վարձքը պատիժը՝ որ կուտան, փարթամութիւնը կամ զեղխութիւնը որ տիրեր է ան ազգին մէջ ամ՛ բանիս ան բանին վրայ, ըստակնին որ կըբանեցընեն, կրօնքնին որ կըդաւանին, առուտուրնին որ ունին ժողովուրդ ժողովուրդի հետ՝ հին ատենը՝ նոր ատենը՝ Եւրոպայի հետ և ուրիշ իրեք մասանց աշխարհքի հետ ։ Այչափ առարկայներու զանազանութիւն՝ որ առջևդ կըբերէ ընդհանուր պատմութիւնը, իրաւ որ զուարճալի բան մը կըլլայ, ու մէկ ընդհանրական գիտելիք ու տեղե-

(1) Տես 1816 տարվան Եղանակը. Թղթ. 278. 279 ։

կութիւն կուտայ, որոնցմէ կելլան զանազան դիտութիւններ։

Ամէն պատմութի մէկ յիշատակարան մընէ ըսինք՝ զանազան մարդկային կրից, բարի ու չար գործոց, ուր խառնըված տեսնալով բարին ու չարը մէկ տեղ, զարմանք կըբերէ մարդուս. հոն մէկ դիւացէն կըտեսնաս մարդկային բռնաւորութիւն, անիրաւութիւն, խենթութիւն, մէկալ դիւացէն արդարութիւն, օրինաւորութիւն, քաջութիւն, խոհեմութիւն. ասոնք մենծ մենծ առարկայներով ներկայացընելով կըկենդանացընեն երևակայութիդ, ու կըզուարճացընեն պէսպիսութը̄ը, խառնըված բերելով մոլութիւնները առաքինութենց հետ, խոհեմութեն սերմունքը երևակայունէ հետ, խեղացնորութեն ու ստութեն հետ. շատ ատենվան մարդուս ըրածները՝ իբր մէկ ատենվան ըրած, մէկ պատկեր մը քաշված։ Վասն զի մարդս գործքը կընէ կանցնի, բայց պատմագրութիւնը նոյն գործքերը գրի վրայ առնելով իբր թէ քարէ արձաններ կըշինէ, ամէնուն առջին կըցըցընէ, անցաւորը անանց կընէ։

Հիմա նայէ որչափ ցանկալի բան կըլլայ պատմութի կարդալը, որչափ հարկաւոր։ Պղատոն երբոր դարձաւ եգիպտոսէ յունաստան եկավ, հարցուցին իրեն ինչ տեսնալը, ինչ լսելը. անիկայ հառաչելով ըսավ. աս իմացայ որ ըսաւ՝ մեր մէջը ծեր չիկայ եղեր. մեր ծերերը վաթսուն, հարիւր տարվան ծերեր են, ես եգիպտոս ծերեր տեսայ երկու հարիւր, վեցհարիւր, հազար՝ երկու հազար տարվան։ Երբոր աս բանիս վրայ հարցուցին, սկսաւ մեկնել։ Ես տեսայ ըսաւ եգիպտոս մարդիկներ, պատմութի գիտցողներ, իրենք չորս հազար տարվան բաները պատմողներ՝ անանկ իբր թէ իրենք աչքովնին տեսած ըլլային ան չորս հազար տարվան բաները. ինչ զարմանալի բերան ունեցողներ տեսայ, ինչ զարմանալի բաներ լսեցի, որ աշխըրհիս մէջը եղեր գացերեն. դուք մինակ ձեր ատենին բաները գիտէք, անոնք չորս հազար տարվան բան գիտեն, տե-

սանձի պէս կըպատմեն, թէ ինչ է եղեր աս մեր նստած տեսած տեղերը լսեցի, զարմացայ, անկէց հասկըցայ որ ես բան չէյտեմ եղեր։ Մենք մեր աշխարհը՝ մեր պապերուն բաները չէյտենք, մեր աշխարհը թողուցերենք, երկինքը կուզենք իմանալ. սկսէք պատմութիւն կարդալ, որ դուքալ ծեր ըլլաք, տղայ չմնաք։ Հիմա եսալ աս պղատոնին ըսածը ազգիս կըսեմ, ծեր եղէք, հասուն եղէք, տղայ մի մնաք, պատմութիւն կարդացէք մանաւանդ ընդհանուր պատմութիւն, որ կըբերէ ծերութիւն. վասն զի դուն պատմութիւն չիկարդալով մինակ տղայութենդ վեր ինչ եղաւ ան գիտես, ան կըզուրցես, ուրիշ բան չէյտես խօրաթելու. ինչ անօթ բան է որ՝ ինչվան խաբերինճիներուն կարօտ կըլլաս հին պատմութին մը (թէվարիխ մը՝) լսելու, ան կըպատմէ, դուն պատմութեան գիրք մը չունիս որ կարդաս իմանաս ո՛րդեօք իրաւ է ըսածը. ո՛րդեօք պատմածնէրուն մէջը քանի սխալ կան։ Ալ հերիք է տգիտութեն կուրութեն մէջ մնալ անանկ մէկ ատեն մը՝ որ կուրէրնալ խուլէրնալ բան կըսորվին. դուն ասանկ սորվելու ատենը միայն չէսորված կըմնաս։

Գիրք ըլլայ՝ չես կարդար, ծառը ընել կընայիս. խրատ ըլլայ՝ չես ուզեր լսել կըձանձրանաս. Հոգևոր գիրք ըլլայ՝ կըսես որ անանկ գիրք շատ կարդացերեմ, անանկ խօսքեր շատ լսերեմ. բարոյական կենծեալ պատմութիւն ըլլայ՝ որ ուրիշ ազգաց մէջ շատ կանցնի, որովհետև օրինակով մը խրատ տալ է, դուն անիկայ մէկ դի կըձգես որ մասալ է, իրաւ պատմութիւն չէ։ Աս գրքին վրայ՝ որ է ընդհանուր պատմութեան, չես կրնար զուրցել ոչ մէկը ոչ մէկալը, ըլլալով ճշմարիտ պատմութեան և ոչ սուտ. պատմութիւը առջևդ դընելով խրատնալ տալէն կըհասկըցընէ քեզի, կարդալովդ կըզուարճանաս, և միանգամայն խրատ կառնես։ Մի նմանիր ան մարդիկներուն՝ որ կըբանին կապըրին միայն ուտելու համար՝ որ է գործ անբանի, այլ նմանէ անոնց՝ որ կըբանին կապրին իրենց խելքը կատարելագործելու.

համար, որ է գործ մարդու բանաւորի. ասոր համար ենք ստեղծուած, ասոր եւս կլինան ամէն ազգ կրթուած։

Քու օգտիդ (փայտայիդ) նայելով աս պատմագրուե վրայ աշխատեցայ, շատ գրքերու մէջ նայելով. եւրոպացիք ինչպէս ամէն բանի վրայ՝ ասանկ ալ պատմութեն վրայ շատ գրքեր ունենալով, հոգերնին չէ ամէն բանը մէկ գրքին մէջը ժողվելու, ոմանք աս բանս դուրս կըձգեն, ոմանք ան բանը, որովհետեւ ուզողը կրնայ ուրիշ գրքերու մէջ գտնալ։ Բայց մեր ազգին համար մինակ մէկ հատիկ գիրք ըլլալով ընդհանուր պատմութեն վրայ, նայեցանք որ՝ որչափ կարելի է գտնալու բաները հոս ժողվենք։ Զանազան գրքերու մէջ զանազան սխալներ կըգտնըվին պարագայներու վրայ, ժամանակագրութեն ու անուններու վրայ, ամէննալ որչափ կարելի է՝ ստուգելու՝ շտկելու հոգ տարինք։ Ինչ կար որ՝ մէկ պատմագիրը կըպատմէ, մէկալը չէպատմէր անոնքալ բերինք, ժողվեցինք, մէկ պատմութեն շինեցինք, որպէս զի դուն աս մէկ գիրքը կարդալով հեշտ ու շուտով (խօլայ ու թէզով) գըտնաս, ինչ որ փռէնկի գրքերուն մէջը՝ չորս, հինգ, տասը գիրք կարդալով պիտոր գտնայիր։ Հեշտ ալ ըլլալու համար դար դար բաժնեցինք. այսինքն մէկ հարիւր տարիէն՝ (որ դար կըսվի,) մէկալ հարիւր տարի։

Ընդհանուր պատմութե կարգը կըբերէր որ՝ աշխարհքիս սկզբնաւորութէ սկսելի պատմելու, բայց տեսնալով որ մեր ազգին մէջը փափաք կայ աւելի նոր ատենիս պատմութիւնները լսելու քան հին ատենին, անոր համար անցած վերջի դարուս պատմութիւնը՝ որ կըսվի ԺԷ Դար, առաջ հանեցինք. անալ դարուն կէսէն սկսելով, այսինքն՝ 1750 էն ետեւ եղածները՝ որ աւելի նոր են. որոնք կամ քու ատենըդ՝ եւ կամ քու հօրդ ատենը եղած բաներ ըլլալով քիչ մը լսած կըլլաս, հոս աւելի փափաքով կըլսես տարիովը՝ պարագայներովը՝ պատճառներովը՝ որոնք

բնոնէբերան անանկ կարգաւ չէն պատմըւիր։ Աս ԺԸ դարուս համառօտութիւնը ժամանակագրութիւն առաջ հաներեինք 1818. 1819. Եղանակներուն մէջ, որոնք թէ որ առաջ կարդաս, ետքը աս գիրքը կարդաս, աղէկ կրնաս բոլորել քու միտքիդ մէջը հոս գրածները, որ ընդարձակ ըլլալով կարելի չէր ամէն տեղին դիպուածները մէկ թուականի մէջ մի և նոյն տեղը պատմել։

Հիմա աս գիրքս կարդալով կիմանաս որ՝ աս ԺԸ դարուս մէջը երկու մեծ աշխարհակալներ ելերեն շատ անուանի. մէկը ասիայի մէջ, մէկալը եւրոպայի մէջ. մէկը ԺԸ դարուս սկիզըները կամ մանաւանդ մէջը, մէկալը դարուս վերջը. մէկը Դահմաս անուանով անոնշան մէկմը, բայց իր խորագիտութիւն ու աշխարհին բաղդովը՝ պարսից վրայ թագաւոր եղաւ. Ինչվան հնտաստան գնաց, զարկաւ, թալեց, իրեք հազար անգամ միլիոն ռուփիի աժողչէքով ձէվահիր, ոսկի, արծաթ, ու ապրանք իր հետը բերաւ. զինքը աշխարհիս վրայ եղօղ սուլդաններու սուլդան անուանելով անանկ ըստակ կոխեց։ Մէկալը Գօնաբառդէ Նաբօլէօն անունով անոնշան քօսիքացի մը, բայց իր խելքովը՝ պատերազմի վարպետութեանը՝ ֆրանսայի թագաւոր եղաւ ու կայսր. ամէն եւրոպայի օրէնք տալ սկսաւ իր վախցընելովը, շատերն տիրեց, քիչ մնաց որ ամէնուն չտիրէ։

Քանի մը տէրութիւն նոր ելան, որոնց մէջը ամմէնէն երեւելի եղաւ ամերիկա եղած ինկլիզներուն տէրութիւնը, որ կըսվին տասնվիրեք Նահանգք միացեալք. մէյմընալ պրուշինը՝ որ աս ԺԸ դարուս մէջ թագաւորութիւն եղաւ. վասն զի առաջ միայն կայսրընտրութիւն մընէր։

Քանի մընալ տէրութիւն կորան. եւրոպայի մէջ կորաւ լեհին տէրութիւնը, վէնետիկին տէրութիւնը՝ որ նէմցէին տակը ընկաւ, ճինիվիզինը՝ որ սառտէնեայի թագաւորին տակը ընկաւ. ասոնցմէ երկուքը հասարակապետութիւն էին, մէկը իշխան.

նաանկ ալ կորաւ խորրմ եղած թաթարխանութիւնը․ որ մէկ զատ տէրութիւն մընէր։ Ասիայի մէջ կորաւ կիւրճիին տէրութիւնը՝ որ մոսկովին տակը անցաւ․ մայսուրին տէրութիւնը Հինտոստան, որ դիբուս սահիպին ատենը ինկիլիզին ձեռքը անցաւ․ երկու տէրութիւնալ շատ վար ինջան, որ են մողոլին ու պարսից տէրութիւնը։

Եւրոպայի մէջ ինկիլիզին տէրութիւնը խիստ մեծցաւ Հինտոստանէն շատ տեղվանք առնելով, ծովու վրայ կատարեալ տէր եղաւ ու կայսր, որ շատոնցմէ կըփափաքէր։ Մոսկովը՝ նէմցէն ու պրուշը աւելի մեծցան, ֆրանսըզը ընկաւ, առջինը չէր, ինչվան որ կամաց կամաց շտկըվեցաւ, դարուս առաջնէրը շվէտը պզտիկցաւ, դարուս եռքը՝ Փիլէմէնկը։

Կըկարդաս որ սա ժԸ դարս աւելի պատերազմելով անցերէ մանաւանդ եւրոպացոց մէջ, քան թէ խաղաղութե․ հինգ սաստիկ պատերազմէր եղերեն եւրոպայի մէջ մանաւանդ ցեղէրուն հատնելուն պատճառովը․ սպանիայի թագաւորին ցեղին հատնիլը՝ աւստըրիոյ տանը (կամ նէմցէին) ցեղին հատնիլը՝ երկու արիւնահեղ պատերազմ բացին, առջինը՝ դարուս սկիզբը, երկրորդը՝ դարուս մէջը։ Ասանկալ իդալիայի մէջ մէտիչի ցեղին մարիլը՝ կոնծակա ու ֆառնէ ցեղէրուն վերջանալը՝ անհնարին կռիւնէր բացին։ Երկու մեծ պատերազմալ եղան դարուս մէջ տեղը ամերիկայի վրայ։ Մէկ սաստիկ պատերազմալ կըշըլլի դարուս սկիզբը մոսկովին ու շվէտին մէջը ժԸ կարոլոսին ատենը։ Իսկ աս դարուս եռքէրը՝ ամմէն եւրոպացոց ազգ պատերազմիլ սկսան իբարու հետ, արիւնը յաջորդեց հանգստութէ ետեւ․ ամմէնէն թշուառ իդալիան, որ իբր 1750 էն կամ 1760 էն ինչվան 1790 մէկ խորին խաղաղութե մը մէջ կըվայելէր, եղ ու մեղր ուտելով առակին ըսածին պէս, մէջէրնին գրեթէ ծեր մը չիկար որ արիւն տեսած ըլլար, տաանկ իդալիան մէկ ծեծ մը տեսաւ որ բոլորովին փոխվեցաւ, իր առատութիւնը չորցաւ։

Մէկ բան մընալ կայ դիտելու աս ժը դարուս մէջը, որ է կնիկ մարդոց թագաւորելը. Նէմցէի՝ մոսկովի՝ Ինկլիզի՝ շվէտի՝ փօրթուկալի մէջ կնիկ մարդիկ օրինապէս թախտը նստան թագաւորեցին. իսկ տանիմառքայի՝ սպանիայի՝ նաբօլիի մէջ, ոմանք թագուհիներէն ատեն ատեն խառնըվեցան կառավարութեն մէջ. բայց Ֆրանսայի մէջ որ հնուցմէ շինած օրէնք ունի Սալիքա ըսված, որ թող չիտար կնիկ մարդոց թագաւորելու, հոն թագուհի չերողտար կնիկներ կառավարեցին յիսուն տարիի չափ, մանաւանդ ժե լուիզ թագաւորին ատենը։

Հիմա նայէ ինչ կերպ կերպ տեսիլքներ՝ պատկերներ՝ որ ընդհանուր պատմութիը մէկ դարու մէջ միայն աչքիդ առջին կըբերէ։ Արիմանաս որ աս դարուս մէջը մէկ դիտացէն ըստակը շատցերէ, քանիալ որ շատցաւ՝ ազութիւնը տիրեց մանաւանդ ուտելու բաներու վրայ, մէկալ դիտացէնալ թագաւորներուն խարձերը անչափ շատցան որ՝ ան ըստըկին շատութիւնը իրենց չօգտեր։ Արիմանաս ինչ կերպ մարդիկներ եկերեն, ինչ գործքեր ըրերեն, որոնց գործողութիւնները նայելով երկու դաս մարդկանց բաժնելու է։ Մէկ դասը իրենց պաշտօնին կամ կարողութեը համար՝ հասարակաց մարդ ըսելու է. իրեն գործքը անանկ է որ՝ հարկաւորապէս երեւան կըհանէ զինքը. մէկ ազգի մը քաղքի մը պատմութի ընելնինի՝ պէտք է որ ան մարդնալ յիշվի. ինչպէս են քաղաքական պատմութեն մէջ թագաւորներ, զօրապետներ, եւն. իսկ եկեղեցական պատմութեն մէջ հայրապետներ։ Մէկալ դաս մարդկան անանկ է որ՝ պաշտօն մը չունենալով, կամ հասարակաց գործքին հետ վերաբերութիւն մը չունենալով, ազգային ու ընդհանուր պատմութեն մէջ չեն յիշվիր. անոնց պատմութիւնը զատված կըմնայ։ Ասոնք են գիտուն մարդիկներ ու արուեստաւորներ. աս դասին մէջն են նաեւ ուրիշակաց առաքինի մարդիկներ, որոնց բարութիւնը թող չիտար զիրենք երեւան հանելու. այլ ինքիրէրնին քաշված մնա-

լով՝ շատը անծանօթ են մնացեր, չեն յիշվիր․ վասն զի պատմութիւնը անոնց վրայ ամենևին տեղեկութիւն չունենալով՝ չէյտէ անոնց վարքին վրայ բան մը որ պատմէ, բայց եթէ խիստ քիչվորի վրայ․ որոնցմէ ոմանք մասնաւոր զատ գրքերով յիշերեն վարքերնին։

Հիմա նայելով ընդհանուր պատմութեները վախճանին՝ որուն մէջը պիտոր մըտնան ամէն կերպ գործողութիւնք, մեծ պակսութիւն մը սեպելու է՝ դուրս հանելը ան մարդկանց վարքերը՝ որ աւելի արդիւնք ունեցան աշխարհիս մէջ, որ աւելի բարի օրինակ կըլլան մարդկային ազգի։ Անոր համար ամէն մէկ դարուն ետքը պատշաճ համարեցայ ա կերպ մարդկանց վրայ խօսիլ՝ որ երևելի եղան սըրբութեամբ, կենցաղակրթութեամբ, գիտութեամբ, կամ արուեստով ան հարիւր տարվանը մէջ. ասով ընդհանրութի պատմութեն աւելի լըացեալ կըլլայ, կետատ չիմնար, կարօտ չըներ կարդացողը ուրիշ գրքերու մէջ փնտռել, մանաւանդ մեր ազգին համար՝ որ ուրիշ անանկ գիրք չունի։ Ասանկով Քաղաքական ու Եկեղեցական պատմութիւնը տարիներուն վրայ կարգաւ ետևէ ետևէ պատմըված կըլլայ ինչվան հարիւր տարին լմննայ․ իսկ Ռ———ական ու Ա———փական պատմութիւնը ետքէն յատուկ ամէնը մէկէն ժողվըված կըլլայ, որ հեշտ (խօլայ) կրնաս սորվիլ։

Բայց ես կուզեմ որ՝ պատմութիւնը կարդալու ըլլաս, չէ թէ միայն եղած գացածը լսելու համար, հապա կարդալովդ անկէց քեզի պտուղ հանես, խելք ու կրթութիւն սորվիս. անոր համար առաջ խօսիմ հոս ան օգտութիւններս որ պատմութիւնը կըբերէ, և թէ ինչպէս քեզի խրատ հանես, խելք սորվիս, մէկիկ մէկիկ յիշեմ, որ մէկ դուռ մը ըլլայ քեզի առաջ ան կարդալու՝ ետքը նորա մտնալու պատմութիւն սորվելու, անոր համար Ներածութիւն կըկոչենք։

# ՆԵՐԸՆԾՈՒԹԻՒՆ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

### ՕԳՏՈՒԹԻՒՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ։ (1)

*Պատմութեան գովասանքը շատ է, շատ բանի օգտակարութիւն ունենալուն համար, որուն վրայ երևելի մարդիկներ գրքերով գովեստ զրուցած ունին. մենք հոս միայն երեք օգտութիւնը յիշենք։*

*Մէյմը որ մարդուս խելքը կըբանայ, խելք կըսորվեցընէ խոհեմութիւն շարժելու՝ մարդկանց հետ վարվելու. անցած գացած ատենին մարդկանց ըրածները իմացընելով, գալու ատենին ըլլալու բաներնալ կըծանուցանէ, գուշակել կուտայ. անանկ որ մա-գրութիւն կարդացողը ու շատ կարդացողը մարգարէի մը պէս կըլլայ։*

(1) Հին և Երևելի մարդկանց վկայութիւնները պատմութեան վրայ։

*Կիկերոն. յղ. հռետ. ա։ Պատմութիւն է վկայ ժամանակաց, լոյս ճշմարտութեան, կեանք յիշողութեան, վարդապետ վարուց, պատգամաւոր հնութեան։*

*Կոռնել. ափրիկցի. յղ. մասին Փիլիպոսեանց։ Պատմութիւնն է ճառ անցից անցելոց՝ գովութեամբ կամ պարսաւանօք։ Որ զմեծամեծ իրաց զխորհուրդս, զարարուածս, զելս, և զգործս թագաւորաց և արանց մեծամեծաց՝ հանդերձ ժամանակաց և տեղեաց կարգաւ և ստորագրութեամբ՝ իբրև նկար կենդանի առաջի առնէ աչաց։ Նմին իրի զատ որպէս վկա-*

Երկրորդ՝ ով որ նեղութեան մէջ է՝ ամէն բանէն աւելի իրեն մխիթարանք՝ պատմութեան գրքեր կարդալով կրնայ գտնալ։

Երրորդ՝ բարոյական խրատներ կուտայ ամէն մէկ մոլութեան (խույի), ամէն մէկ առաքինութեան վրայ, ու աղէկ եղանակով մը կըխրատէ։

Ասոնց վրայ մէկիկ մէկիկ խօսինք։

---

ժապէտ կենաց, և առ 'ի նոյն հրահանգութիւն՝ ամենայնիւ օգտակար գտանին գրեթէ ամենեքին. իսկ զի օրինակօք բազում իրաց՝ զլաւս յորդորեն առ քաջափայլ գործս վարուց՝ վասն անմահական անուան և գովութեան և փառաւորութեան. և զվատթարս և զչարագործս խորշեցուցանեն 'ի մոլութեանց՝ ահիւ մշտնջենաւոր վատանուանութեան։

[illegible]։ Զոր ինչ պէտք իցեն առ գործողութիւնս մեր և առ վարս՝ պիտոյ է զայն քաղել նախ 'ի պատմագրաց, 'ի քերթողաց, և 'ի հռետորաց. քանզի նոքա և զբարի գործս գովելով, և զհակառակն պարսաւելով, թէպէտև ոչ ուսուցանեն (վարդապետաբար), այլ որ առաւել զօրաւորն է և աղդոյ, զօրինակն առաջի դնելով, զոր ինչ ուղղութիւն կամ թիւրութեամբ լինին, երբեմն 'ի հայելւոջ ցուցանեն։

[illegible]։ Փորձք մեր հետ զհետէ յառաջէն հասանկաս, և արդեամբք գործոց. իսկ զայլոցն զփորձս լինի ուսանել 'ի տեղեկութենէ անցելոց յիշատակաց, որ Պատմութիւն կոչի. այն՝ որ տայ մեզ ոչ պակաս առաջինկայ երեւել անցելոց՝ քան ներկայից. և վարել փորձիւք այլոց որպէս մերովք։ Խրատամբք քուրմն եգիպտացի զսողոն և զայոյնս՝ որք չունէին զյիշատակ հնութեանց, մանկունս կոչէ։ Սոր կայ պատմութի. զմանկունս ծերս կացուցանէ. և ուր ոչ գոյ, զծերս առնէ տղայս։

[illegible]։ Մեծ է օգուտ պատմութեան. զի առ երջանկութիւն մեզ առնէ, և առանց իրիք աշխատութեան օգտակար լինի մարդոյ։ Քանզի զի՞նչ առաւել զեղեցիկ կայցէ քան

## Առաջին օգուտ պատմութեան ։

Իրաւ պատմութիւնը թէպէտ գիտութիւն չէ, բայց անանկ սկզբունքներ կըստորձեցընէ՝ որ կարգացողին համար բարոյական փիլիսոփայութիւն մը կըլլայ, թէ որ մտածելով կարդայ, ու շատ կարդայ ընդհանուր ամէն ազգաց պատմութիւնը ։ Անանկ սկզբունքներ կիմացընէ, որ երբ հաստատուն օրէնք կըլլան մարդկային կենցաղավարութեանը մէջ, անանկ մէկ լոյս մը կուտայ. որ՝ կըլլայ երբ ազէն օրինաց ազգաց ու իրաւագիտութեան ։ Հին ատենը որ ամէն ազգաց մէջ մէկ օրէնք դնօղներ եղերեն նէ, ամէն

---

զայն, զի ոչ եթէ առոյ քննել և յուզել՝ զինչ ինչ գործեալ իցէ այլոց, այլ զոր ինչ բարւոքն գործեցաւ առաջի դնել մեզ՝ առ 'ի լինել նմանօղ ։ Խորհուրդք ծերոց, զորս բազմօրեայ հասակ իմաստնացոյց առաւ, զօրէն 'ի կրտսերագունից. բայց զառաւ այնչափ յառաջեցուցանէ և որպէս թէ երիցացուցանէ պատմութիւն, որչափ աւելի օրինակս բազումս պարունակէ երկարութիւն դարուց ժամանակաց՝ քան զհասակ միոյ մարդոյ։ Եւ ես զլեանագոյնս՝ վերծանութիւն պատմութեանց համարեալ առանէ առաջնոց խոհեմութիւն ։ Թող զի կատարելոց հասակաւ մատակարարէ զփորձս իրաց. զասակական անձինս՝ արժանիս կացուցանէ աւագութեան. զիշխանս վասն անմահական փառաց յորդորէ 'ի մեծամեծ գործս առաքինիս ։ Մինչ բանիւ ասացից. պարզաբար ամենայն ինչ՝ որ միանգամ աւելի լինի երջանկութեան մարդոյ, պարտի ընծայիլ պատմութեան. քանզի պահապան է առաքինաբար գործեցելոցն, և վկայ չարաչար արարելոցն ։

Փիլոն. յաբէն ե 'ի կոյին ։ Ընթերցումն պատմութեանց և քերթուածոց օգտէ 'ի ստանալ զկատարեալ առաքինութիւն, և 'ի փոյթ օգտի հասարակաց ։

ազգի պատմութիւնները աչքէ անցուցեր են. ոմանք ալ անձամբ քալերեն երկրէ երկիր, և անանկ մէկ տեղ ժողվեր են հարկաւոր բաները: Իսկ մեր ատեն-ները կամ անցած դարերը որչափ անուանի օրինա-գէտներ ելան նէ, ջանացին որ ինչ որ պատմութե-անելի հարկաւոր ու օգտակար մասունքներ կան, իրենց գրքին մէջ սփռեն ամէն ատեններն՝ ամէն տե-ղին վրայ, անոնց սկզբունքը միտքը մեկնելու համար. և ամէնն ալ պատմութիւններէ հանեցին թէ ինչ օրէնք, ինչ աղէկ կամ գէշ կարգադրութիւն ունին զանազան ազգ, և անոնք գտնելով սորվեցուցին աղէ-կը ընդունելու, գէշը մերժելու:

Ատենօք Ֆրանսա գերազանց փաստաբան (ավոքադ) մը կար Ֆուրքրուա պօնավէնդուրա անունով, որ մեռաւ 1692. ասիկայ կըսէր որ՝ փաստաբանի մը

---

Անանուն Գէքթող, 'ի դիմաց պատմութեան:
Ե՛ս դէտ կարգեալ և պահապան եմ անցելոց,
արձանագրեմ զըղձուշալիս, և զանցս հեռոց.
Ըզհին գրոշմեմ նկար առոյգ պահեստ յետնոց,
տամ յիշատակ անշէջ փառաց բարեաց գործոց:
Անցնիւր ինև առաքինեաց վարձք ելանեն,
ամբարշտաց ըստ վատութեանց ամօթք տիրեն.
Ծանեմ զպարծանս մեծի փոքու, որպէս օրէն,
ըղկոյր բախտի ըղտեսարան մեծ համօրէն:
Ո՞ր այլ եցէ հանդիսարան խաղուց արձակ,
քան ըղթատրոն գործոց մարդկան առ հասարակ.
Ո՞ առանց իմ եղև զգօն, կամ փորձ համակ,
որ աշակերտ կանխեալ յոտս իմ՝ չեղև գուշակ:
Զի ամենայն խոհեմութեան սկիզբն է յիս,
ոչինչ գիտես՝ թէ զիմ արհեստ ոչ ուսանիս:

Անթոն Պանօրմացի, և Եննէաս Սիլուէան 'ի պատմ. Ալփոնսոսի:

Ալփոնսոս Թ, կամ Ժ. արքայ լէոնայ և կասդի-լիոյ ծանր խօթացեալ 'ի կապուա քաղաքի ընդ մէջ Նէապօլսոյ և Հռովմայ, ոչ այնչափ օգտեցաւ 'ի բժշկաց, որչափ 'ի պատմագրութենէ կուինդոսի կուրտիոսի 'ի վերայ մեծին աղէքսանդրի մակեդո-նացւոյ. վասն որոյ ասէր յետ առողջանալոյ իւրոյ.

պէտք է գիտնալ Գեղեցիկ գալրութիւն, ու ամէն բանէն աւելի Պատմութիւն. վասն զի պատմութիւնը կըսէր Դուռն է ամենայն գիտութեանց։ Եւ իրաւ որ պատմութիւնը անանկ բաներ կըսորվեցընէ որ՝ հիմն կամ արմատ ( Թէմէլ, քէօք ) կըլլայ, ուսկից կելլան բարոյական փիլիսոփայութիւն, իրաւագիտութիւն, կենցաղագիտութիւն (բօլիդիքա), ժամանակագրութիւն, աշխարհագրութիւն, հնագրութիւն; դրամագրութիւն։ Ինչպէս որ եկեղեցական պատմութիւննալ հիմն է կամ հօգի Ածաբանական գիտութեան։ Եղանակներուն մէջ քիչ քիչ դրինք ինչ պտուղ որ կըբերէ պատմութիւնը, որ ամէն դին ինչ եղերէ կիմացընէ; իմանալովը մարդ մը կըլլայ իբր աշխարհ տեսնօղ, տէրութեանց մէջ մտնօղ, ազգաց բնութիւնները գործքերը գիտցօղ. վասն զի մարդ մը պատ-

---

Կեցցէ աւիկեննա, կեցցէ հիպպոկրատէս՝ այլովքն հանդերձ 'ի բժշկաց. այլ առաւել կեցցէ կուրտիոս փարատիչ հիւանդութեան իմոյ։

Պողիբիոս. պատմ. Գ: Զորօրինակ բժիշկք ոչինչ կարեն օգնել հիւանդաց, եթէ զպատճառս անգիտանայցեն հիւանդութեանց. նոյնպէս և որք գեդերին 'ի ճառս անցից անցելոց, անպտուղ եղանեն, եթէ ոչ խելամտեսցեն տեղւոյ և ժամանակի և պատճառաց իրացն ամենայնի։

Նոյնն. ծէ: Որպէս մարմին կենդանւոյ՝ եթէ 'ի բաց զատանիցին աչկերքն, անպիտան լինի գլխովին. նոյնպէս և պատմութիւնն, եթէ 'ի բաց բարձցես 'ի նմանէ զճշմարտութիւնն, ունայնասցի մնացեալ մասամբքն։

Պողիբիոս. Բ.Ղ.Բ. Ճ: Որպէս փորձիւ տեսանեմք, զի զաղնիւս իսկ 'ի բնէ զկերպարանս իմաստութե̃ լինի 'ի բաց մերժել, յորժամ անմաքուր աչօքն դնիցին. սոյնպէս և զպատմութիւն՝ որ անմասն է 'ի պիտանի զարդուց և 'ի պայծառ կազմութեանց, արհամարհ և ընկեցիկ վարկանիմք։

Յովհ. Կոմպանեան. Նախերգ. պատմ: Որպէս եղանակք տարւոյ ծնանին ազգս ազգս պտղոց, նոյնպէս

մութիւն չիգիտցող՝ մէկ առանձին մարդ մընէ, միայն իր եղած տեղին տեղեակ. իսկ մարդ մը ընդհանուր պատմութիւն գիտցող՝ ընդհանուր մարդ է, ամմէն տեղ գիտցող, ամմէնուն հետ տեսնըվող: Անանկ մարդը մէկ ժողովքի (մէճլիսի) մէջ մտնալու ըլլայ, իր խօսքը մտիկ ընել կուտայ, ինքնալ տհաս (խամ) մարդ չիմնար:

Պատմութիւնը կըսորվեցընէ թէ նախապաշարումը ինչպէս դժար է մէկ մարդուն վրայէն վերցընել. կրկէն դժար է մէկ տեղին ժողովուրդին վրայէն վերցընել: Աս բանս աւելի կըսորվեցընէ ուսումնական պատմութիւնը. ինչ նախապաշարմունքներ կային եւրոպացոց մէջ գիտութեանց վրայ, մատենագրաց վրայ, և այլ նիւթոց վրայ, որոնք հազիւ կըցան փարա-

---

և գարգս զհանճարս պէսպէս՝ 'ի զարդ և 'ի վայելչութիւն իւրեանց. և ոչ կարծեմ լինել ժամանակ ինչ, յորում բնութիւնն չիցէ երկնեալ առատութք անձինս բաւականս եթէ 'ի գործել զգործս երևելիս, և եթէ 'ի գրել զեղեալսն: Զառաջինսն ծնանի՝ որպէս թէ 'ի հնձել զհունձս փառաց. և զվերջինսն՝ զի ամբարեսցեն 'ի շտեմարանս, իբրու 'ի պարէնս որդւոց մարդկան և 'ի պէտս հրահանգութեան յետնոց:

Թուկիդիդէս. Գիրք առաջ. ա: Պատմութիւնն շարագրի, զի լիցի աւանդել գանձարան 'ի պէտս յետնոց, քան թէ խաղալիկ ինչ առ սուղ ժամանակ ամոքիչ ունկան:

Դիոնեսիոս Ալիկառնացի. առաջ. Է: Ընթերցողք պատմութեանց ոչ քաղեն օգուտ բաւական, եթէ մին սոսկ զելս իրաց լուիցեն. քանզի ամենայն ոք կամի գիտել զպատճառս իրացն, և զեղանակս՝ որովք գործեցան, և զդիտաւորութիւն գործելեացն, և զայլ և այլ զդէպս բախտի. և պարզաբար՝ և ոչ զհանգամանօք իւիք զանց առնել կամի, այլ զամենայն ցանկայ լսել:

Պլուտարքոս. 'ի Պերիկլէս: Դժուարագիւտ է պատ-

ռել ։ Մոսկովք ինչվան հիմայ չեն կրնար կոր ընդունիլ գրեգորեան ըսված տոմարը, թէև գիտեն որ անս_ խալ է. ինչպէս Ինկիլիզներն ալ շատ ժամանակէն ետև հազիւ ընդունեցան ։

Ամէն մարդ որչափ խրատ լսէ, դպրատուններուն մէջը նստի, միշտ մէկ տհասութիւն անկրթութիւն (խամութիւն) մը կըմնայ աս մարդուն վրայ. որ կըլլայ մանկական հասակի մէջ, մանաւանդ համբե_ րելու գիտցէն. մէ զի մանկական երիտասարդական հասակը միշտ անհամբեր կըլլայ ու նեղանայ. ամէն բանի վրայ կըդժարի թէ ինչու իր մտքի գրածին պէս չըլլար ։ Ասոր բանս մինակ իրենց արեան տաքութե_ նէն չէգար ինչպէս ոմանք կըկարծեն, այլ դեռ գլուխնին բան չէ եկած. աշխարհ ինչ ըսել է չեն_

---

մութիւն ճշմարիտ, վասն զի անցեալն ժամանակ հայալ է 'ի յետնոց զերայն ծանօթութիւն. իսկ որ ժամանակակից գտանիցին այնմ՝ զորոյ զվարս կամ զգործս արձանագրեն, այնպիսիքն կէս մի նախան_ ձու և ատելութեան, և կէս մի մարդահաճութեան ծառայելով՝ աղարտեն զճշմարտութիւնն ։

Սողոմոնիոս . յղ . համառոտ . նախերգն ։ Բազումք են որ գովեն, եթէ գործողք, և եթէ գրողք գործոց այլոց ։ Այլ թէպէտև ոչ զուգապատիւ իցեն՝ որ գոր_ ծեն, և որ գրեն, այլ ինձ թուեւել դժուարին ա_ ռանի գրելն. նախ՝ զի պէտք են ընդ գործոց հաւա_ սարել զբանս. և երկրորդ՝ զի յոլովք, յորժամ զուգ հշտամբես զչարաչար գործեցեալսն, չարութեր և մախացող դնեն ասացնեն. և ուր զմեծամեծ ա_ ռաքինութիւնս և զպանծալի արարս բարւոյն յիշա_ տակես, զոր ինչ միանգամ դիւրին կարծէ, անդորր ընդունի. և զերկր 'ի վերոյն՝ որպէս սուտ յօդ վար_ կանի ։

Պղինոսիոս . պատմ . գիրք . Ա ։ Այր բարի՝ բարե_ կամաց բարեկամ ունի լինել, և զբարեկամաց բա_ րեկամս յարգել, և զնոցա թշնամիսն ատել. այլ սակայն որոյ յանձին կալեալ իցէ գրել զպատմու_

տեն. Ինչըր Նըրտոր զանազան աշխարհէս փորձանքները դիմըներէն կուգան, ան փորձանքները զիրենք աղէկ մը կըկըրթեն, կըսորվեցընեն թէ՝ իրենք զիրենք պէտք է որ աշխարհէս յարմարցընեն, չէ թէ աշխարհս իրենց. ան ատենը թէև իր հասակը երիտասարդ ըլլայ՝ բայց գլուխը շատ փորձանքներ գալով աւելի համբերօղ կըլլայ՝ քան թէ տարիքը առած մարդ մը՝ որուն գլուխը փորձանք չէ եկած: Ասով ալ կիմանաս որ՝ փորձանքները թէպէտ շատ վնասակար ու տանջօղ են մարդուս, բայց պատմութիւնը կըսորվեցընէ որ՝ զարմանալի կըրթօղ են. անանկ կըրթութիւն մէկ վարպետ մը չիկրնար տալ:

Քանի մը հոգի մէկտեղված բան մը (մասլահաթ մը) կըմտածեն կըսակըսին, որ աղէկ բան է, բայց

---

թիւնս, զայս ամենայն պարտի 'ի մտաւոցն արկանել. մինչ զի յոլովակի ունի զօրութիւն բարձրացուցանել զթշնամիս, յորժամ գործք նոցա երեւին զայդ պահանջել. և երբեմն զբարեկամս և զմերձաւորս ստորանել, յորժամ արժանի կշտամբութեան իցեն արարք նոցա: Վասն զի զոր օրինակ եթէ ոք զաչս բրեսցէ զկենդանւոյն, անպիտան կացուցանէ զմնացեալ մարմինն բովանդակ. այնպէս ընդ բառնալ 'ի պատմութենէ զճշմարտութիւն, բովանդակ ձայն անպիտան գտանի: Նմին իրի ոչ 'ի ստգտանաց բարեկամաց, և ոչ 'ի գովութենէ թշնամեաց պարտ է խորշել, երբ զայդ խնդրիցեն իրքն: Եւ ոչ անտեղի ինչ է, եթէ զնոյն անձինս՝ երբեմն պարսաւեմք, և երբեմն գովեմք. վասն զի հաւանելի իսկ է, թէ որք միանգամ միջամուխ լինին 'ի գործս, ոչ միշտ ուղղութեամբ գործեն, և ոչ միշտ սխալեն: Այս ուրեմն պարտ և արժան է, զի բարեկամնալ ասացեալ անձանց, զնոցին գործոց զարժանն խմացուք և ասասցուք 'ի կարգի անդ պատմութեանց:

Նոյնն. Գիրք. Է: Ո՛չ այնչափ յատուկ է պատմութեան յիշատակագրել զկարգադրութիւնս և զա-

չըլլար, հապա ինչպէս որ կ'երեւի աշխարհիս մէջա-կը։ Մեծին Աղէքսանդրի տէրութիւնը՝ հռոմայեցոց տէրութիւնը՝ կըմտածեն եղեր որ՝ աշխարհ մինով կըդառնայ. թէ որ մենք աշխարհքէս ելլալու ըլլանք, իբր թէ աշխարհ կըկործանի, կավըրվի. շէնքը շը-նորհքը կերթայ. բայց անոնք գացին, իսկ աշխարհ ինչպէս որ հիմա կերթայ, նաեւ երբեմն աղէկ օրերով կերթայ քան թէ իրենց օրերը։ Այսանկալ մենք հի-մա անանկ կըսենք, իբր թէ աշխարհ մինով կըդառ-նայ, որովհետեւ անանկ կերեւայ մեզի. մենք թէ որ մեռնելու ըլլանք, ան բանը՝ մէկալ բանը՝ կավըրվի. անանկ շնորհքով չիդառնար ինչպէս որ մենք գրինք. բայց մէնէ ետեւիններնալ մեր վրայ պիտոր ծիծաղին. առջիններէն աղէկ խելքով կերթանք պիտոր ըսեն։ Վերը ըսինք որ՝ շատ հեղ աշխարհս տարբեր ընել

---

և ոչ հրահանգութիւն. զի թէ և առժամն զուարճութիւն ինչ բերցէ, այլ առ յապայն ոչինչ բնաւին օգուտ մարդկային կենցաղոյս։

Պօղոս Էմիլիոս. Նախերգ. պատմ. Գաղղ։ Վառեալն 'ի ցանկութեն տեղեկութեան հնութեանց, հեռի գտանի 'ի ցանկութէ ընչից և մարմնոյ . . . Թող զի ամօթ է մարդկութեանս՝ անգիտութիւն հնութեան. և որք յայլ մակացութիւնս և յարհեստս ծերանան, անգէտ լինելով անցից անցելոց, միշտ տղայք մնան յանձինս, և ոչինչ օգտակար հասարակաց խորհին. զոր տայ խորհել և գործել պատմութիւնն եւեթ։

Բոսիւէ. յէսայ. Է։ Զորօրինակ յանդաստանս սահմանք և կոթողք չթողուն շփոթիլ անդոց, սոյնպէս և արձանագրութիւնք ժամանակաց ոչ թողուն շփոթիլ անցից անցելոց, այլ որոշելով զնոսա յիրերաց, և 'ի կարգ պատեհաւոր վերածելով, 'ի բազում շփոթութենէ ազատ կացուցանեն զմեզ։

Մեծն Բարսեղ. 'Ի Գորդիոս ՃԼ։ Զորօրինակ 'ի հրոյ բնաւորապէս ցոլանայ փայլումն, և յազնիւ իւղոյ բուրէ հոտ անուշութեան, սոյնպէս և 'ի յիշատակէ գործոց առաքինեաց և սրբոց շահ օգտի հասանէ առ ամենեսին։

կուտայ գործադրուԹիւնը մտածածէդ, Թէև ուրիշ միտք չունենան սկսօղները, և ուրիշ խառնող մը դուրսէն ներս չիմտնայ, բայց ո՛ւր Թողունք որ՝ քանի գործքեր (մասլահաԹ) կըսկըսին մարդիկ ընել կամ մինակ, կամ բազմուԹբ. մէկ վախճանի (նիյէԹի) մը համար, մէյմընալ կընայիս որ՝ դուրսէն մէկ ոչինչ մարդ մը ուրիշ տեղ տանիլ կուտայ բանը. ասոր վրայ քեզի շատ օրինակներ կըբերէ պատմուԹը ու կըսորվեցընէ, որ անանկէնէ դունալ բան մը սկսելու ըլլաս, մի շատ համարձակ սկսիր, մի ապաւինիր քու հնարած միջոցներուդ, վասն զի կրնայ ըլլալ որ՝ մտքիդ դրածիդ ներհակը վերջանայ. հապա միշտ տարակուսելով սկսիր. զգուշանալով առաջ գնա. բանդ անանկ բանէ որ՝ Թէև ներհակը կատարվի, քեզի վնաս մը չըլլայ:

Որչափ որ նոր ապստամբուԹիւն կամ ամբոխուԹիւն (վէլվէլէ) մը ելլէ աշխարհի վրայ, միշտ

---

Օգոստին. յղ. առն զոյ պրոբոտ. գլ. ծ: Զինչ շահ ժամանակ անցուցանել հանապազորդ ընԹերցուածով, և քաղել զգործս և զգրուԹիս լաւաց և սրբց, եԹէ ոչ ծամկելով և որոճելով ծծեսցուք զուղեղ նոցա, և կլանելով իջուսցուք մինչև 'ի խորշս սրտի ներքինս. որպէս զի նոքիմբք խորագոյնս խորհեսցուք զանձանց վիճակս. և փոյԹ կալցուք կատարել զգործս նոցա, զորոց զարարուածս և զբանս ստէպ վերծանեմք:

Մեծն Գրիգոր. Բարոյ. ծի. 32: Զօրօրինակ տեսանել տեսանեմք զերեսս անծանօԹից, այլ անգիտանամք զսիրտս նոցա. ապա եԹէ խօսակից լիցուք նոցա ընտանեբար, 'ի ձեռն բանից խելամուտ լինիմք և խորհրդոց նոցա: Սոյնպէս և յընԹերցուածս մատենից՝ մանաւանդ գրոց սրբց, եԹէ 'ի պատմուԹին միայն ակնարկեմք, սին սոսկ երեսքն երևուԹանան մեզ. այլ եԹէ ստէպ յաճախուԹբ ընդելասցուք, ներքին մտաց խորազգած լինիմք իբրև ընտանի խօսակցուԹեամբ:

մէկ պատրուակաւ մը (մահանւոյամբ), կամ մէկ բռնաւորական կիրքէ մը ելեր է. այս կիրքնալ շատը ճըշդոհանքը եղեր է իրենց մեծերուն վրայ։ Ինչպէս մեր հին հայոց նախարարքը իրենց պատրուակ անելով Արտաշէս թագաւորին անկարգ վարքը, ու մանիկ չըննելով Սուրբ Սահակայ խրատը՝ իրենց թագաւորը ու թագաւորութիւնը մատնեցին կռապաշտ պարսից ձեռքը։ Նոր ատեններսալ սաանկ մեծերուն վրայ ճըշգոհալէն ելաւ ամէն խռովութիւն լեհերու, քօրսիքայէն, ամերիկացի ինկիլիզներուն, ու Ֆիլէմենկներուն. ինչպէս որ պիտոր կարդաս այս գրքիս մէջը։

Ամէն նորութիւն կամ նոր ամբոխութիւն որ կելլայ, ճըշդութիւնը (սօֆիութիւնը) իրեն պատճառ կընէ, իբր թէ աղքատաց հասնելու համար, զրկողութիւնը վերցընելու համար, ու բարեկարգութիւն խօթելու համար։ Բայց շատ հեղ առջի անկարգութիւնը վերցընելնին իրենք նոր նոր անկարգութիւններ կըխօթեն. և թէ որ բանաւոր պատճառ մը չունենան, ան նոր ամբոխութիւնը կըվերջանայ թալլելով կողոբտելով, կամ շատ անմեղ մարդիկներու արունը մանալով։

Ամէն ապստամբութիւն կամ նորութիւն առաջ չերթար, մանաւանդ թէ կըկործանի աւազակաց ժողովի պէս։ Վասն զի ապստամբիլ ըսելը ուրիշ բան չէ, որ ամէն լաողին ատելի կերպով մը գլուխ քաշել իր օրինաւոր տէրոջմէն. ու անհիմն պատճառներով ջանալ՝ որ նետէ իր վրայէն հնազանդելու պարտքը։ Պատմութիւնը պիտի սորվեցնէ քեզի թէ ապստամբելը որչափ չարիք ու վնաս է բերեր աշխարհի ու մարդկյան, քանի՛ տներ մարեր են, քանի՛ ցեղեր ջընջըվեր են, որը արժանապէս, որը անիրաւ տեղը։

Ամէն խռովութիւն կամ ապստամբութիւն որ կըր-նայ յանկարծ ելած մէկ քաղքի մը կամ մէկ թա-գաւորութեան մը մէջ, պատմութիւնը կարդալով կի-մանաս, որ մէկէն յանկարծ չէ ելած, այլ ամէն խռովութիւն շատ առաջուց վառուիլ սկսեր է, կա-մաց կամաց ծաւալելով հնանալով, բռնկելը ետքը յան-կարծ եղեր է: Ասանկ ահա պիտոր կարդաս ընհէ-րուն, ամերիկացոց, ու Ֆրանսայի խռովութիւններուն համար:

Նարեկարգութ խօթել ուզողներն ալ շատ հեղ առա-ջի բաները վերցընելէն ու ասոնց անցընելէն ետև կի-մանան՝ որ ան առջիններուն ըրածները՝ գրած կա-նոնները՝ որ անկարգութիւն կըսեպէին, աղէկ կար-գաւորութիւններ են եղած ազգին՝ քաղքին՝ տանէն պարագայներուն յարմար, անոր համար անանկ դըր-ւած են եղեր, անանկ կըննեն եղեր հինները, մը դի անանկ կըփայլէր: Այս ճանաչողութիւնը ետքէն կի-մանան, վերցընելէն ետև կըստրվին:

Մարդուս շատ հիւանդութիւնը բարոյականէն ա-ռաջ եկեր է, ըսել է մարդուս կիրքէն. պատմութիւնը լեցուն է օրինակով, որ ստամբոլցիք իրենց փորձե-լովը աղէկ գիտեն աս բանս. հարիւր տարվան մէջ եկող մարդիկներուն կէսը՝ կամ թէ աւելին՝ իրեն ձեռքէն հիւընայեր մեռեր են. հող, մամառ, վախ, կսկիծ, սրտադող, բարկութէ, տրտմութէ, սրտնե-ղութիւն, աս բարոյական կիրքերը պատճառ են ե-ղեր մեռցընելու: Ասոր վրայ կարդա 1816 Եղա-նակը. թղթ. 6. գ. ևն: Նոյն պատմութիւններուն կը-տրվեցընէ՝ որ երբոր մէկ փորձանք մը կուգայ մար-դուս, առջի էր ցաւը կըտանի, ուրիշ նոր մը կը-յաջորդէ. ասանկալ պիտոր կարդաս որ՝ անբժշկե-լի ցաւ ունեցողներ բանտին մէջը կենալով, բանտին տանջանքը քաշելով, անցուցերեն իրենց առջի ցա-ւագարութիւնը, խալըսեր են հիւանդութէ:

Ամէն մարդ մէյ մէկ բանի սէր ու յօժարութիւն (հաւէս) պիտոր ունենայ, բայց ինչ գէշ բան կըլլայ՝ երբոր մէկ մարդ մը իր կացութէ դուրս եղած բանի սէր (հաւէս) ձգէ, որ իրեն չիվերաբերիր. կամ թէ անանկ սէր կըձգէ՝ որ իր բանը, իր պաշտօնը կըմոռնայ. օրինակի համար՝ թէ որ թագաւոր է, թողու իր կառավարութիւնը, իր հոգը նայելու՝ թէ ինչպէս կըկառավարեն իրեն դրած դատաւորները, անոր տեղը իր սէրը հոգը բոլորովին զինւորութէ կամ դրօսանաց տայ: Անանկ ալ արուեստաւոր մարդ իր արուեստին հոգ չունենայ, ուրիշին վէճը, կռիւը, դատը (տաւան՝) կարեւոր հոգ ունենայ: Ասոր օրինակները ու գէշ հետեւութիւնները շատ պիտոր կարդաս ընդհանուր պատմութեան մէջ:

Բայց քանի մը գիտելիքներ կան, որ միայն ս. գրոց պատմութիւնը մեզի կըսորվեցընէ, որոնք թէ որ Ածաշունչը մեզի յայտնած չըլլար, որչափ յոգնէինք փնտըռէինք, պատճառը ոչ երբէք կարենայինք պիտոր իմանալ ուրիշ պատմագրութէ: Մէկը աս է որ՝ մարդիկ հնուցմէ վեր որչափ խաղաղ ըլլան թէ առանձին մարդ, թէ ամբողջ ազգ, որչափ կըթըրված ըլլան ինչպէս են եւրոպացիք, որչափ հոգ տանին, հանգստութի մը չեն կրնար ունենալ. չէյտես ինչ կայ որ՝ որչափ ջանան ասոր համար, պարապ է. միշտ մէկ վայնասուն մը կըլլայ, մէկ խաչը երթալու ըլլայնէ՝ մէկալը անտարակոյս ետեւէն կուգայ. մէյմը խնտան մարդիկ, հազար անգամ կուլան. ասոր պատճառը միայն մովսէս մարգարէին պատմագրութէնը՝ որ է Ածաշունչը, կըհասկըցընէ թէ աս աշխարհքիս վրայ անէծք կայ եղեր, որ մեր նախահօր ադամայ մեղքը բերեր տըվաւ. ան անէծքն է որ՝ մենք ադամորդիքս վրանիս ունենալով, ինչ ընենք, չենք կրնար աս աշխարհս հանգստութե գտնալ, հա-

պա միայն անդին աշխարհը ։ Մէյմընալ մահուան վրայ կըսորվեցընէ, վն̃ զի քանի մը պատճառ կան՝ անանկ կըցըցընեն որ՝ մարդուս չէր վայլեր մեռնիլ, ատանկ հող կորիլ, մարմնոյն դիացէն իբր ոչնչանալ. մնացօղներուն իր մօտիկներուն մեծ կսկիծ թո-ղուլ, որ մէկ տանջանք մընէ անդադարելի ։ Ասոր վրայալ նը գրոց պատմութիւնը կըսորվեցընէ, թէ իրաւ անանկ էր առաջ, մարդս չէր մեռներ, բայց իր մեղացը պատիժ եղաւ մահը. ասկէց զատ կը-տեսնանք կիմանանքալ որ՝ աս պատիժսալ իմաստու-թե̃ գրված է եղէր յա̃յ, դեղ մարդուս չարութե̃. վն̃ զի քանի որ մարդս անմեղ էր ու արդար, անոր չմեռնիլը աղէկ էր, բայց մեղանչելէն ետև՝ երբոր իր կիրքերը տիրեցին, անանկ բան մը եղաւ որ՝ ա-սանկ մեղանչական մարդը իր կրից ձեռքը թողու-ցած՝ գազաններուն չըրածը ինքը կընէ իրեն նմա-նող ընկերներուն վրայ. ասանկ մարդիկներուն ձեռ-քէն խալըսելու ճար չիկայ, բայց եթէ մահն է որ կուգայ ան մարդը աշխըրքէս կըվերցընէ, անով կը-խալըսի կըխաղաղկի աշխարհ ։ Ուրիշ տեսնի պատ-մութիւնները թողունք, մի միայն աս ժը̃ դարուս պատմութենը երկու մարդ կըցըցընէ, որոնցմէ հա-զարաւոր մարդիկ չիկրցան ազատիլ բայց եթէ մա-հը գալով. մէկը ասիայի մէջ գահման է, ասիկայ թէ որ մահ չըլլար չիմեռնէր, ինչվան աս օրս հա-զարաւոր մարդիկ պիտոր տանջէր. մէկալը եւրո-պայի մէջ քառվալհօն, ուսկից չիկրցան խալըսիլ փօրթուկալցիք, բայց եթէ երբոր մեռաւ յովսէփ փօրթուկալին թագաւորը՝ որուն որ ապաւինած էր քառվալհօն. անոր մեռնելէն ետև նոր թագաւորօղը քառվալհօն վերցուց, ամէն մարդ խալըցուց ։

Բայց պատմութենը որովհետև աւելի թագաւորաց ու տէրութեա̃ց վրայ կըպըտըտի, անոր համար աւելի տէրութեա̃ց վրայ խեւք ու զանազան գիտելիքներ կը-սորվեցընէ, ով որ մտադրութե̃ կարդալու ըլլայ, ո-րոնք չի կրնար մարդ ուրիշ գրքերէն սորվիլ. անոր

մէկ, շուտով տասը տանիլ, բայց երբեմն անբերրի ալ կըլլայ, որ կրնայ չծնանիլ։

Հասարակապետութիւնը կը վայլէ աւելի պզտիկ երկիր ունեցողներու. աս կերպ կառավարութեան մէջ մէկ գլխացէն նայելով՝ ժողովուրդն է միապետ կամ թագաւոր, որոնք կ'ընտրեն իրենց պատուաւորները. մէկալ գլխացէն նայելով՝ ժողովուրդն է հպատակ։ Հասարակապետութեան մէջ ախրօղը՝ է սէրը հաւասար ու չափաւոր ըլլալու. աս պատճառաւ է որ՝ հասարակապետութեան ըրերեն, որով իբր թէ ամէնքն ալ հաւասար կ'իշխեն։ Աս կերպ կառավարութեան յատուկ է խոհեմութիւն՝ և գործ գնել օրէնքը, բայց յատուկ ալ է ամենէն բանը ուշացընել, և ամենէն բանէն ան գլխի ծայրը անցնիլ։

Փորձըված բան է որ հասարակապետական ազգին սահմանը քիչ տեղ տարածված պէտք ըլլայ. ու որչափ որ կարելի է՝ մէկ ազգ, մէկ լեզու պէտք ըլլայ. թէ չէ՝ երբ կառավարութեան մէջ ուրիշ ազգ, կամ ուրիշ սովորութեան ունեցող մարդ մտնայ նէ՝ չիկրնար յարմարիլ անոնց հին սովորութեանը, պէտք է խօթէ իր ազգին սովորութիւնը, ու հարկաւորապէս խառնակ կառավարութեան պատճառ կ'ըլլայ։ Նմանապէս երբ շատ տարածվի մէկ հասարակապետութեան իշխանութիւնը, տէրութեան ծայրերը կեդրոնէն հեռու ըլլալով, լաւ չիկառավարվիր։ Հռովմայեցւոց հասարակապետութիւնը երբ շատ տեղ ձեռք երկնցուց, շուտով փոխվեցաւ կառավարութեան կարգը. վենետիկցին միշտ քիչ տեղով շատացաւ, անոր համար երկար քշեց, ու միշտ զօրաւոր եղաւ, մինչև ուրիշ պատճառով վերցըվեցաւ։

Երկու կերպ կառավարութեանն ալ աղէկ ըլլալու համար՝ կըսվի թէ պէտք է որ ժողովուրդը ունենայ ազատութեն. բայց աղէկ հասկընալու է ազատութիւնը, այսինքն ըներլու ան բաները՝ որ օրէնքը իրենց կըզուրցէ, կամ թող կուտայ ըներլու. չէ նէ՝ աս ազատութիւնը միշտ վտանգի մէջ կը ձգէ, բառ՝ որում

կամ տասոնիկ ազատութիւն կառնեն բանեցընելու, և կամ տասոնիկ կապված կըպահեն։

Վերոյիշեալ տիրող օրէնքը միապետութեան ու հասարակապետութեան որչափ որ աւելի ճիշդ բանըլին պահվին, այնչափալ աւելի իրենք հաստատուն կըմնան․ որչափալ որ թուլնան, իրենքալ այնչափ կաւըլին, վտանգի մէջ կիյնան կործանվելու։

Բռնակալ թէպէտ տէրութինները դրված են որ օրէնքները պահել տան մարդիկներուն՝ թող չիտան ժողովուրդը մարդու կեանք շարժելով ուղածնին ընեն, զրկողութիւն ընեն, այլ չափաւորութիւն պահեն, հանգիստ նստին․ բայց պատմութիւնը կըստուգեցնէ որ տասն տասն անանկ մարդիկ են եղած որ տէրութիննին գէշի են բանեցուցած․ ինչպէս որ եղան տարկվինաս, պարիկըոս, ճինկիզխան, լէնկթիմուր, ևն․ որ ուրիշ օրէնքմը չեն ճանչցած՝ բայց եթէ բռնութիւնը․ ուրկից կուգայ բաժանումն․ վասն զի երբոր բռնութիւնը կըլլայ օրէնք ու կանոն ան մարդուն, որ պէտք էր արդար ըլլալ՝ ալ չիմնար ընկերութիւն։ Թէ որ ամմէն թագաւորք օրէնքը պահէին, աշխարհս միակերպ խաղաղ կըդառնար, չէր ըլլար ան աւերածութիւնը զանազան դիպուածներու, որ պատմագիրքները լեցուցեր են։ Սովորութիւններ ալ կան՝ որ չգիտցողը կզարմանայ․ բայց գիտցողը կիմանայ որ հարկը անանկ կըբերէ տէրութեանց մէջ․ ինչպէս յայտնի է հին պատմութիւններէն ալ։ Շատ անգամ անոնք որ դրացի են, կամ տունք որ իրարու հետ սաւուտուր ըրած են մէկ տեղի մը վրայ, ամմէնը իրարու հետ թշնամի են եղած․ ինչպէս առանձին տներ աւելի իրենց դրացիներուն հետ վէճ, կռիւ, թշնամութիւն կունենան, սաանկալ ամմէն մէկ տէրութիւն իրենց դրացիներուն հետ շատը ավըրված են, քիչ կայ որ բարեկամ եղած ըլլան, ասոր համար չինումաչինները հանդարտ ու խաղաղ կեցած են, վասն զի զատված իրենք իրենց ըլլալով ուրիշ տէրութեանց հաղորդութիւն

որ ինքը գրեր էր՝ նայելով այն ազգին բնութիւնը ու որպիսութիւնը. ուստի երբ որ ազգը փոխուի, առջի օրէնքը ալ իրենց չէյարմարիր, ու գրեթէ առանց օրէնքի մնալով՝ կըկործանին կըյնին։ Օրինակ մը առած հին ատենէն, որ խիստ երևելի է ընդհանուր պատմութեան մէջ։ Հռովմայեցիք 752 տարի քնէ առաջ մէկ մեծ ու նոր տէրութիւն մը սկսան ըլլալ. այս տէրութիւնը օրէօր անանկ մեծցաւ՝ մանաւանդ քնի տն մերոյ ատենները, որ աշխարհիս մեծ մասին վրայ տիրեց. ան ժամանակ աշխարհիս մէջ ամենէն աղէկ տեղն էր, այսինքն՝ միջերկրական ծովին ու արշիպեղագոսին բոլոր շրջապատն էր, որ այնչափ ազգեր զանազան լեզուաւ ու կրօնքով մէկ տէրութեան եղերէր, ու կարծես թէ մէկ տան ձևացեր էր. ետքը յամի տն 395 երկու բաժնուեցաւ, կէս մը Հռոմ՝ կէս մը Ստամպօլ. Ստամպօլ կեցած թախտը յամին 1453 բոլորովին կործանեցաւ, իսկ Հռոմ եղած թախտը անկէց շատ առաջ յամին 475 կործաներեր։ Այս պատմութիւնը թէ որ վրայէն կարդաս՝ ուրիշ բան չես լսեր, բայց եթէ ան մեծազօր տէրութեան ըրած գործքերը, պատերազմները, իսկ թէ որ մտմտալով կարդաս, կըհասկընաս որ՝ բարոյական պատճառները եղերեն հռոմայեցոց տէրութիւնը առաջ տանող. մէյմը՝ իրենց ազգին հասարակաց բարին նայիլը եղեր է. երկրորդ՝ չարքաշութիւնը ու զինուորական կրթութեան խստութիւնը. երրորդ՝ ան սկիզբը՝ որ միջերնին ունէին, թէ բան մը չընենք, եթէ ոչ յաղթելէն ետև, խաղաղութիւն ընելէն ետև։ Իսկ փլչելնուն եղերէ մէյմը՝ իրենց երկիրնին մեծցընելը՝ ընդարձակելը. երկրորդ՝ օտար ազգերը իրենց քաղաքացի գրելը. վասն զի սովորութիւնմը ունէին իրենց հասարակապետութեան ատենը որ, ինչ ժողովուրդի ու գաւառի վրայ տիրէին նէ՝ անոնք սարուկ չէին սեպէր, հապա անոնցալ հռոմայեցիի անուան կուտային, ու իրենց իշխանութեան հաւասար կընէին։ Այս սովորութիւնը որ Հռոմուլոս

ոկտա.՝ տաճար քանի որ մօտաւոր ժողովրդոց հետ էր նէ՝ լաւ բան էր, վասն զի գրայի ու մօտիկ ըլլալով արդէն մէկ ազգ կըսեպվէին, անոր համար փոփոխութիւն չէր մնար: Բայց երբ որ հեռու անդոց ժողովրդոց կուռայքին այս պատիւը, նայէ թէ ինչ խառնափնդոր բաներ չէր հետևէր: Երրորդ կործանիչը եղան նոյն ասխոյ ազգերը որոնք իրենց տակը առին զէնքով. վասն զի ան ազգերնուն իրենց դէշ բնութիւնին հռոմայեցոց մէջը խօթելով կործանեցին, որ էր զեղխութիւն, փափկամութիւն, ևն. Իսկ թէ ասիացիք որ հռոմայեցոց չեկըցան յաղթել զէնքով, յաղթեցին իրենց մոլութիւնը (խույերովը): Աս իմանալով, հռոմայեցոց պատմութիւնը չըլլար քեզի մինակ պատմութիւն, հապա կըլլայ մէկ բարոյական գիրք մը, մէկ խրատ մը, մէկ լոյս տալ մը փորձով չէթէ խօսքով կամ վարդապետութեամբ: Ասանկով ամմէն մէկ ազգութեաց վրայ կըստորվեցընէ պատմութիւնը թէ ինչ բան եղաւ որ ան ազգութիւնը տաճար տարբե ծաղկեցուց, ինչ բան՝ ինչ պակսութիւն եղաւ որ՝ տաճար գտցած ծաղկած ազգութիւնը ոչնչացուց:

Ներսին կործանումը կամ ոչնչանալը կըկարգաս աս գըրքին մէջը, պատճառը անանկ կըգտնաս որ՝ ուժ կամ զօրք բաւական չունենալէն եղերէ կործանելնին. բայց ուշ դնելով մտմտալով կարդալու ըլլաս, կիմանաս որ՝ զօրք չունենալուն պատճառանէրնուն բարոյական կիրքերը եղած են եղեր: Ներսցոց մէջ մէկ ինքնագլխութիւն մը կար, ամմէն մարդ իր խելքին հաւնելով, ու աշխատանքէ փախչելով. անկէց մէկ մէկու խոնարհիլ՝ մեծ ճանչնալ չունեին եղեր, որով իրենց մէջը անանկ եղանակ կառավարութեան մը գրված էր որ եթէ թէ ամմէնուն թագաւոր եղած ըլլային: Աս դէշ եղանակը աւելի տարաձայնութիւն բերավ իրենց մէջը, կառ՝ կառ բաժնըվեվեցան իրարու դէմ. ան բաժանումը պէտը եղաւ բերաւ իրենց կործանումը:

Անոնց դէմ ամերիկացի ինկլիզները մէկ ախոյ ըլլալով ու իրենց մեծերուն հնազանդ, իրենք ալ ազատասէր, ոչնչէն մէկ նոր տէրութիւն մը եղան, ու մէկ մեծ տէրութիւնմը զօրաւոր, հարուստ, ու բարեկարգեալ:

Մոսկովին առաջ գալու բարոյական պատճառները կըտեսնաս. մոսկովին կրթըված զինուորը՝ ունի կըսեն իր վրայ հին մակեդոնացւոց կրթութիւնը, որ ամառ բերդիմը պէս իրարու քով կեցող կըկենային, անանկ որ մէկմէկէ բաժնել անոնք՝ անհնարին բան մըներ: Հռովմայեցւոց հայրենասիրութիւնը՝ որ պատերազմին մէջը մեռնել յանձն կառնէին, ու գերի չէին ըլլար, կամ կեցած տեղերնին չէին թողուր փախչէր: Ունին կըսեն մոսկովիները պարթեւներուն ժուժկալութիւնը՝ որ պատերազմէն ետ չեն դառնար, ձիերնէն վար չեն իջնար՝ մինչեւ որ յաղթութեամբ չըլմընցնեն պատերազմը: Ունին նոյնպէս արաբներուն ջանքը ու յօժարութիւնը: Իսկ մոսկովին զօրապետները ծեծի մէջ կըցըցընեն չինացիներուն քաջարութիւնը, կեսարոսին յօժարամտութիւնը: Պրուշին թագաւորը Բ. Ֆետերիկոս կըգրէ որ՝ մոսկովին ոտանաւոր (եաեան) զօրքը կրնայ նմանիլ մէկ պղնձէ շինված պատերմը: Մէկ պատճառնալ աս է որ՝ մոսկովին զօրքը ցուրտ տեղ սորված ըլլալով, և ուրիշներուն լեզուն չէգիտնալով իր տէրութիւնը ձգել՝ ուրիշ տէրութեան մէջ երթալ դժար կըլլայ, ոնկէց ուրիշ ազգաց հետ հաղորդակցութիւն ընել չուզէր, իր ազգին հետ կապած կըմնայ, չիճշդօհար, պաղը՝ ծարաւը՝ ծեծին թշուառութիւնը համբերութեամբ կըքաշէ, քիչովալ ապրելով ու բաւականանալով կըլլայ որ մոսկովը քիչ խարճով շատ զօրք կրնայ պահել:

Տէրութիւն մը ոտքի վրայ կեցընողը չորս բան են. աղէկ ու արդար եղանակ կառավարութեան, միաբան ըլլալը, ուժ, ու ընտակ. ասոնցմէ մէկը որ որ պակսերէ մէկ տէրութեան մը մէջ, չեն կրցած կենալ ան

տէրութիւնները։ Հինաւուրեան մօղոլին տէրութիւնը խիստ հարուստ էր, բայց չունենալով մէկալ բաները՝ ինքը իբր ոչինչ մը եղաւ, թէպէտև քովի տէրութիւնները ինչվան պարսից տէրութիւնը կեցերէ. վա-զի մինակ հարստութիւնը առանց ուժի, մանաւանդ թէ շատ կըլլերէ թշնամիներ շատցընել տալով իր վրայ։ Ֆրանսացը ուժ ունէր, ու աղէկ պատերազմական կրթութիւն, բայց ետքի ատեններս մէկալ բաները պակսելով, ան վիճակը հասան որ՝ քիչ մնաց իրենք զիրենք բոլորովին պիտոր կորսնցընէին։ Ֆիլէմէնկները գիտես թէ ծովընին գործերէն որ առանձին մարդկանց ըստակը ու քաջարութիւնը մինակ կրնայ տէրութիւնին քշել տալ. իրենց աշխատանքը՝ ճարպիկութիւնը՝, իրենց առանձին շահասիրութեան վրայ ավելերէին և ոչ տէրութեան. և իրաւ որ շահեցան, խիստ հարստացան. բայց մինակ հարստութիւնը՝ մանաւանդ երբոր ան հարստութիւնը տէրութեան չըլլայ, այլ միայն ժողովրդեան, չիկրնար տէրութիւնը կեցընել. յայտնի եղաւ որ իրենց դանդաղկոտութիւնը՝ խելք չիբանեցընելը աղէկ կառավարութեան վրայ՝ ոչինչի մը պէս հալեցուց իրենց մեծ հարըստութիւնը, երբոր ուրիշ պէտք ըլլալու բաները պակսեցան։ Ֆիլէմէնկին ներհակ պրուսը եղաւ, որ ըստըկի գիտցէն թէպէտ խիստ կարօտ, բայց իր խելքը աղէկ կառավարութեան և ուժի վրայ բանեցընելով՝ օրէօր մեծցաւ։ Շվէտին թագաւորը ժբ կարոլոս միտքը դրերէր որ մինակ ուժը կրնայ տէրութիւնը քշել տալ, բայց իր տեղը կորաւ։ Ասոնք փորձով սորվեցուցին ինչ որ վերը ըսինք։

Ամէն մէկ տէրութիւն նոր ոտք ելլալու ատենը՝ ատ սկիզբը՝ ատ սերտը ունեցերեն մէջի մարդիկները։ Եա Բնդ Դանիէլ, Մայն Բէ տէրութիւնը աղջը տառզ Եռթայ։ Եւ իրաւ սատ է առաջ դացեր, չէ թէ մինակ ուժ կամ շատվորութեն ունենալով։ Բայց ան տէրութիւնը հնցածին պէս՝ մէջի մարդիկներուն

բնութիւնը կը փոխուի, ան ոգին՝ ան սիրտը կը մնա-յի, անոր տեղը սա ոգին կը մտնայ։ Եա թո՛ղ Գայն ղահիմ, իօք փէրտուպիը եա՛մ ազգը՝ ինչ որ ըլլալու է, թո՛ղ Եղբայ ըլլայ, թո՛ղ կորսուի։ Եւ իրաւ մեղքինները ա-ռանկ ըսելով՝ ատանկ ընելով՝ կը կորսուին ամէն առա-քութիւնները։ Այս բանիս փորձը Ը̄հանուր պատմութ՟ մէջ աղէկ կը տեսնուի, որ մէկ տէրութիւն մը վեր կելլայ կը զօրանայ, քանի որ մէջի ժողովուրդը իր տէրութիւնը կը պահէ, իր շահը չի նայիր՝ տէրութեան շահը կը նայի, անոր շահին համար ինչվան իր կեան-քը կը դնէ։ Իսկ տէրութիւն մը վար կիջնայ, օրէօր կը տկարանայ, երբոր մէջի ժողովուրդը ան տէրու-թիւնը ատել ըսկսի, երբոր պաշտօնատէրերը՝ դա-տաւորները՝ իրենց շահը նային, տէրութեան վնասը հոգերնին չըլլայ։ Ասոնց օրինակները սա գրքին մէջն ալ կը կարդաս Ֆիլէմէնկին՝ լէհին՝ նաբօլիին՝ մա-նաւանդ Ֆրանսայի վրայ, որուն պաշտօնատէրերը երբոր տէրութեան շահը կը նայէին, Ֆրանսան օրէօր առաջ կերթար կը փառաւորուէր․ իսկ երբոր բնու-թիւննին փոխեցին, իրենց շահը նայողներ եղան, Ֆրանսան օրէօր աւրուեցաւ։ Ինչպէս ետքը նորէն նորոգուեցաւ՝ հասարակաց բարին նայելով։

Բայց գիտես թէ ամէն տէրութիւններնալ մար-դուս կեանքին պէս չափմը ունեցեր են տարիքու, ան՝ չափը հասածին պէս՝ իրենքալ լըմնցեր են։ Ելա-նէն ըւռանան, և իջանէն թաշթանան։ Միայն սա է տար-բերութիւնը՝ որ մարդուս կեանքը 80, 100 տարի կը քշէ, տէրութեանց կեանքը աւելի երկան կը քշէ․ 300, 600, 800 տարի են։ Մարդը բնական մարմին ունենալովը բնական կերպովալ իրեն կենաց չափը ո-րոշեալ է․ իսկ տէրութիւնները բարոյական մարմին ըլլալով, որ հետզհետէ այլևայլ մարդիկներով կը բաղ-կանայ, 'ի հարկէ աւելի երկայն կերթայ․ բայց ան-ալ իրեն համեմատ չափ ունի, չափը հասնի նէ՝ իրեն կեանքնալ կը հատնի։ Հասարակապետութեանց

մէջ ամենէն աւելի երկան քշօղը եղաւ վէնետիկցո-
ցը, որ 1400 տարի քշեց (1): Այս փչելները տէ-
րութեյ՝ կամ կամաց կամաց կըլլայ, և կամ յան-
կարծ; երբոր տէրութիւնը հանգիստ խաղաղ կեցած
ըլլալով՝ բարոյական կիրքը կուգայ, գիտես թէ հով
մը փոթորիկ մը կըհանէ, ան հովը բոլորովին տակ-
նու վրայ կընէ, դուրսի տէրութիւնը ներս բերել
իշխել կուտայ, ան ատենը փըչիլը թէպէտ յանկարծ
կըլլայ, բայց փըցընելուն պատճառը որ բարոյական
կիրքն է՝ կամաց կամաց կըվառւի, ինչպէս օր մը
յանկարծ բըռնկող մը կըհանէ:

Ընդհանուր պատմութիւնը հոս մէկ ուրիշ դիտելիք
մը կըսորվեցընէ ընդհանուր. ամմէն մեծ տէրութիւնը
վերցըլած ատենը կըբաժնըվի, զանազան պզտիկ
թագաւորութիւններ կելլան նոյն տեղը, ետքը կու-
գայ ատեն նորէն մէկ մենծ տէրութիւն մը կելլայ,
ան պզտիկ տէրութիւնները կըվերցընէ, երբոր ա-
նոր օրհասնալ (էջէլնալ) կուգայ՝ ինքը կըյնի, իր
տեղը նորէն պզտիկ տէրութիւններ կելլան. ասան-
կով մենծէն պզտիկներուն վրայ, մէկէն շատերուն
վրայ, իբր ծովու ալիքներու նման եռալէ եռալ դար-
ձեր պըտըտերեն տէրութիւնները աշխարքիս մէջ:
Ասանկ եղաւ մեծին աղեքսանդրի տէրութիւնը՝ որ
չորսի վրայ բաժնըվեցաւ՝ մակեդոնացւոց, եգիպ-
տացւոց, սելեւկիացւոց, ասիացւոց: Ասանկ եղաւ
հին ասորեստանեայց տէրութիւնը, որուն ինկնալովը
երեք մենծ տէրութիւններ ելան բաբելացւոց, մա-
րաց, ու ուրիշ ինքնագլուխ թագաւորութիւններ:
Հռոմայեցւոց տէրութիւնը փոխվեցաւնէ՝ քանի
նոր թագաւորութիններ ելան. գթաց տէրութիւնը
ինկաւ, տեղը քանի իշխանութի ձեւացաւ. ասանկ

(1) Ասոր վրայ կարդա ինչ որ գրերենք 1815 տար-
վան Եղանակին մէջ. թղթ. 204. ու 1816 Եղանա-
կին մէջ. թղթ. 198:

եղան նաև Ճինկիզ խանին՝ լէնկթիմուրին տէրութիւնը, ևն. տատանեալ եղաւ քիչ մը ժամանակ նաև պօնափարդէին տանը։ Անոր համար ինչպէս անհաս մարդկանց վրայ՝ տատանեալ տէրութեանց վրայ իրաւ կըլլայ զըուրցել՝ թէ մեկին փլչիլը՝ մեկալին շինվիլ կըբերէ, որ նաև ի ատեններաւ լեհի տէրութեն փլչելուն վրայ տեսնըվեցաւ։

Պատմութիւնը կըսորվեցնէ որ ինչ ատեն թագաւորմը կամ իշխանմը զըկում ընող եղէր է՝ Ճամբէ դուրս անկարգութեն մէջ ինկեր է. ան ատենը կամ դուրսէն ամբարիշտ բռնակալներ եկեր են, կամ ներսէն ամբարիշտ մարդիկներ ոտք ելեր են. ատ ամբարիշտները կամ որ տէրութիւնները ընջեր են, կամ որ մեծերուն անկարգութիւնները շըտկեր են։ Ասանկ դիպուածները մեր հայու ազգին պատմութեն մէջնալ կըկարդաս. ասանկ ալ եղաւ հինտխտան դահմազին հան երթալու ատենը, որ հինտին իշխանները կանչեցին շըտկելու համար։

Ան մարդը չիշտկըվիր, որ չիճանչնար իր պակսութիւնը, ու չուզէրալ Ճանչնալ՝ ուրոր բարեկամները զինքը կարթնցընեն, իրեն խրատ տալով՝ առջևը կըդնեն իրեն պակսութիւնը։ Ասանկները իրենց վրայ մանաւանդ մէկ վարկում (խտախպար) մը կուտեննան, նոյն պակսութիւնները աղէկ կըսեպեն. բայց օր մը հարկաւորապէս կըփլչին. ան ատենը ուշ կիմանան իրենց պակսութիւնը։ Ասանկներուն որ իրր թմրութեն մը մէջ ընկած են, խրատ տալը օգուտ չունի, հապա զիրենք արթնցընօղը կըլլայ իրենց թշնամին. և թէ որ օգտըվին, հարկաւորապէս զիրենք կըշտկեն. շտկելումէն՝ ան թշնամութիւնը կըլլայ մեծ բարեկամութիւն, մեծ օգուտ։

Տէրութիւններէն ոմանք իրենց տակը շատ ազգեր ունին, անոր համար ան տէրութեանց պատմութիւնը կըլլայ պատմութեն այնչափ ազգաց՝ որչափ որ ազգ կըգտնըվին անոր տակը։ Տաճիկը իր տակը ունի

հայը, հոռոմը, հրեան, կիւրճին, լազը, քիւրտը, արապը, Թիւրքմէնը, քելտանին, մառօնին, խփթին, տիւրզին, ու ափրիկէին պարպարըշները. Թող ռումէլին դին եղածները, որ հին ատենը զանազան տէրութիւն էին։ Մոսկովը ունի զանազան ազգեր մանաւանդ Թաթարներու, որոնց համրանքը քառասունի չափ կելլան։ Սպանիան ու փօրթուկալը վարի աշխարհ իրենց տակը ունին զանազան ազգ ամերիկացոց, որ առաջ զանազան տէրութեան պէս էին, հիմա իբր մէկ ազգ մընեն եղած, որոնք իրենց տակն են, ու իրենց վարմունքը ունին։ Ինկիլիզը հնտի մէջ զանազան ազգ՝ զանազան ժողովուրդ օրէօր իր տակը կառնէ։

Կան տէրութիւններ՝ որ թէպէտ մեծ չեն, բայց խիստ խելացի ու աղէկ բարեկարգութեամբ կառավարութիւն մը ունին, որով իրենց հանգստութիւնը կըպահեն. ասանկ են հասարակապետութեանց մէջ ըզվիցերցիք, ու ամերիկայի մէջ եղած նոր տէրութիւնը, որոնց վրայ ետքը խօսինք. միապետութեանց մէջնալ տանիմառքան, նաև պրուսը իր խելքովը ու աղէկ կրթութեամբն է՝ որ օրէօր մեծցաւ զօրացաւ։ Նայելու ըլլաս, երեք դաս ժողովրդեան կըգտնըվին, որոնք իրենքնալ զանազան կերպով հանգստութիւննին կըպահեն. մէյմը՝ ուրիշ տէրութեան տակը մտալով. մէյմընալ՝ իրենց զէնքով ու քաջութենով. երրորդ՝ իրենց խելքովը ու խելացի ճամփով։ Ասոնց վրայի օրինակները պիտոր գտնաս ընդհանուր պատմութեանը մէջ։

Պատմութիւնը կարդալու ատենդ փնտռելով նայէ, թէ ո՛ր մարդ ինչ բանի մէջ աղէկ խելք ունի, ո՛րը ինչ բանի մէջ պակսութիւն ունի։ Ի՛նչ մեծ պակսութիւն է մենծի մը՝ զէնքը թողուլ մէկ մարդուն մէկ պաշտօնատիրոջ կառավարութեան ձեռքը, և ո՛րչափ պէտք է հոգ տանիլ որ իրեն տակի եղող պաշտօնատէրերը աղէկ ըլլան. ո՛վ որ ասանկ չէ ըրեր, ինչ աղետալի դիպուածներ բերեր է։ Ասոր ներհակ՝ ո՛վ

որ իր ձեռաց ներքեւ յարմար մարդը կըգտնայ, աղէկ ընտրութիւն ընելէն ետեւ՝ ան մարդուն կըյանձնէ բոլորովին բանը, աղէկ առաջ կերթայ ։

Կըգտնըվին քանի մը ազգեր ալ, որոնց մէջը շատ տարաձայնութիւններ կըլլան. ժողովուրդը կառավարչաց դէմ, կառավարիչները ժողովրդեան դէմ, ինչպէս է ինկլիզին տէրութիւնը եւրոպայի մէջ, որ շատ ալ պատերազմի մէջ գտնըվերէ. միայն Ֆրանսզ ազգին հետ 446 տարվան մէջ 200 տարին ծեծկըվելով անցուցերէ (1), բայց քըշեր գիմացերէ. վասն զի երբոր ուրիշ տէրութեան մը իրենց գալչելու ըլլայ, շուտ մը մէկ հոգի մէկ սիրտ կըլլան, չըլլայ թէ իրենց ազգին՝ իրենց տէրութեան վնաս մը ըլլայ. եւ գիտնալով որ ազգին վնասը ամէնուն կըլլայ՝ իրենց մէջի տարաձայնութիւնը մէկդի են ձգեր ։ Նշանաւոր եղան այս բանիս մէջ հռոմայեցիք, որ թէպէտ երկար ժամանակ իրարու մէջ մեծ տարաձայնութիւն ունեցան, ազնուականները վարի ժողովրդոց դէմ ինչ բաներ ըրին. մինչեւ շատ անգամ արիւն ու կռիւ հանդիպեցաւ. բայց երբ օտար թշնամի մը վրանին կուգար, կըմոռնային իրենց վէճը, ամէնը մէկ սիրտ մէկ հոգի կըլլային, ամէն հնարք կընէին՝ մինչեւ որ թշնամին վանտեն հեռացընեն իրենց երկրէն ։ Նաեւ կըլլար որ բոլորովին իրենց տակը կառնէին թշնամին. անանկ որ երբ օտարները կարծէին թէ հիմա կըքակվին կըցրվին հռոմայեցիք, անոնք նոր նոր թագաւորութիւններ իրենց իշխանութեան տակը կառնէին ։ Ասիայի մէջնալ պարսիկը զարմանալի է, որոնց մէջը թէպէտ խռովութիւն ամբոխութեն (արպէտէ) շատ, անկէց հետեւեալ կոտորած ու ջարդ, իր երկիրնալ չորս դիացէն ուրիշ տէրութեց հետ

(1) Տես 1816 Եղանակին մէջ. թղթ. 206.

կացած. բայց սաստիկ ըլլալով նեղմանոց կը քշէ. անանկ որ հիմա աշխարհքիս վրայ պարսից տէրութիւն է՝ ամենէն հին տէրութիւն որ մնացեր է. մէկալ հին տէրութիւնները մարեր գացեր են. սարսափանեայք, քաղդէացիք, եգիպտացիք, մակեդոնացիք, հռոմայեցիք, ասոնք կայսրութիւն ունեցան, ամմէնն ալ ընկան ոչնչացան. սաստիկ արշաւանաց, մողոլաց, մարաց են. Թագաւորութիւնները ամէնն ալ վերջացան: Բայց ինչ բնութիւն է պարսից բնութիւնը՝ որ կիւրոսէն սկսեալ 536 տարի քանի՛ն առաջ ինչվան հիմա կը քշէ. օտար տէրութեն քիչ ժամանակ կեցաւ վրանին իշխել. իրենք նորէն ոտք ելան, իրենց ազատութիւնը չեկորսուցին: Պարսիցմէ հին միայն չինումաչինն է, որ հնուցմէ ալէկ կրթութիւն, ալէկ խելք ունենալով մնացեր են ինչվան հիմա:

Պտուղ:

Որչափ գիտելիքներ սորվեցընելով՝ ընդհանուր պատմութիւնը թէ առանձին մարդու վրայ, և թէ տէրութեանց վրայ, կարդացողը թէ որ մտմտալով կարդայ, ինչպէս որ հոս ցըցուցինք, առաջ մէկ խելք մը կըսորվի, որ տէրութեանց քրածներուն վրայ նայելով առանձին մարդ մը իրեն վրայ կրնայ դարձընել. իրեն բարի պտուղ հանել օրինակ առնելով: Վասն զի թէպէտ ընդհանուր պատմութիւնը աւելի թագաւորութեանց վրայ կըպըտըտի, բայց ամէն մէկ թագաւորութիւն անանկ է բարոյական կառավարութեան մէջ ինչպէս ամէն մէկ տուն: (1)

---

(1) Աշխարհս ու ամէն մարդու ալէկ նմանութիւնը՝ հին հեղինակաց խօսքերով:

Օգոստինոս. Բ. ղբ.: Տունն է կարգաւորեալ. ուր այրն հրամայէ, և կինն հպատակէ. և մարդն է

Թէ որ կըկարդաս որ՝ Թագաւորութեան մը մէկ մարդու պատճառով եղած իր աւըրուիլը կամ շահըւիլը. սանկ իմացիր որ՝ մէկ տուն մը մէկ մարդու պատճառով կըլլայ որ կամ կաւրուի, կամ կը-շինուի։ Թէ որ կարդաս որ՝ Թագաւորները երկիր շատցընելով, պարապ տեղը պատերազմելով, խօսքերնին քալցընել ուզելով՝ հանգստութիւն չեն գտած, սանկ գիտցիր որ՝ մէկ տուն մը՝ մէկ մարդ մը՝ իր ըստակը շատցընելու հետ եղող, պարապ տեղը կըռուող, վիճող, խօսքը քալցընել ուզող՝ չիկրնար հանգստութիւն գտնալ, շատ վնաս կուտայ իր տանը։ Թէ որ կըկարդաս որ՝ բոլորովին կնիկ մարդու յանձնելով Թագաւորութեան կառավարութիւնը՝ աւըրուեր է ան Թագաւորութիւնը, սանկ մէկ տուն մը բոլորովին կնկան ձեռքով գտնալու ըլլայ. մարդը

---

կարգաւորեալ, ուր հոգին հրամայէ, և մարմինն ծառայէ։

Նոյնն. սաղ. ճծը։ Որ միանգամ նուաճեալ ունի զիւր մարմին, և ոչ Թոյլ տայ հոգւոյ իւրում այլայլել կրիւք, այլ տնտեսէ օրինօք, այնպիսին Թագաւորական իմն իշխանութեամբ բարւոք վարելով զանձն, Թագաւոր կոչի, զի գիտաց Թագաւորել 'ի վերայ անձին, և տիրել ինքնիշխանութեամբ, ոչ 'ի գերութիւն վարի մեղաց, և ոչ գահավէժ անկանի 'ի մոլութիւնս։

Գրիգոր Ա͞ծաբան. 'Ի [illegible]։ Ստուգապէս արհեստ արհեստից, և ուսումն ուսմանց ինձ երևի՝ գիտել հովուել զմարդիկ, որ են անշուշտ 'ի մէջ ամենայն կենդանեաց առաւել զանազանեալ բարուք, և տարորոշեալ կամօք։

Աւրելիոս։ Չիք ինչ չար քան զանհնազանդութիւն. զի չէ մարթ անքոյթ կալ մարդկան, ուր ոչ ոք է վերադոյն։ Իշխանն ոչ այնչափ իմաստուն պիտի, որչափ բարեգութ. և հպատակքն ոչ միայն բարեկիրք, այլև սիրեցողք իշխանաց։ Պարտ է խնամ ունել և իւրաքանչիւր հասակի. մանկունք 'ի դիր և 'ի հրահանգս կրթեսցին. երիտասարդք՝ կար-

չիկրնայ իր մարդկութիւնը ընելու, շատ հեղ կավրըվի ան տունը։

Կըտեսնաս որ՝ մէկ տէրութիւն մը կըդիմանայ, քանի որ արդարութիւնը աղէկ բանէր կերթայ, դատաւորները կաշառք չեն առներ, դատաստաններն օրինացը կեօրէ կըդատեն, բայց երբոր դատաստանի մէջ արդարութիւնը ավրեն, ան տէրութիւննալ կամ կըջնջըվի, կամ ջնջըվելու հիմը կըձգէ։ Ասանկալ մէկ տանը վրայ իմացիր որ՝ արդարութիւնը բարեպաշտութիւնը երբոր մէկդի թողու չիբռնէ, կավրըվի. իրեն հօրենական բռնած հին ճամփան փոխէ, հարուստալ ըլլայ՝ կոչնչանայ։ Կըկարդաս եւրոպայի թագաւորներուն վրայ որ կըջանան կամ քովի դրացի թագաւորներէն՝ կամ հեռուներէն՝ մէյմէկ բարեկամ ունենալ, անոր համար դաշնակից կըլլան իրարու օգնելու, որպէս զի երբոր մէկ տէրութիւն մը իրեն դէմ ելլայ, կռնակ ունենան, որ է գովելու խելք։ Հիմա դունալ անկէց խելք առվէ. թէպէտ դուն մէկ առանձին անհաս մարդ մընես, բայց միշտ թշնամի կրնաս ունենալ քեզի, մա-

---

դի և կանոնի քաղաքականութեան հետամուտք լինիցին. որք կատարեալք՝ գործառնութեանց և հասարակաց շինութեանց պարապեսցին, ծերք 'ի խորհել, 'ի դատել, և 'ի խորհրդակցել պերդերեսցին։ 'Ի լինել այսմ՝ մանկունք ոչ լինին տղայամիտք, և ո՛չ երիտասարդք՝ մանկաբարոյք՝ և ո՛չ որք կատարեալք՝ երիտասարդական ոգւով, և ո՛չ ծերք՝ աղճատեալք։ Առ այսոքիւք՝ պէտք են սովորել, զի անդստին 'ի տղայ տիոց կերակուր 'ի սնունդ՝ չափով և օրինօք լինիցի. զի կարգ և կանոն յամենայնի բերեն զվայելչութիւն և զօգտութիւն. և ընդ հակառակն՝ անվայելուչն է նաև վնասակար։

Սոկրատ. յորդոր։ Այն թագաւորութիւն դիւրաւ յաւերժանայ, յորում ոչ շատ զօրանայ ցանկութիւն մարմնոյ և ընչից։

Քսենոփոն։ Քաջ իշխան լինի, որ քաջ տանուտէրն

նաւանդ հիմակվան տեղը՝ որ եղբայրսիրութիւնը վերցըվերէ, կարօտ ես ուրիշի օգնականութեան. ա-նանկէնէ, ջանա բարեկամ վաստըկիլ, որպէս զի պէտք ըլլալու օրերը քեզի օգնեն, կռնակ կենան. մի նմա-նիր անոր՝ որ ամմէնուն հետ հակառակութեամբ խըռ-ռովութեամբ վարվելով, ամմէնուն թշնամի ըրերէ իրեն, գլուխը բան մը գալու ըլլայ, իրեն գէշ օրերը մէկ բարեկամ մը չիկրնար գտնալ օգնութեան ուղելու: Ասանկ ամմէն մէկ թագաւորութեան վարքը՝ ինք մէյ մէկ մարդու վարք են, դուն թէ որ մտածական ը-նելով կարդաս, անկէց քեզի՝ քու տանդ խրատ հա-նես, օրինակ առնես, ան տանը կարդալը՝ բաց 'ի զուարճութիւն.ըներելէն, շատ շահաւոր կըլլայ քե-զի, ու քու զաւկըներուդ:

Երկրորդ՝ մէկ ուրիշ խելք մընալ կըսարմի մարդս, որ մարգարէի պէս առաջուց գուշակօղ կըլլայ. ետքի ըլլալու բաները՝ չեղած կըզուրցէ: Պողիբիոս հելլէ-նացի ազգաւ հին ատենները, շատ վարժ էր պատ-մութիւններու ու փիլիսոփայական մտածութիւննե-

---

իցէ զի գործ երկոցունցն է՝ 'ի հպատակութեան պահել զիւրսն, և իւրաքանչիւրոց զայն հրամայել զոր կարէ գք առնել. զչարսն պատժել, զբարիսն պատուել: Գործակիցս և օգնականս ստանալ. պա-հել զիւր իւր զգուշութեամբ: Սովիմբք ձրիւք Ա-գամեմնոն՝ հովիւ ժողովրդեան կոչեցաւ:

Նոյնն: Հերոն սիկիլիացի՝ առ այն, որ երանէր տայր նմա, որպէս թէ թագաւոր գոլով՝ ընու զա-մենայն հաճոյս իւր, բազում իրօք յայտնի կացոյց, թէ առաւել կատարին հաճոյք առն ռամկականի քան թագաւորի, 'ի կերակուրս, 'ի զբօսանս, և յամե-նայն հեշտալիս կենցաղոյս:

Պլուտարքոս: Դիոնեսիոս փոքր հարցեալ յումեմնէ, թէ զի՞ է՝ զի հայր քո դիւրաւ 'ի ձեռս եբեր զիշ-խանութիւն սիրակուսայ և թագաւորեաց, իսկ դու որդի թագաւորի գոլով և ժառանգ թագաւո-

րու. գրեց իրեն գրքին մէջը, թէ ժամանակ պիտի գայ, հռոմայեցւոց հասարակապետութիւնը միապետութիւն պիտի ըլլայ. ինչպէս որ գրեց՝ անանկ կատարեցաւ հարիւր յիսուն տարի ետքը։ Անցած դարու հեղինակմընալ մարգարէ չէր, բայց շատ պատմութիւն կարդացող էր. ասիկայ իր գրքերուն մէջը առաջուց գուշակեց ինչ որ Ֆրանսզները մեր օրերը ըրին, մանաւանդ Իգալիային վրայ։ Երկրորդ Ֆետերիքոս պրուշին Թագաւորը՝ պատմութիւնները շատ կարդացող ըլլալով գուշակեց որ՝ թէպէտ չորս հինգ թագաւոր մէկ էին եղած իրեն դէմ, բայց այսչափ թագաւորներ մէկ տեղ չէին կրնար միաբանիլ. աս գուշակելը թէ որչափ օգտակար եղաւ իրեն՝ պիտոր կարդաս աս գրքիս մէջը. առեն առեն թէպէտ կըկոտրըվէր իր զօրքը, բայց ինքը իր սիրտը չէր կոտրեր, չէր յուսահատեր, անով վ̅ր կելլար։ Ֆրանսայէն եպիսկոպոսներնալ գրքեր կարդալով 1773 գուշակեցին, թէ ինչպէս Ֆրանսայի թագաւորնալ ու իրեն ցեղնալ պիտոր մեռցընէն իրենց

---

րութեան՝ կորուսեր զիշխանութիւնդ, եա պատասխանի. վասն զի հայրն իմ յայնժամ թագաւորեաց, յորժամ ատելի էր ռամկապետութիւն. իսկ ես յայնժամ թագաւորեցի, յորժամ տիրեալ էր նախանձ ընդդէմ թագաւորի։ Հայրն իմ եթող ինձ զթագաւորութիւն, այլ ո՛չ զբախտ. ո՛չ ամենայն ամենայնի յաջողէ։

Նոյնն։ Յասել ուրումն ցղեոնիդաս, բաց 'ի թագաւոր գոլոյդ՝ ոչ ինչ իրօք առաւելուս քան զմեզ. նա ես պատասխանի. եթէ ոչ լինէի լաւագոյն քան զձեզ, ոչ լինէի ձեր թագաւոր (ընտրութեամբ ձերով)։

Նոյնն։ Սոկրատ, (յորմէ ուսեալ և արիստոն,) իբրև լուաւ՝ զի ոմն հարցանէր, թէ զի՞նչ արժան է առն թագաւորի՝ առնել. և ոմն պատասխանէր, բարեկամաց բարիս առնել, և թշնամեաց՝ չարիս.

ազգին անհաւատանքները, որ 21 տարիէն ետև 1793 կատարվեցաւ :

Գտնելով թէ որ սաստիկ մտածելով կարգած՝ ինչպէս որ վերը ցըցուցի. շատ բանի վրայ առաջուցմէ կը գուշակեմ. և ինչպէս գուշակօղ չըլլամ որ՝ արդէն քուկին ու քու մտիկներուդ ընելու գործքերու մէջ ամմէն օր կընես աս գուշակութիւնները. բայց ամմէն գուշակութիւնները՝ ճանաչումները՝ քեզի պատմութինը սորվեցուցեր է : Մարդս քանի որ մնծնայ՝ իր վարմունքը կըկատարելագործի, կատարելագործօղը իր տեսած ու լսած գիտուածները են, որ մէյմէկ պատմութին են. և իրաւ կըտեսնաս որ ամմէն բանի մէջ քառսուն յիսուն տարվան մարդուն կանոն ու առաջնորդ՝ իր աչքի տեսածները ու լսածները են. ինչ գայ գլուխը՝ իր աչքի տեսած կամ լսած գիտուածները միտքը կըբերէ. անոնցմով դատաստան կըկտրէ մտքին մէջը թէ ինչպէս պէտք է ընել հիմա. ասիկայ մէկ գիտութիւնմընէ, որ ամմէննալ պզտիկուց կըսկըսին, քիչքիչ կըսորվին, որը շատ որը կիսատ, իրենց խելք բանեցընելուն կեօրէ. վարմունք սորվեցընելու համար մէկ ուրիշ գի-

---

ինքն 'ի վերայ էած. քանի՞ ես լաւ իցէ՝ ով գու, բարեկամաց բարիս առնել, և զթշնամիս՝ բարեկամս առնել :

Լայէրփիոս : Լուեալ սողոնի՝ զի ոմանք չարաչար բամբասէին զինքն, ասէ. 'ի տնտեսութեն իրաց մեծամեծաց դժուարին է հաճոյ լինել ամենեցուն. զի որ բազմաց իշխէ, հարկաւ ոչ սակաւուց անհաճոյ լինի :

Սոփոքլէս : Քսենոփոն ասէր. պանծալի ես է թագաւորի՝ բազում յիշատակս թողուլ բարերարութեանց, քան յաղթանակաց :

Կատոն. Երէց : Տեսուչն տիեզերաց ած 'ի միասին կացոյց զերկուս զայսոսիկ, ատելութիւն և թագաւորութիւն. մինչ զի որ յոյժ երկնչի յատելի լինելոյ, ոչ գիտէ թագաւորել :

տութիւն մը չունինք մենք որ ասոր տեղը լեցընէ։ Երբոր մէկը աղքատութէ նոր կըհարստանայ, դուն կըգուշակես որ՝ անիկայ շատ պիտոր հըպարտանայ, իրեն ճանչւորներնալ պիտոր չիճանչնայ, քամահրէ, և իրաւ անանկ կըլլայ. վասն զի շատ պատմութիւներ լսերես, կամ նոյն դիպուածները դունալ տեսերես ատենօք, հիմա մտքիդ մէջը նոյն տեսածներուդ պատմութիւնը տըպաւորված ըլլալով, ան պատմութիւններէն կընես աս գուշակութիւնը։ Երբոր մէկը պաշտօնի (մանսուպի) մը վրայ կելլայ՝ կընայիս առաջ ադգը՝ քաղաքը՝ տանը՝ են, անկէց մէկին վրայ կըգուշակես որ՝ աս մարդը իր ադգականները պիտոր մեծցընէ, իր ադգինալ շատ օգտակար ըլնէ. մէկալին վրայալ կըգուշակես որ՝ անիկայ ոչ իր մօտիկներուն, ոչ իր ադգին մէկ օգուտ մը չընէ պիտոր, ամմէննալ քու ըսածիդ պէս կելլայ. բայց աս գուշակութիւնները քեզի պատմութիւնը սորվեցուց կամ գըրքերու մէջ կարդալով, և կամ քու աչքովդ տեսած ըլլալով նման դիպուածները, որ մտքիդ մէջը պահած պատմութիւն մընէին եղած։ Այսանկալ կըգուշակես որ՝ ան մարդը բարերարութիւն երախտիք ըրավ, առաջ քաշեց մէկը. բայց բարիք տեսնօղը չարիք պիտոր հատուցանէ անոր. ըստակը ան մարդուն տըրվավ, բայց ըստակը պիտոր կորսնցընէ, նոր ծառայ մը առավ, բայց ան ծառան պիտոր չիկենայ, մանաւանդ վնաս պիտոր բերէ. շատ ուրախութիւն ընօղները պիտոր լան, երկուքը չափէն աւելի սէր ունին իրարու վրայ, ետքը մէկըզմէկ պիտոր ատեն։ Այսօր տարիէ՝ երկու տարիէ ետև ըսածներուդ պէս կելլան. դունալ քու խելքիդ կըհաւնիս, ինչպէս առաջ գուշակեցի՝ անանկ խօսքս ելավ ըսելով. բայց ասոնք՝ ու ասոր նման գուշակութիւնները քու խելքըդ չէր, հապա քու լսած կամ տեսած դիպուածներն էին, որ ատեն անցնելէն ետև կըլլան պատմութէ, ան պատմութիւնները էին՝ որ ադգին, կամ մարդուն ըմտու-

թիւնը նայելով, տանենին պարագայները մտածելով, գուշակել ալվին քեզի ։

Ասանկ մեր ամէն օրվան կենցաղավարութեան մէջ ինչ որ կըխօսինք, ինչ որ կըճանչնանք, կամ կըընենք, կամ կըզգուշանանք, ամէն ան ճանաչողութիւնները լաւ տեսած պատմութիւններէ ունինք. չէնէ մէկ մարդ մը բան մը չիլսէ, բան մը չիտեսնայ մարդկային գործողութեանց վրայ, անանկ մարդը կենցաղավարութիւն չիկրնար սորվիլ, շատ փորձանքներու կուգայ, ամէն քովինները զինքը կըխան թալլել։ Ինչէն է որ՝ մէկ մարդ մը մէկալ մարդուն վրայ խոհեմ է. ասիկայ կըզգուշանայ ան բանին մէջ խառնըվելու, մէկալը չըզգուշանար, կըմտնայ, փորձանքի կուգայ. պատճառը իրեն տեսած կամ լսած գիպուածները են՝ որ առաջ եղան. միտքը պահելով պատմութեան պէս եղերեն. անոնք մտածելով՝ փորձանքին գալը կըգուշակէ, կըզգուշանայ. մէկալը կամ չէ տեսած չէ լսած անանկ գիպուածներ՝ ըսել է անանկ պատմութիւններ, կամ թէ տեսեր լսերէնէ չիմտմըտար վրան, չիգուշակեր, կըխառնըվի, փորձանքի մէջ կիյնայ ։

Աս գիտնալով՝ մի սպասեր որ դուն անձամբ փորձը առնես, ետքը իմանաս զգուշանաս. կեանքդ կարճ է, ինչվան որ ինքիրմէդ փորձը առնես հասկընաս, մեռնելդ վրայ կըհասնի, երբ պիտոր հանգիստ կեանք վայելես. հապա ուրիշներուն փորձը լաւ հասկըցիր որ պատմութիւնը քեզի կըսորվեցընէ. ուրիշներուն փորձովը վնասովը քու շահդ փնտռէ. ան ատենը որչափ աղէկ կըլլայ քեզի։ Վաթսուն տարվան ծեր մը քսան տարվան երիտասարդէն շատ աւելի բան գիտէ, որովհետեւ շատ պատմութիւն ունի միտքը ժողվըված. թէ որ քու գլուխդ բան մը գալու ըլլայ՝ խորհուրդ հարցընել ծերերէն քանի խելացութիւն կըլլայ, անոր փորձովը թէ որ ընելու բան է՝ կըընես, թէ որ ետ կենալու բան է՝ ետ կըկենաս, վնաս չես քաշեր ։ Հիմա որչափ աւելի աղէկ կըլ-

լայ մէկ ծեր մը գըտնալ 100 տարվան, որուն գըլուխը աւելի բան եկած ըլլալով, կամ տեսած ըլլալով՝ աւելի բան գիտէ. հապա մէկ ծեր մը գտնուս 200, 600 տարվան, որչափ աւելի բան քեզի կըսորվեցընէ : Այսանկ է ահա ընդհանուր պատմութեն գիրքը, որ 100, 600, 1000 տարվան ծերի մը պէս քեզի կըպատմէ. քու առջիդ կենդանի պատկերով կըցըցընէ ինչ եկավ քենէ առաջ մարդիկներուն գլուխը, դուն ալ թէ որ խելքով կարդաս, ողէկին կըհետեւիս. գէշէն ետ կըկենաս :

Ասկէց զատ մէկ ընդարձակ դուշակութիւն մը կըսորվեցընէ քեզի աշխարհամար ընդհանուր պատմութիւնը, որ ամմէն ազգի՝ ամմէն ատենի՝ ամմէն կերպ պարագայներու վրայ բան կիմացընէ, կարթընցընէ. որոնք թէ որ մտադրութը̄ կարդալու ըլլաս, մեծ բաներու վրայ, ազգային աշխարհամար գիպուածներու վրայ՝ կընաս դուշակութիւն ընել ազգաց վրայ, քաղաքըներու վրայ, անհատ մարդիկներու վրայ. զոր օրինակ, խովաթին բնութիւնը՝ ըրածը՝ լսելով կըդուշակես որ՝ ոչ երբէք յատուկ թագաւորութիւն պիտոր ունենան, թէեւ իրենք մարմ̃ով քաջ են : Վերջապէս բոլոր աշխըրքիս պատմութենը քեզի կըսորվեցնէ թէ օրմը յայտնութեան ԺԹ. և Ի. գլ. գրածը պիտոր կատարվի, աշխըրքիս ետքը լըմընայ (1) : Ասանկալ զանազան գիպուածներու վրայ դուշակութիւններ կընես՝ որ ըսածիդ պէս կելլան. օրինակի համար՝ երբոր աշխըրհիս մէջ կըշատնայ հարստութիւնը, մէկալ դիւացի կեցած աղքատները ոտք կելլան կըկողոպտեն. երբոր հանդըրտութենը կըշատնայ ու երկան կըքշէ, մէկ փոթորիկ

---

(1) Օյանտըմ դուպի խալֆէթլէն,
պու տիւնեայը դաթըր կէօրտիւմ :
Այը այտան, կիւնիւ կիւնաէն,
եըլը եըլտան պէթէր կէօրտիւմ :

մը՝ մէկ բանաւոր մը կըլլայ, որ ան ամմէն հանդա-
տուԹիւնը տակնուվրայ կընէ ։

Ասանկ կարդալով ընդհանուր պատմուԹիւնը, կտոր կտոր դիպուածներէն մէկ բոլոր մը կըշինվի մտքիդ մէջը առանց քու իմանալուդ, որ մէկ վարպետի մը պէս ամմէն քաղաքական դիպուածներու մէջ քեզի շիտակը կըցըցընէ, առաջնորդ կըլլայ, քեզ կըկա-ռավարէ Թէ աս բանս՝ աս կերպ ան կերպ պիտոր լմննայ․ վասն զի հարիւր՝ երկու հարիւր տարի ա-ռաջնալ ասոր նման բան եղավ որ անանկ լմնցաւ ։ վասն զի մարդուս մէկ գործքը մէկալ գործքին ինչ-պէս ըլլալը կըյայտնէ ։ Քեզի մէկ լեզու մը կուտայ, որ ամմէն խօսակցուԹէց մէջ խօսքդ մտիկ գնելու կըլլայ․ վասն զի ինչ զուրցելու ըլլան ուրիշները՝ դուն ամմէն դիպուածին օրինակը միտքդ կըբերես, կըյիշատակես․ անկէց կիմանաս որ աս բանդ առաջ չերԹար, մէկալը առաջ կերԹայ․ և ինչպէս կըսես՝ իրաւ գործքովալ անանկ կըլլայ ։ Մտիկ դնողները քու վրադ կըզարմանան, քեզ մարդարէ կըսեպեն, բայց քեզ մարդարէ ընել տուողը եղավ պատմու-Թիւը, որ նման դիպուածները լսել տալով յայտնի ըրավ քեզի․ դուն ալ փորձով օրինակ բերելով կը-ցըցընես որ՝ հին ատեններ երկու իրեք հեղ աս բանդ սկսերեն, բայց առաջ չէ դացեր ։

# Երկրորդ օգուտ պատմութեան։

Երկրորդ օգուտը Մխիթարանքն է ըսինք, որ երկու կերպով կըմխիթարէ․ մէյմը՝ զանազան դիպուածներ պատմելով, զուարճացընելով, ժամանակ անցընելով (էյլէնտիրմիշ ընելով) կըմխիթարէ։ Երբոր քուկին սիրտդ սխմըվի, մէկ զուարճախօս՝ կամ մէկ շատ գիտցող ծեր մը կըփնտռես, քովդ կըկանչես, որ քու ձանձրութեանդ դեղ ըլլայ (էյլէնտիրմիշ ընէ․) անոր հետ խօսակցելէն ետև կըսես որ՝ ինչպէս անցուցի օրս չիմացայ, ամենևին չիմացայ, չձանձրացայ։ Հիմա աս ընդհանուր պատմութեան գիրքը նայէ՝ շատ տարվան ծեր մըն է, քեզի ամենևին ծանրութիւն չիտար, անչափ բանի տեղեկութիւն կուտայ, որ անանկ ծեր, անանկ կարգաւ պարագայներով խօսող մարդ չես կրնար գտնալ․ որչափ ալ ուզես՝ անչափ կըխօսի, երբոր ուզես՝ գիրքը կըգոցես; ան ծերը քովէդ կերթայ։ Ինչպէս ձեռքդ չառնես, չիկարդաս անանկ գիրքը, երթաս զըրախօս (լաֆազան) մարդու հետ խօսաթես, ուսկից բան մը չես կրնար սորվիլ, որ քեզի ծանրութիւնալ կուտայ։

Բայց պատմութիւնը մէկ ուրիշ կերպ մխիթարանք մըն ալ ունի, որ անիկայ կըլլայ իրաւ դեղ նեղութիւն քաշողներուն, հոգ ունեցողներուն․ աս կերպ դեղը խիստ փնտռելու է, խիստ օգտակար է, մանաւանդ հիմակվան տեսնի մարդիկներուն, մանաւանդ տառապօղըցոց։ Ես պատմութիւնը կընմանցընեմ աս օրինակիս, մէկ նեղեալ (տէրտլը) մը կայ որ հինգ նեղութիւն հինգ խաչ ունի վըրան, մարդ մըն ալ չունի՝ որուն բանայ իր սիրտը; զրուցէ պատմէ իր քաշածները, մինակ մէկ խուցի (օտայի) մէջ

մէջը կըկարդաս կուլիէլմոսին վրայ, որ պրուշի Թագաւորին Բ. Ֆրետերիքոսին եղբայրը ըլլալով ինչ լեզի խօսքեր լսեց իր եղբօրմէն. ինչպէս քաշված մնաց առնըլվելէն. հան հնհընուքէն՝ սիրտը գնելէն մեռաւ: Կըկարդաս Բ. կատարինէի մոսկովի Թագուհիին վրայ, որ Թագուհի չեղած՝ օր մը սեղանին վրայ թագմուԹէ աչքին՝ ինչ ծանր նախատական խօսքեր լսեց իր էրկնէն, որ չերփմանալով լալով ելավ սեղանէն:

Կարելի է որ՝ դուն նախանձօղներ ունիս, սիրտդ կըմրմռայ՝ բան մը չես կրնար ընել որ խայթես: Հոս կըկարդաս որ՝ քէնէ շատ երեւելի մարդիկներ աս վեչտըս քաշերեն, ինչպէս էր Լոյդէ Ֆրանսըվէերուն զօրավարը, Լավատն նեմցէին զօրավարը, որուն նախանձօղները քիչ մնաց պիտոր մեռցընել տային անանկ պխավական մարդը: Կամ Թէ Թշնամիներ ունիս, որ քեզ քամահրել կուտան, մինծին աչքեն կըհանեն. հոս կըկարդաս անոր նմանը քէնէ աւելի փառաւոր Թագաւորներու վրայ: Ակցինաքի Ֆրանսայի Թագուհին՝ Թագաւորին աչքէն ընկած էր թամբատուր խաԹուԹին պատճառով: Մարիամ անգօնիէտգա Ֆրանսայի Թագուհին Ֆրանսը ազգին աչքէն ընկած էր ունւ պատաք խաԹուԹին ու օաըէանս դքսին Թշնամանալովը՝ բամբասելովը, որոնց չարաչար սատկըլուԹիւնը անչափ ըրավ, ինչվան որ գլուխը կտրել տըվավ:

Կարելի է որ՝ կակիծ ունիս մեռելի վրայ, սիրելիներէդ մէկը մեռած ըլլալով: Հոս աւելի կակիծներ կըկարդաս. Թագաւորազուններ, Թագուհիներ ծաղիկ հասակի մէջ մեռնելով ինչ սուգ, ինչ տրտմուԹիւն ձգեցին աբքունեաց (սէրայէն) մէջ, ինչ հարանիքներու ուրախուԹիւներ աւրեցին:

Դուն մէկ գծրաղդ ղօռարաղդ (պաղզաւզղ) մարդ մը կերեւնաս, ինչ աղեկ բան կընես՝ չերեւնար, բանի մը աեղ չանցնիր, մարիկներուդ հաճոյ (մախպուլ)

չըլլար. ուրիշը քենէ քիչ կըշնէ, քիչ կըյոգնի, անոր ըրածը ըսածը հաճոյ կանցնի. անիկայ սիրելի կըլլայ: Իրաւ մեծ խաչ, մեծ սրտադող, եւ հասնիան մարդուն ով որ աս նեղութեան մէջ է. որովհետեւ ամմէն օրվան նեղութն է անիկայ: Բայց ես քեզ կըտեսնամ որ՝ ճար մը գտնալու համար կելլաս կերթաս խմաստակ ու սուտ գուշակողներուն, կըհարցընես որ իմ եազս ուր պիտոր երթայ, գիտնէ ան իմանամ: Ես քեզի կըսեմ մերթար անոնց, մի հարցըներ պարապ տեղը. այլ գնա ընդհանուր պատմութեան վարժէ. հոն մէկ ովկիանոս ծովու մը նման հազարներով կըտեսնաս քու նմաններդ, որ ամենուն քեզի պէս՝ կամ աւելի դժբաղդութեան մէջը ընկեր դացերեն. ան առջեւդ, նայէ անանկներուն վրայ, անոնց վերջը ինչ եղավ, քուկինդալ հարկաւորապէս անանկ կըլլայ, մի տարակուսիր: Կամ թէ մինակ տեսնալովդ՝ լսելովդ՝ որ քենէ աւելի քաշերեն ուրիշները, քուկին խաչդ կըթեթեւնայ:

Կարելի է որ՝ դուն զրպարտըված ես, կըղարմանաս կըճշգըռհաս, աս ինչ մեծ խաչ եկաւ վըրաս կըսես: Կարդա՛ աս գըքիս մէջը փորձութեան մէջի եղած զրպարտութիւնը մեծ մեծ աղնուական մարդիկներուն վրայ, շատորներուն վրայ, չարաչար. պատիժ քաշելներուն վրայ, որին քշեր, որին մեռնիլ: Կարդա՛ Լալլի աշխատասէր զօրապետին զրպարտըվելով մեռնիլը. ան ատենը քուկին զրպարտըվիլդ՝ բայց առանց պատժի մնալդ՝ մէկ պզտիկ բան մը պիտոր երեւնայ. քեզի քաշելը հեշտ (խօլայ) կըլլայ:

Կարելի է որ՝ խիստ նեղութիւն ունիս տունէ տուն բարբարական (տէտիրկին) ըլլալով, տունդ կրակը երելով, տարիներով տուն մը քեզի յարմար չըգտնալով. անիկայ իրաւ մեծ խաչ մընէ: Բայց աս ժթ դարուս պատմութեան մէջ կըկարդաս որ՝ նաեւ կայսրուհին մարիամ Թերեզինան՝ որ քենէ շատ վեր մարդ էր, աս բարբարականութը քաշեց, քաղաք մը չունեցաւ հանգիստ գլուխը խօթելու. դուն անոնք

սա դիս ան դին կըպըտըտիս , բայց գոնէ թշնամիէ վախ չունիս , հալածուիլ չունիս . բայց ան կայարու-հին կըտեսնաս որ ամէն թագաւորներ իրեն թշնամի եղած քաղքէ քաղաք կըհալածեն զինքը . տեղ մը հանգիստ չիկրնար նստիլ . անչափ որ՝ ինքը իրեն մէկ ողջունագրին մէջը կըգրէ լուէնայի դքսուհիին , թէ այսչափ քաղքըներ ունիմ , բայց մէկ քաղաք մը ինծի չիմնաց որ մէջը պահվիմ , նստիմ : Կըկարդաս Ըստվարտեան կարոլոսին հալածական ըլլալը քաղքէ քաղաք , որ ինկլիզի թագաւորին Գ. յակոբոսին տղան էր : Ասանկ ալ դարուս ատքերը կըկարդաս որ Ֆրանսայի խռովութեան ատենը ինչ մեծեր , իշխան-ներ , իշխանուհիներ , եկամուտ ունեցող փափուկ մարդիկներ , միջակ աստիճանի մարդիկներ , մեծ ու պզտիկ , ծեր ու տղայ , էրիկ մարդ , կնիկ մարդ , լեռ-ները փախած որը վայրենի մարդիկներուն պէս ա-տեն մը խոտով ապրեցան , անտառներու մէջ պահ-վեցան , սրտադողնալ հետերնին ըլլալով չըլլայ թէ թշնամիները մեզ գտնան . որը քաղքէ քաղաք փախան ինչպէս Նեմցէստան , լեհաստան , իտալիա , որոնցմէ շատը մինքան տեսանք աղքըտցած , խեղճութեան մէջ ընկած : Նաև Ֆրանսայի թագաւորին եղբայրներ-նալ քաղքէ քաղաք փախած , մէկ տէրութենէ մէ-կալ տէրութեան . ինչպէս Ֆրանսային թագաւորը մեծ սրտադողով փախչելնին՝ Ճամփան բռնվեցաւ , փա-րէզ բերելով սպանվեցաւ : Ահա ասոնք որ կարդաս , քուկին քաշած բարբարականութիւդ որչափ պզտիկ պիտոր երեւնայ , որչափ կըթեթեւնայ :

Դուն մէկը առաջ բերիր , անկէց բարերարութիւն կըյուսայիր , անիկայ բարիք ընելուն տեղը՝ քեզի չա-րիք ըրավ , ապերախտութիւն ( նանքէօրութիւն ) ցըցուց . քեզ տեվէց պաշտօնէդ հանեց , արուեստդ մաստակդ խափանել տըվավ : Կարդա Մօսէիոս Ճիզվիթին առաջ բերելը քառավալհօն՝ որ ետքը ինչ-պէս վէզիր եղավ , բայց լման որ մեծցաւ , իր առաջ

բերող Ճիզվիթը բանտը դնել տըվաւ։ Այանկալ երբոր Լէսդօք առաջ քաշեց պէսդուշէֆը, մուսկովի տէրութեան դիւանադպիր ընել տըվաւ, անիկայ քշել տըվաւ զինքը. որ Եղիսաբեթ Թագուհին արդէն գուշակերէր Լէսդօքին ըսելով, Թէ՝ [illegible] համար։ Բանին ըսած մուսկովին վէզիրնալ խաբելով մը չարիք ըրաւ գրիգոր օռլօֆին, ալէքսի օռլօֆնալ խաբելով մը չարիք ըրաւ մուսկովի Թագաւորին աղջկան որ հռոմ կընստէր։ Եղիսաբեթ փարնէզեանը քշել տըվաւ օսինի իշխանուհին, որ զինքը սպանիայի Թագուհի ընել տըվերէր։ Ասոնք լսելով շատ կըթեթևնան քուկին քաշածներդ։

Հապա ինչ բարերարութիւն ըրերէր քոլոմպոսը չէ Թէ մինակ սպանիացւոց, այլ ամմէն աշխարհի. անանկ մարդը ինչ յանցանք ըրած ըլլար, պէտք էր որ ներէին, ու զինքը վարի աշխարհի Թագաւոր դնէին ինչվան իր մահը, բայց աշխարհ տես ինչ ապերախտ է որ՝ ասանկ մեծ մարդը բանտի մէջ, երկաթներու մէջ մեռցընել տըվաւ։ Հին ատենը մէկ Ներսէս մեծն ըսւած որ անչափ բարիք ըրեր էր հայոց ազգին ու մասնաւորապէս Պապ Թագաւորին՝ որ զինքը յունաց կայսեր ձեռնէն ազատելով, հայոց ազգին վրայ Թագաւոր դնել տուաւ։ Բայց ինքը Թագաւորը փոխանակ Ճանչնալու առ իրեն եղած մեծ երախտիքը, չարաչար ապերախտ գըտնըվելով՝ դեղով (զէհիրով) իր ասանկ մեծ բարերարը մեռցնել տըվաւ։ (1) Կարելի է որ դու մէկուն ըստակ ես տըվեր, քուկին ըստակդ անիկայ կուտէ, չիտար, կամ տեղը սուտ (խալպ) ըստակ, ու անշահ ապրանք կուտայ։ Աս բանիս վրայով հոս կըկարդաս ամբողջ աքսօնեային քաշածները պտուշին ձեռքէն։

---

(1) Տես Ազգասէր. Թղթ. 212։

Ասանկաւ կարելի է որ մեծ էիր, հարուստ էիր, ընկար մեծութէդ, հարստութէդ, աղքատութեամբ կըտանջըվիս, քշված եղար կամ բանտի մէջ ընկար, սոր վրայ կըննեղիս, յուսահատութեն մէջ կիյնաս ։ Աս գրքիս մէջը պիտոր կարդաս ինչ մեծեր, ինչ թագաւորներ, իշխաններ, չէ թէ միայն զրկըվեցան իրենց թագաւորութէ, իշխանութէ, հապա բանտերու մէջ անցուցին իրենց կեանքը խեղճ ապրելով ։ Ֆրանսայի խռովութեն ատենը պիտոր կարդաս, թէ ինչպէս անչափ հարուստներ իրենց ամէն ապրանքնին ձգեցին, օտար երկիրներ գացին, աղքըտցան, մուրացկան եղան. ան ատենը իրաւ քաղկին աղքատութիւնդ թեթև պիտոր երևնայ ։

Ասանկ շատ օրինակներ կան՝ որ հոս յիշելը կըձանձրացընէ. պատմութեան գրքին մէջը տեղնիտեղը կըկարդաս, կըմխիթարվիս, ինչպէս թէ մեկ օգտակար դեղ մը առած ըլլայիր ։

## Երրորդ օգուտ պատմութեան։

Բարոյական խրատ հանելն է ըսինք երրորդ օգուտը. որ ամենէն բանէն հարկաւոր է մարդուս. վասն զի ինչպէս որ մէկ դիհացէն ողջութիւնը է հիմն (թէմէլ) ամէն բանի, ասանկալ մէկալ դիհացէն խաղաղութիւնը հանդարտութիւնը է հիմն ամէն աղէկութեան որ մարդս կրնայ վայելել աս աշխարհիս մէջ. աս բանս կըսորվեցընէ աղէկ խրատ տուող բարոյական գիրքը։ Բայց պատմութեան խրատները մէկ յատկութիւն մը ունի՝ որով կըտարբերի ամէն ուրիշ խրատական կամ բարոյական գրքերէն. աս է որ՝ քեզ կըխրատէ առանց խրատելու, կըպատուիրէ առանց պատուէրան տալու. ինչու որ երբ պատմութիւն կըդնէ և ոչ խրատ։ Քու առջևդ կանցընէ չարագործ մարդիկներուն վարքը, ըրածնին պատմելով, որ դուն անոնք տեսնաս՝ սոսկաս, գանիս, ինքիրմէդ զգուշանաս։ Քու առջևդ կանցընէ առաքինի մարդիկներուն վարքը գործքը պատմելով, որ դուն անոնց աղէկութիւնը տեսնալով՝ բաղձաս նմանիլ, սէր ունենաս դունալ անոնց պէս ըլլալու։

Բարոյական խրատական գիրքը շիտկէշիտակ քեզի կըշտկէ իր խրատը, շիտակ քեզ կըյանդիմանէ. ասանկ իրեն յանդիմանութիւն (ազար) լսելը՝ ծանր կուգայ մարդուս. ասոր դէմ պատմութիւնը միշտ ուրիշին պակսութեան վրայ կըխօրաթէ, ուրիշին կըդպչի, ուրիշին պակսութիւնները վար կըզարնէ, կըմեղադրէ. բայց տակէն քեզի է ան խրատը, քեզ կըյանդիմանէ, քեզ կըմեղադրէ. անանկով վրայէն պատմութիւն է, բայց տակէն խրատ. որով պատմութեան խրատը զուարճալի կըլլայ, ու անուշ կըձգէ, իսկ բարոյականին խրատը խիստ կըլլայ ումանց, դժար կըլլայ անոր պահելը։

Այս պատրուակին վրայ հին վարպետները անչափ հոգ ունեցան, որ իրենց խրատները ծանր ու լեղի չերեւնան, այլ անուշ ըմպելու համար, խրատի խօսք զուրցելուն տեղը՝ քովերնէն պատմութիւններ ստեղծեցին. ամէն մէկ կրից խրատին տեղը՝ մարդիկներ կեղծեցին, ան մարդկանց գործքերը ժողովուրդին առջին ցըցուցին. ասոնք եղան երկու տեսակ բանաստեղծութիւն, մէկին անունը դրին Դիւցազներգութիւն, որ քաջ առաքինի մարդուն երեւելի գործքը անուշ զուրցըւածներով առջեւդ կը դնէ, միայն կը պատմէ. բայց ան պատմութիւնը ինքիրեն խրատ ու յորդորակ կըլլայ լսողին, անոր առաքինութիւն հետեւելու: Մէկալին անունը դրին Կատակերգութիւն; որ չար մարդուն գործքը կը պատմէ, թէ իր չարութիւնը ինչ փորձանքներու մէջ ձգեց զինքը, որոնցմէ լսողը ինքիրմէ կը սորվի կը զգուշանայ: Լօքման եթովպացի փիլիսոփան (1) խրատը անուշ ըմպելու համար մէկ ուրիշ կերպ մը պատմութեան հնարեց, որ է առակով կենդանիներուն պատմութիւնը պատմել, եւ ոչ մարդու. հոն ամէն չխօսող անբան անասունք կը խօսին, իրենց կիրքերը կը յայտնեն. միայն մարդս որ խօսող կենդանի է՝ չիխօսիր, լուռ կը կենայ, մտիկ ընելով անբաններէն խրատ կառնէ թէ կիրքերը ինչ կընեն:

Հիմա նայէ որ՝ պատմութ. գիրքն ալ այս ներգործութիւնս ունի՝ ինչ որ բանաստեղծք հնարեցին, որ առանց քեզ խրատելու՝ աղէկ առաքինի մարդիկներուն վարքը աչքիդ առջին դնելով՝ ինքիրեն անուշ կերպով մը քեզ կը յորդորէ, որպէս զի նմանիս անոնց հետեւիս. ասոր դէմ գէշ չարագործ մարդկանց վարքը

---

(1) Ասիկայ էր սողոմոն իմաստունին ատենը, ուսկից կերեւայ որ օրինակ առաւ Եզոբոս; յունաց մէջ ծաւալեց առակախօսութիւնը: Մխիթար Գօշն ալ մեր մէջը մտուց:

ալ ներկայացընելով՝ ինքերնին քեզ կըմատուցընէ՝ որ զգուշանաս ։ Միայն աս է տարբերութիւնը՝ որ բանաստեղծութիւնը սուտ կամ շինծու պատմութիւն աչքիդ առջին կըդնէ՝ որ իրօք եղած չէ. իսկ պատմութիւնը ճշմարիտ գործքեր կըպատմէ՝ որ իրաւցընէ եղերեն. անանկով թէ խրատ ու օրինակ կուտայ բանաստեղծի գրքին պէս, և թէ անցած գացած բաները կըսորվեցընէ, որ բանաստեղծութիւնը չընէր ։

Բարոյական խրատին հետ թէ որչափ կապած է պատմութիւնը՝ անկէց հասկըցիր որ՝ վարդապետները իրենց գրքերուն մէջը խրատը տալէն ետև՝ պատմութեան օրինակներ կըբերեն առաքինութեան կամ մոլութեան վրայ՝ որուն վրայ որ առաջ խօսեցան. կըտեսնաս որ ան պատմութիւնները աւելի օգուտ կընեն կըներգործեն, աւելի ախորժ կուգան կարդացողին, քան թէ իրենց խրատին զօրաւոր խօսքերը ։ Հիմա աս ընդհանուր պատմութիւնը բոլորովին օրինակ է կամ մէկ առաքինութեան, կամ մէկ մոլութեան, ինչ գործողութիւններ որ մէջը կըպատմըվին՝ վերջապէս կամ մէկ առաքինութիւն մը՝ կամ մէկ մոլութիւն մը մէջ կըբերեն. մի զի աս երկուքն են որ մարդուս գործելու կուտան, կըշարժեն ։ Անանկով կըլլայ որ՝ հմուտ կարդացողին բոլորովին օրինակ կըլլայ աս գիրքս առաքինութեան կամ մոլութեան վրայօք. միայն աս է տարբերութիւնը՝ որ խրատական գիրքը կարգաւ կըբերէ օրինակները ամմէն մէկ առաքինութեան կամ մոլութեան վրայ, իսկ ընդհանուր պատմութիւնը կարգ չունի աս բանիս մէջ, այլ անոր կարգը ժամանակն է, գործքին կապակցութիւն է, որ իրարու ետևէ եղերեն ։

Իսկ թէ պատմութեան հետ ալ որչափ կապած է բարոյական խրատը՝ յայանի ցըցուց Պլուտարքոս, որ երևելի զօրապետներուն վարքը պատմելէն ետև՝ ինքը խրատը հանեց, կարդացողին հեշտ (քօլայ) ընկլու-

համար ։ Ամենէն մեկուն վարքը պատմութիւնն նոյն՝ եր-
կուզէին ըրածը երաշու չեա հրաւիրդաւէ, կարդա-
ցողին առջին կըդնէ, թէ որը ինչ բանի մէջ սխա-
լեցաւ, ինչ պակասութիւն ունեցաւ. և որը ինչ բանի
մէջ աղէկութիւն ունեցաւ, երևելի եղաւ։ Անանկ
ընելով, իր պատմութիւնը երևելի մարդկանց վրայ՝
ըլլան եղաւ բարոյական փիլիսոփայութիւն մը զուար-
ճալի օգտակար, որ հիմա ամէնն կրթըլած մարդ կը-
կարդայ փափաքով, որովհետև պատմութիւն է և
միանգամայն խրատ։ Եղաւ կըրաղհայի որ՝ սա պատ-
մութիւն գիրքս ալ քեզի ըլլայ չէ թէ միայն պատմու-
թիւն, հապա իբր բարոյական փիլիսոփայութիւն մը.
կարդաս շահիս. համառ կըսանս մէկ գին բարի
մարդիկներ, օրինակ առնելու պատկերներ. Պենե-
ակեդոսս արքայական պատը, Կարոլոսը, Օռլէանս հայ-
րը, Մարիամ Թերեզիա կայսրուհին, Եւգինեաքի
Ֆրանսայի Թագուհին, եւն. մէկալ գիտցէնք չար մար-
դիկներ, զգուշանալու գործքեր. Քրոմվէլ, Օռ-
լէանս տղան են։ Միայն թէ ես չեմ բաղդատեր
պլուտարքոսին պէս, այլ միայն առջին կըդնեմ, քե-
զի կըյանձնեմ որ դուն բաղդատես, զատորոշես,
և միանգամայն խրատ առնես։

Թէ որ կուզես կըսեն մը ըլլալ, սուրբերուն վարքը
կարդա. թէ որ կուզես գիտուն կարդացող ըլլալ,
գիտուններուն վարքը կարդա, անցած գացած մար-
դիկներուն վարքերը աւելի խրատ կըտան ըլլալ, քան
թէ շատ շիտակ խրատներ։ Ես կըսեմ՝ չկայ անանկ
հարկաւոր մարդու՝ ինչպէս բարոյական փիլիսո-
փայութիւն՝ որ մարդուս հանգստութիւն կըբերէ. մէկալ
գիտութիւնները ան առենը աղէկ կըլլան, երբոր բարոյա-
կանի օգուտ ունենան. չէնէ ինչ օգուտ աղէկ գիտ-
նալ աստղաբաշխութիւն, աստղերուն տեղվանքը, շարժ-
մունքը, եւայլը մեկըղմէկ ջարդել, ինչպէս եղէր ա-
տեններս Ֆրանսայի մէջ եղաւ. ինչ շահ աղէկ գիտ-
նալ կենդանեաց, բուսոց, ձկանց հանգամանքը, բնու-
թիւնը, կարգը, եւայլը մեկմէկու զըկողութեան ընել.

ըստակը՝ յափշտակել, բարերարութեան ընողին, ապերախտութեան ընել, իրարու հետ կռուելով անէտեղէ բարբարական ըլլալ, անհանդիստ ըլլալ, իրար ոչնչացընել ուզել. ասիկայ կըլլայ մէկ տեսակ մը պակասամտութեն ։ Արդ՝ աս բաներս շատերը՝ առջի բանը պիտոր ըլլայ մարդուս, որոնք դի հանգիստ խաղաղ կենանք անոնցմէ. իսկ շահօղը է բարոյական փիլիսոփայութիւնը անչափ հարկաւոր մարդուս. բարոյական փիլիսոփայութեն լսելով ըսեմ կամ առաջնորդը՝ է պատմութիւնը զանազան ազգաց՝ որ ըսել է ընդհանուր պատմութիւնը, ը որուն բարոյականներն ամմէն խօսքը կըլլենայ գրեթէ մէկ ազգին մէկալ ազգին ըրածը մէջ բերելով կամ աղէկ կամ գէշ. աղէկէն օրինակ առնելու համար, գէշէն զգուշանալու համար ։ Ըսալ ահա անոր համար ազգիս կընծայեմ աս ընդհանուր պատմութիւնը, չէ թէ միմիակ անցած դարերը իմանալու համար, հապա նաեւ իրրաց սորվելու ու օրինակ առնելու համար, որով իբր Ճամփայ բացվի բարոյական փիլիսոփայութեն ։

Պատմութիւնը վրայէն կարդացողը անանկ կիմանայ որ՝ մարդիկ են որ ան պատմած գործքերը կընեն, մարդիկ են որ կըծեծկըվին իրար կըխաղաղվին, իրար կըմեռնին, բարեկնին կըյափշտակեն, բայց փիլիսոփայ մը կարդալու ըլլայ՝ պատմութենէ մէջ մարդ չիտեսնար, հապա մարդուն տեղը իր կիրքերը կըտեսնայ, շահասիրութիւնը, թշնամութիւնը, ատելութիւնը, վրէժխնդրութիւնը կըտեսնայ ընօղ անչափ պատերազմները՝ որ արիւններ կըքալցընեն. փառասիրութիւնը՝ խօսքը քալուկ ըլլալը՝ ուրիշէն վեր երեւնալը՝ կամ իր յօժարութիւնը (քէֆը) կըտեսնայ պատճառ անչափ չարիքներու՝ թշուառութիւններու՝ որ մարդիկ մէկզմէկ ձգել կուտան ։

Դուն ալ երբոր աս պատմագիրքը կըկարդաս, մտածէ չէթէ աս մարդը ան մարդը ինչ ըրաւ, հապա հպարտութեն կիրքը, աս անուն մարդով ինչ ըրաւ.

վրէժխնդրութիւն՝ ագահութիւն՝ անգթութիւն կըլլայ ինչ ըլլին այս մարդուն ան մարդուն ձեռքովը, և ինչ կերպ ըլլին. որովհետև կիրքերն են որ մարդուն ընել տային. իսկ մարդը կը տեսնաս որ մէկ գործիք մըն է կիրքերուն: Վրայէն կըկարդաս որ Բ. Փետերիքոս պրուշին թագաւորը ինչ ագահութիւն, անգթութիւն, և ուրիշներուն պարտաւորներ ըրաւ, անոնցմէ ալ ինչ չարիքներ հանեցան, բայց սրտէդ կարդա՛ որ ագահութիւնը՝ անգթութիւնը են, ինչեր ըրին Փետերիքոսին ձեռքովը: Այսօրուան ներհակ վրայէն կըկարդաս որ՝ նոյն Փետերիքոսը արի՝ զգաստ՝ ժուժկալ՝ չափաւոր ըլլալով ինչ աղէկութիւններ ըրաւ, բայց մըտքովդ կարդա՛ որ արիութիւնը՝ զգաստութիւնը՝ ժուժկալութիւնը՝ ինչ աղէկ բաներ ըրին Փետերիքոսին ձեռքովը, որովհետև ամէն մարդկային գործքերը շարժող՝ մարդկային բարի կամ չար կիրքերն են:

Այսինք գէշ կիրքերու մոլութիւններու վրայ՝ կամ առաքինութիւններուն վրայ մտածէ երբոր ամէն մէկ մարդուն ըրածը վարքը կըկարդաս:

Քաղաքական մարդուն մէջ երբ մէկ ուրիշ թագաւորական մարդ մըն ալ կայ նայած, անիկայ ճանչցիր մանաւանդ ընդհանուր պատմութեան մէջ, որ աչքիդ առջին կըբերէ կըցըցընէ երբ մէկ ովկիանոս ծով մը մարդոց. այս ծովուն մէջ կերպ կերպ մարդիկներ աշխարհ եկան; մէկ տեսիլ մը մէկ խաղ մը ցըցուցին դացին. մէկը հպարտութիւն կիրքով կերպ կերպ բաներ ցըցուց. մէկալը նախանձու կիրքով աշխարհ՝ երեց, մէկալը բարկութիւն ու անգթութիւն գործքերով աշխարհ լացուց, իր նմանները ջարդեց. ադոնք շէնքերը՝ որուն վրայ բիւրաւոր մարդիկ ձեռքով աշխատելով՝ մտքերնին յոգնեցընելով՝ հազիւ կըցերէին լմնցընել՝ այս բարկացող մարդը քանի մը օրվան մէջ քակեց ոչնչացուց: Պերսեպոլիս մեծ քաղաքմըներ պարսկաստանի, աղեքսանդր մակեդոնացին իրեն գինովութեան ատենը մէկ գիշերվան մէջ անշահ

Կնկանը խօսքով երեց մոխիր դարձուց։ Բայց ա-սոնք մարդ չէր ընօղը, այլ ինչ ըսեմ մարդուն ան գլխաւոր կիրքերը՝ որ օխտը մահացու մեղքերուն վրայ կըպըտըտին՝ անոնք են որ աշխարհ՝ ավրեցին, իրենց եղբարները՝ ամբաղջ ազգ մը՝ թագաւորութի՛ւ մը՝ անհանդիստ ըրին. մէրը սա կիրքով, մէրը ան կիրքով։ Բիւրաւոր մարդիկներուն մէջ կըգտնաս ան մարդնալ՝ որ քու ունեցած կիրքդ ունեցերէ. դուն ինչ բաներու մէջ որ ընկած՝ անալ ընկերէ։ Միայն քանի մը հոգի կըտեսնաս՝ որ կիրքերնին զսպերին, չիտակ խելքը ինչ կըցըցընէ՝ անոր հե-տեւելով առաքինութեան գործքեր. ըրերին, որոնք եր-կու դաս բաժնելու է, մէկ դաս առաքինեաց՝ որ շատ են, կատարելութեան մը չուննենալնուն համար, իրենք ալ իրենց ալէկուն պահելնուն համար, չեն պատ-մըվիր ինչպէս որ վերը զուրցերինք. կըհայ խիստ քիչվոր ալէկներ, առաքինիներ, որոնց վիճակը կա-ցութիր յայտնի ընել ոըվով, ըլլալով թագաւոր կամ իշխան, քահանայապետ կամ եպիսկոպոս. ա-սանկով պատմածներնուս մէջ առաքինութեան օրինակ-ները քիչ են, իսկ չարերուն օրինակը շատ։

Ամէն մէկ մարդ՝ որ սա պատմագրութեան մէջ կը-պատմըվին՝ մէյ մէկ կենդանի օրինակ են քեզի. չար մարդիկները խրատ պիտոր ըլլան հեռացընելու ան չարութենէ որ գործեցին ու մնաս բերին թէ իրենց՝ և թէ ուրիշներուն. բարի մարդիկները խրատ պիտոր ըլլան քեզի, յորդորեն որ դուն ալ մէկ առաքինութեան կամ բարեգործութեան մը մէջ երեւելի ըլլաս՝ անանկ եղլաս աշխըրքես, թէ սա աշխարհիս մէջ շահաւոր ըլլաս, թէ ան գիւ աշխըրքի մէջ քեզի մեծ ալէկու-թեան վաստըկած ըլլաս, որ յաւիտեան վայելես։

Հոս մէկ մտածելու բանմընալ կայ. ամէն մարդ որ մէյ մէկ կիրքի տակ ընկերեն, մավընին սա է եղեր որ՝ ան կիրքով հանդստութէն հասնին, աւելի հան-գիստ երջանիկ կեանք վարեն, վասն զի սա է ամէն

բանին մէջ մարդուն միտքը վախճանը, միանգամայն կը-տեսնուի որ հանգստութիւն չեն հասած, այլ մանաւանդ իրենց ըրածներով իրենց հանգստութիւնը կորսնցուցերեն, անանկ մեռեր գացերեն ։ Այս բանիս շատ կերպ օրինակները պիտի տեսնաս աս. հարիւր տարվան պատմութեանը մէջ ։

Ինչ տեսիլ, ինչ զարմանալի պատկեր, որ պատմութիւնը ամմէնն ալ մեկ տեղ կը ժողվէ, հարիւր տարին եթէ մեկ տարի մը կընէ, քու աչքիդ առջեւով կանցընէ չար ու բարի մարդիկները մեկ տեղ ։ Ամէն մեկ հարիւր տարին նման կընէ եթէ մեկ նաւու մը, որուն մէջը բիւրաւոր մարդիկ լեցուած ըլլան, բայց ամմէնն ալ ճամփորդ (եօլճի), մէջը աղէկը կայ, գէշը կայ, աս նաւը ծովուն մէջը ծփալով, վեր կելլայ վար կիջնայ, կերպ կերպ ճամփաներ կընէ հովուն փչելուն կեօրէ. ալեկոծութիւն քաշելէն ետեւ՝ վերջապէս ցամաքը կըհասնի, հոն գետինը կըհանէ կըթափէ ան բիւրաւոր մարդիկները ։ Աշխարհիս հարիւր տարին ալ ասոր նման մեկ նաւ մընէ զանազան կիրքերէն ալէկոծեալ, ոմանք վեր կելլան անուանի կըլլան հարստութիւն կամ իշխանութիւն, ոմանք վար կիջնան, բայց վերջապէս աշխարհիս հարիւր տարին լմննալու ատենը՝ ան ամմէն մարդը որ վրան ունէր՝ ինչպէս որ հողէն գետնէն հանեց առաւ, անանկ ալ գետնին հողին մէջը կըձգէ ամմէնը. ետեւէն ուրիշ նաւ մը կելլայ ճամփորդներու, որ ան ալ հարիւր տարի ճամփայ ընելէն ետեւ՝ պիտոր գետինը հանէ՝ մանաւանդ թէ գետնին տակը ձգէ մէջինները. ասանկ կարգաւ կըգան նան հազարաւոր տարիներ ։

Դուն աս ամմէն անցած գացած մարդիկներուն վրայ դատաստան կըկտրես, ու գրած մարդ ըլլալով չետակ կըկտրես, մեղք ըսելով պէտք էր որ ասանկ չընէին ։ Անոնք պատկերի մը պէս անցան գացին. իրենց գործքերը ձգեցին. հիմա դու նայէ ինչ կընես

մէջ եմ․ մի՛ կերթը քեզ տալու սա հարիւր տարիէն աւելի անցընէ․ մոռցէք բարկութիւնը, նախանձը, ծուլութիւնը։ Մենք մինչ տարինք դատաստան կերթարենք հարիւր տարուան մարդիկներուն վրայ, որ դատաւոր չենք, միայն դիտող (սէիրճի) ենք անոնց վրայ, որ եկան ու աշխարհէս երացան, ետքը տակից ելան ան դիր աշխարհ գացին, մարմիններին հողին մէջը պառկած, հոգիներին անդին բուն իրենց դատաւորին առջին ելած, ինչ վճիռ առին, տրդեոց անհասանում յաւիտենականութեան մէջ։ Մեր հարիւր տարինալ կըմնայ, ուրիշ հարիւր տարուան մարդիկներինալ մեր վրայ դատաստան պիտոր կտրեն, անդինալ դատաւորը պիտոր կտրէ։

Երբոր սա տանկ կարդալով պատմութիւնը՝ կըլլայ խրատ առնող գիրք մը առանց խրատելու, կըլլայ մէկ բարոյական գիրք մը, շահաւոր զբօսանք մը՝ որ քեզ կըքալցընէ զանազան դաս մարդկանց մէջ, աշխարհականի, եկեղեցականի, մեծի, պզտիկի, թագաւորներու և հասարակ մարդիկներու մէջ․ քալեցնելովը՝ տեսցընելովը կըզուարճացընէ, միանգամայն շահեցընել կուտայ, քեզ ու քու գործքերդ շտկելու համար՝ որ ամմէնէն շահաւոր բան է։ Աղէ գի թէև մեծ հարստութիւն ունենաս, բայց մէկ մոլութիւն (խույ, սէվտա) մը ունենաս, ինչպէս ըսեմ ըստրկով խաղ խաղալ, կըկորսնցընես ան հարստութիւնը, տանկալ թէ որ անխոհեմութեա՝ բարկութեա՝ նախանձով շարժիս, դուն քեզի շատ վնաս կուտաս․ ատոնց պատկերները՝ օրինակները՝ առջիդ կըդնէ պատմութիւնը, փորձով քեզի կըցըցընէ։

Անանկէնէ կարդամ պատմութիւնը մէյմը քեզի խրատ առնելու համար, մէյմընալ ազգիդ օգուտ բերելու համար․ որովհետև կըտեսնաս որ՝ սա հարիւր տարուան մէջը ամմէն ազգ արթնցերեն․ մարդկութիւն սորվելու ետևէ են եղեր․ դունալ մտածէ որ՝ քանի

մէկ աս կուրութեան մէջը պիտոր մնանք ։ Թէ որ մենծ ես վերակացու ես՝ պարտք ունիս հոգալու որ պակասութիւնները վերցըվին . Թէ որ ծնող ես՝ պարտք ունիս զաւկըներդ նայելու՝ որ գոնէ քիչ մը շատ սորվին , վասն զի ամմէն ազգ իրենց հաստատութիւնը կատարութիւնը ձգեցին , բան սորվելու սէր մտուցին մէջերնին ։

Մի՛ կարծեր որ աս բանս ըստակ չիբերեր . ըստակ բերող հիմը ( թէմէլը ) ան է որ՝ տղաք աղէկ բարոյական սորվի , աղէկ կրթութիւն ունենայ , խելքը բարի բաներու արթըննայ , որ գոնէ աս երկու մոլութիւնը ( խուլը ) չունենայ , այսինքն կամ մախօզ՝ և կամ ծոյլ չըլլայ . որովհետև աս երկու պակասութիւնս հիմա մեր ազգին մէջը երկու ցեց ( կիւվէ ) են եղած , որ ամմէն բանը կապականեն կավրեն . մէկ դիէն մախել՝ երբոր աղէկ վաստակ ունենայ , ըստըկի տէր ըլլայ . մէկալ դիացէն ծուլնալ՝ երբոր վաստակ մը չունենայ ։ Ընդհանուր պատճառնը կարդալով՝ հասկըցիր ուրիշ ազգեր ինչ արի , ինչ ժիր եղերեն, ինչ յոջնիլներ՝ խելք բանեցընելներ կընեն , անանկով ըստըկի տէր կըլլան , ինչ միաբանութիւն , ինչ իրարու օգնել , իրարու եղբայրսիրութիւն ցըցընել , որ հիմն է ըստակ վաստըկելու ։ Աս եղբայրսիրութիւնը միաբանութիւնը էր՝ որ եւրոպացւոց մէջը մեծ մեծ բաժանորդութիւններ ( օւթախութիւններ , քօմբանիաներ ) հանել տըվաւ . մանաւանդ Ֆիլէմէնկին ու Ինկլիզին մէջը . որոնց քօմբանիաները իրենց թագաւորութեան մէջ իբր մէյ մէկ ուրիշ թագաւորութիւններ են ։ Անոնցմէ առաջ աս բանս նեմցէին Հանսէաթիքա ըսված քաղաքները հանեցին , որոնք վաթսուն քաղքի չափ մէկ խօսք ընելով չիտեսնըված օւթախութիւն մը հնարեցին որ աշխարհ զարմացուցին , Ֆիլէմէնկը Ինկլիզը նախանձ շարժեցին , օրինակ առվին ։ Անոնք ինչ մեծարդութիւն , ինչ սէր ու միաբանութիւն են , որոնցմէ ինչ հարստութիւններ վաստըկեցան , որ ընդհանուր

պատմութեան գիրքը քեզի մէկիկ մէկիկ պիտոր պատմէ։

Նոյն թէ որ բարի օրինակ առնելու համար կարդաս, շատ աղէկ խրատներ օրինակներ կրնաս առնել ազգին վրայօք. ինչպէս որ մէկը եղբէն տուն շինելու ըլլայ. բայց թէ որ իրմէ առաջ շինողներուն տները պատրաստ ըլլայ, չէ թէ մինակ տեսնալու զուարճանալու համար, հապա իրեն աղէկ օրինակ կաղապար ( ըէսիմ ) առնելու համար, իրեն աղէկ օրինակներ կընտրայ, մէկին արտաքին ձեւը առնելով, մէկալին ծառայութ դիւրութիւնը ( խօլայութիւնը ), մէկալին խուցերուն աղւորութիւնը եւ այլն. անանկ մարդը թէպէտ ուշ կը շինէ իր տունը, բայց ամենէն աղէկ տուն կ'ըլլայ, ամենուն աղւորութիւնը հոն ժողվըված ըլլալով, պակասութիւնները դուրս ձգած։ Անանկալ պատմութիւնը կարդալը թէ որ բարի օրինակ առնելու մտքով ըլլայ, քեզմէ առաջ եղողալ ամենէն աղէկ շակըռած կընէ. մէկին կանոնով շարժիլը առ, մէկալին խելքը, մէկալին տանը մէջ չափաւորութիւն կենալը, տնտեսութեան բաները կարգաւորելը. իսկ պակասութիւնները՝ որ ամմէն
մէկին վրայ կը տեսնաս՝ դուրս ձգէ։

Մեր ազգը ինչվան որ իր բարոյականը չիշտկէ, մի կարծեր որ հարստութիւն երես տեսնայ, տակեայ շիտակ գուշակութիւն ըսեմ բանէ, վասն զի պատճառ իր աղքատութեան՝ իր բարոյականին պակասութիւնն է. մտիկ ալ չուզեր ընել իրեն խրատ տուող վարպետներին, որ կըջանայ զինքը շտկել։ Գրեթէ ամմէն ազգին մէջ կայ մէյ մէկ կերպ կենցաղակրթութիւն ( բօլիթէքայի ) մը, բայց որչափ գովելի է կենցաղակրթութիւնը այն ազգին՝ որ ընկերին բարիք ընել կը նայի, որչափ տգեղ է այն կենցաղակրթութիւնը՝ որ ընկերին չարիք ընել կը նայի, կամ վար զարնել քամահրել,
որ տմանց մէջը մեծ խելք է սեպված։

Թէ որչափ աղէկ բան է մարդուս կանոնաւոր շար-

ժիլը՝ Է. Ֆէտէրիքոսին պրուշին Թագաւորին օրինակը կըսորվեցընէ, որ մէկ Ֆէտէրիքոս էր, բայց շատ Ֆէտէրիքոսներու գործքեր ըրաւ իր կանոնաւոր շարժելուն համար։ Թէ որչափ շահաւոր բան է ան որ աղէկ խօրաթել գիտէ տեղին ու ատենին կեօրէ, որուն Ճարտասանութեն կըսենք, կըկարդաս օրինակը Մոսկովի Թագուհիին կատարինէին վրայ Թագաւորութեն ատենը, նոյնպէս շվետի Թագաւորին կուստավոսին վրայ Թագաւոր նստելու ատենը. երկուքն ալ մէնծ մէնծ վտանգներու մէջ էին, երբոր ուզեցին իրենցմէ առջի կառավարները ձգել, բայցաձակ իշխանութիւնը իրենք առնել, թէ որ ան լեզուն, ան Ճարտասանութիւնը չունենային, չէին կըրնար խալըսիլ։

Բայց ընդհանուր պատմութենը մէջ որովհետեւ հիմա ամմէնէն առաջ ԺԷ դարուն պատմութիւնը պիտոր գնենք, ատ ԺԷ դարուս մարդիկներուն բնութեանը վրայ մանաւորապէս խօսինք, անոնց բնաւորութը՝ քաղաքական պատմութիւնը՝ ընդհանուր պատկերի մը պէս աչքիդ առջին ցըցընենք։

## Պատկեր Եւրոպական ԺԸ դարուն ։

Աշխարհիս մէջ աշխարհագիրք հաստատակօրէն կըգրանան որ՝ 1000 միլիոն մարդ կայ կենդանի ․ ոմանք որ կըքիչցընեն 800 միլիոն մարդ կըդնեն ․ աս հազար միլիոն մարդիկ 33 տարին անգամ մը կըմեռնին կըփոխվին, անոնց տեղը ուրիշ հազար միլիոն մարդ կուգայ ․ անանկ որ՝ 100 տարվան մէջ իրեք անգամ առջի մարդիկները աշխըրքէս դուրս կելլան, հողին տակը կերթան, անոնց տեղը ուրիշ մարդիկներ կուգան (1) ։ Գանք բարոյականի վրայ, հիմա մտածէ միայն հարիւր տարվան համար ․ ամէն մէկ հարիւր տարին իրեք հազար միլիոն մարդ որ աշխարհ կուգայ, աշխըրքէս կելլայ, ամէն մէկը մէյ մէկ գործք կընեն, կամ բարի, կամ չար ․ բայց մէկին գործքը մէկալին չըլմանիր, վասն զի մարդս իրեն հետ կըկրէ ներսէն մէկ սէր մը մէկ յօժարութիւն մը (հավէս, սէվտա,) կերպ կերպ բաներու վրայ՝ որոնցմով կըվարվի, որոնք ընել կուտան իրեն կերպ կերպ գործքեր, անանկ որ՝ մարդս առեալ իրր կենդանի մը ամէն կենդանեաց մէջ անհանդարտ կենդանի. մընէ աս յօժարութէնց (սէվտաներու) համար, բայց աս է տարբերութիւնը որ՝ ամէն ատեն մէկ չէ իր բերմունքը՝ իր յօժարութիւնը ։ Հիմա

---

(1) Աս բանս հազար միլիոն համրանքին վրայ հասկըցիր, չէ թէ անհատ մարդիկներու վրայ, վասն զի շատ մարդիկ կըլլան որ 33 տարին կանցնին, 40, 50, 100 տարի կապրին, բայց որովհետեւ տղայութեան ատենը շատ մարդ կըմեռնին, նոյնպէս հիւանդութեան ու ծեծի պատճառովը, ասանկով 33 տարին անգամ մը հաշիւ (հիսապ) ըրածիդ պէս, կըգտնաս որ հազար միլիոն մարդը մեռեր գացերէ ։

ինչպէս որ մի և նոյն մարդ երբեմն մէկ բանի՝ երբեմն մէկալ բանի սէր (հաւէս) կըձգէ, ասանկալ ամմէն մարդիկ մէկ տեղ առնըված, ատեն մը աս բանիս՝ ատեն մը ան բանին՝ սէր կըձգեն, իբր թէ մէկ մարդ մը եղած ըլլային: Ասիկայ է որ պատմութիւնները փոխել կուտայ, զանազան պատմութիւններ մէջ կըբերէ. միայն աս կըգտնանք տարբերութիւնը՝ որ մէկ կողմը աշխըրհիս ուրիշ բանի մը վրայ սէր կըձըգէ, մէկալ կողմը ուրիշ բանի մը. մէկ ազգ մը կամ թագաւորութիւն մը հիմա աս բանիս վրայ սէր կըձըգէ, իսկ ուրիշ ազգ մը ան բանին վրայ: Աս բանս մենք մեր աչքովինիս կըտեսնանք մեր ատենին՝ ու մեր կեցած տեղերուն վրայ. հիմակվան մարդիկ ինչ բանի վրայ սէր ձգած են նէ, կըտեսնանք որ մեր պզտիկութէն ատենը ան բանին վրայ չէր սէրէրնին, այլ ուրիշ բաներու վրայ:

Հիմա պատմագրութէն մը մէջ կարդալ, աչքերդ առջին ունենալ ամմէն ատենին մարդիկներուն սէրը, թէ ընդհանրապէս ո՛ր բանի վրայ ձգվերէ, ո՛րչափ ախորժական կըլլայ ու օգտակար գիտնալու. ասանկը կըլլայ մէկ բարոյական պատմութէն մը ան հարիւր տարվան վրայ, որ քաղաքական պատմութենը մէջ ընկղմած խառնըված ըլլալով, կեղվըրայ կարդացող մը աս մտադրութենը չըներ չիհասկըննար. միայն փիլիսոփայ մը՝ որ միտ դնելով կըկարդայ, անիկայ կըմանայ անցած դարուն՝ մէկալ դարուն և այլն. մարդկանց յօժարութիւնը բերմունքը՝ որ ընդհանրապէս ունեցերեն մէկ բանի մէկալ բանի վրայ:

Աս յօժարութիւնը՝ սէրը՝ մենք Ոգի ըսելով իմացընենք, ու հոս ներածութեանը մէջ ժողվըված գնենք, թէ ԺԸ դարուն մէջը մանաւանդ 1750 էն մինչվան 1800 մարդիկ ինչ բաներուն վրայ իրենց սէրը տըվին, և ո՛ր բանէն պաղեցան. ասոնք ետքը բաղդատելու ըլլաս, մէկ հարիւր տարվանը մէկալ հարիւր տարվանին հետ մէկ չէս գտնար, ան բանն որ մարդս ատեն մը մենծ կըսեպէր, կըբաղձար,

վարկում ունէր, եթէ կիյնար, այս Հարիւր տար-ւան մէջ ան ոգիները ան յօժարութիւնները կը-տեսնաս որ ձգեր է, պաղեր է, ուրիշ նոր ոգինէր յօ-ժարութիւններ ունեցեր է ։ Ինչպէս ժիր գարուն սկիզբները Արիոսդօ իդալացի բանաստեղծին գիրքը կըցըցընէ որ ան ատենուան մարդկանց սէրը աւելի ձի հեծնալու վրայ կըպըտըտէր, իսկ ետքերը՝ Դասսօ բա-նաստեղծին գիրքը կըցըցընէ որ՝ ան սէրը անչափ չէկար, ուրիշ բանի վրայ՝ մանաւանդ պատերազմաց քաջագործութեանց վրայ ձգուած էր ։

Թող տուր փոխելը, նաեւ կըզարմանան կըծիծա-ղին հիմակուան մարդիկ առջի հարիւր տարուան մարդ-կանց յօժարութեանը վրայ, թէ ինչպէս սէր ձգած են եղեր անանկ բաներու վրայ, իսկ ան ատենուան մար-դիկներնալ իրենց առջիններուն վրայ ծիծաղերեն․ սանկով գացեր է աշխարհս, սանկով ալ պիտոր երթայ ։ Հիմա հոս մէկ տեղ ժողվըված կարդալով հարիւր տարուան սէրը՝ յօժարութիւնը՝ թէ ինչ բա-ներու վրայ ձգվերեն, ան մանրմունրը գիպուած-ները՝ որ ասս պատմութեանս մէջ առաջ կարդացած կըլլաս, եաքը մտքիդ մէջը մէկ բոլոր մը կըշինես, բարոյական պատկեր մը կըձեւացընես անցած գացած մարդիկներու վրայ, որ կըլլայ քեզի խրատ տըվող վարպետ մը․ կարդալդ ալ չըլլար մինակ հետաքըքրու-թիւն կամ զուարճութիւն մը, այլ շահաւոր պտուղ մը կըհանես ։

Միայն թէ սանկ աւելի եւրոպացոց վրայ պիտոր խմանաս․ որովհետեւ միւս ազգաց պատմութիւնները քիչ գրուած ըլլալով, քիչ տեղեկութիւն ունինք ա-նոնց վրայ ։

## ՈԳԻ շնորհասիրութեան:

Այս ոգին մեզ սորվեցուց է անոր հետ՝ որ կըսենք Անձնասիրութի. (1) ու պօղոս առաքեալը Բ. տիմոթ. Գ: առջի չարութիւնը կըսկսէ ետքի ատենի եկող չար մարդիկներուն վրայ խօսելով, որուն վրայ տես 1815 տարվան Եղանակին մէջ. Թղթ. 33: Իրաւ է որ՝ շնորհասիրութիւնը ամէն ատենի մարդիկներուն անբաժան կիրքն է, բայց հիմակուանը շատ աւելի կըտեսնանք առջի ատեններուն վրայ, նաև մեր պըզ-տիկութեան ատենին հետ բաղդատելով. վասն զի

---

(1) Հին հեղինակներուն խօսքերը՝ անձնասիրութեան և ընկերասիրութեան վրայով:

Արիստոտէլ. բարոյ. Ժ. 13: Անձնասէր ասի, որ զամենայն ինչ առնէ վասն իւր, ուր ուրեք կայցէ ինչ շահ օգտի անձին:

Նոյնն. Ը. 8: Այր բարի պարտի անձնապահ լինել յանձնասիրութէ. բարին պարկեշտ գնացիւք օգտէ և՛ անձին և՛ այլոց. իսկ չարն զհետ երթա-լով վատթար յօժարութեանց՝ և՛ անձին և՛ այլոց վնասէ:

Մաքսիմոս. յղ. սիրոյ. Գ. 56: Անձնասիրութիւնն է պատճառ ամենայն անկարգ յօժարութեանց. վասն զի անտի ծնանին երրեակ ցանկութիւնք գե-րիչք մտաց. այսինքն շուայտութիւն, ագահութի, և սնափառութիւն: Եւ 'ի շուայտութենէ ծնանի պղծութիւն. և 'ի սնափառութէ ամբարտաւանու-թիւն, այլովքն հանդերձ . . . Անձնասիրութիւն է. որով յարիմք 'ի մարմին, որ ոչն միաբանի ընդ բա-նի: Որ ոք զսա 'ի բաց յապաւեսցէ, նովին իսկ 'ի բաց հատանէ զամենայն անկարգ յօժարութիւնս, որ են ծնունդք նորա:

Եւսեբիոս առ սոփեստս. ԺԳ: Բազումք են՝ որ կար-ծեն սիրել զանձինս, այլ ոչ սիրեն ճշմարտապէս.

հիմակվանը՝ ըսել է ժիր գարուն ձեռքերը եղած շահաւորութեան ոգին ամմէն բանի մէջ մարդուս իր շահը փնտռել կուտայ. ընդհանրապէս նայելով՝ ամենեւին մէկ բան մը չըներ զուտ եղբայրսիրութեան համար. մէկին մէկ աղէկութիւն մը չըներ՝ ինչվան որ մէկ շահ մը կամ շահելու յոյս մը չունենայ։ Անոր համար հիմակվան ատենը վայ կըլլայ ան մարդուն, թէ որ չունի մէկ բան մը՝ ուսկից ուրիշները յոյս ունենան իրմէ շահելու, թէ որ իրեն կարօտ չըլլան։

Օրինակ մը բերենք, ինչպէս որ բնական կարգը կը բերէ, նաեւ սբ գիրքը կը խրատէ, պէտք է որ աղքատին ու կարօտ եղողին հասնինք, թէ որ մէկ ծա-

---

վասն զի յանչափս ներելով անձանց, անկանին շարաչար 'ի հակառակս հաճոյից իւրեանց։

Պղատոն. յդ. օրինաց. Ե։ Անչափ սէր անձին՝ ամենեցուն է պատճառ ամենայն սխալանաց. վասն զի ինքնասիրութիւնն կուրացուցանէ զանձն. զի որովհետեւ առաւել պատուասիրէ զանձն քան զճշմարտութիւն, չարաչար դատաստան առնէ, որ այն իցէ արդարացի, բարի, և գեղեցիկ։

Վէլլէյոս պադէրքուլոս։ Սովորութիւն է մարդկան՝ յամենայնի ներօղ լինել առ անձինս իւրեանց, և ոչ մի ինչ ներել այլոց։

Դէմոսթէնէս հռետոր։ Ամենայն որք դիւրաւ խաբին յանձնէ իւրմէ. զի յոր ինչ յօժարին, լաւ զայն վարկանին. բայց իրքն բազում անգամ չեն այնպէս։

Սոկրատ փիլիսոփայ առ ոփոբէայ։ Եթէ 'ի հանդիսի թատերականին հրամայեսցի, զի յարիցեն կանգնեսցին ատենակալք, նոքա միայն 'ի վեր յառնէին. և թէ, թող դարբինք կամ հիւսունք, կամ կարուակք կանգնեսցին յոտս, նոյնպէս լինէր. և այլքն նստեալ մնային 'ի տեղիս իւրեանց։ Ապա եթէ հրամանն տայր, մոացիք կամ արդարք յարիցեն յոտս, յայնժամ ամենեքին 'ի վեր կանգնէին։ Եւ այս իսկ է առաջին վկայարան 'ի վարս մարդկան. զի թէ-

ռայութիւն մը ձեռվընկրէս գայ, անկար անճար եղօղներուն ըսենք, չէ թէ կարողութիւն ունեցող-ներուն։ Բայց հիմակվան տեսնես եղաւ որ մէկ հա-րուստ մարդ մը և վարի աստիճանի մարդ մը՝ թէ որ տուն կամ ծառայ փնտռելու ըլլայ, ամմէննալ կը-վազեն նաև կըյոքնին կաշխատին հարուստին համար գտնալու, իսկ ան վարի աստիճանի մարդուն հա-մար՝ կամ աղքատին համար մէկը չիշարժիր. աս ըսել է որ՝ հարուստին հանելով յոյս կունենան որ՝ օր մը անկէց բան մը կրնան շահիլ, անոր հա-մար կըյոքնին. բայց մէկալէն յոյս չիկայ, անոր հա-մար չեն ըներ։

Աս կերպս առաջուալ եղած կրնայ ըլլալ, բայց տար-բերութիւնը աս է որ՝ հին ատենը քիչ մարդ կար ա-սանկ ընող, անալ ծածուկ կերպով մը. հիմա խիստ շատ մարդ կայ, մենծ ու պզտիկ, հասարակ մար-

---

պէտս մեծագոյն մասն մարդկան՝ անմիտ դատանի, այլ իւրաքանչիւր զանձն իւր մտացի համարի։

Կողումէլլա։ Մրջիւնս գողաբարոյս համարել ար-ժանի է զայնոսիկ, որ զանձանց ևեթ հոգան, ոչինչ խորհելով զօգուտ այլոց։

Սենեկա. յառածս խոր։ Գտցէ օգնականութիւն ՚ի նեղութեան իւրում, որ օգնական եղև այլոց ՚ի յա-ջողութեան իւրում։ Որ կարօղն էր ձեռն տալ վտանգելոյն, և չեղև ձեռնկալու, սպանօղ է նորա։

Նոյնն. Նամակ. Է։ Այնպէս վարեսջիր ընդ ստոր-նագոյնս, որպէս կամիս զի վերնագոյնք ընդ քեզ վարեսցին։

Նոյնն. յղ. բարերարութեան։ Ամենեքեան գործեսցեն երախտիս, մինչ զի նա միայն գիտասցէ՝ որում բա-րերարեսցեր։ Երբեմն և նա անգիտասցի ճարտարու-թեամբ քով. գիտասցէ՝ զի ընկալաւ զբարիս, այլ մի գիտասցէ՝ թէ յումմէ էառ . . . Ո՛չ ոսկին և ո՛չ արծաթն, և ո՛չ այլ ինչ ՚ի տրոց՝ է տիրապէս բա-րերարութիւն, այլ կամք տուողին . . . ՚ի դէպ ժամու երևի մեծութիւն բարերարութեան. բարե-

գինիներ, նաև իշխանաւորներ. ու յայտնի ընել մը կայ, աս է խելքը ըսելով, ու ասանկ չըննողին վրայ ծիծաղելով, իբր խենթ մը՝ աշխարհ չճանաչցող մը սեպելով։ Այս հիմը (թեմէլը) ամմէն ան գործքէրուն՝ որով եղբայրսիրութեան դէմ խիստ շատ բան կըլլան հիմակվան ատենս։

Աս ոգին կըբերէ մէկ ուրիշ ոգի մը Անգլօսաքսոնեան՝, որ խիստ շատ կայ հիմա. քուկին վիշադ (ակէրադ) որին որ կըբաղձաս, արտաքին մարդ մը չես կրնար գտնալ, գոնէ քեզ մխիթարող մը չես կրնալ գտնալ, այլ նեղութիւնդ պատմել կուտան՝ յառաջ հարցընելով մասին կըդնեն, կարծես թէ դուն որ ճար մը ընելու համար պատմել կուտան, դունալ կըբացվիս ամմէն բանը կըպատմես, եաքը կիմանաս որ հաւ կընալու համար է եղեր միայն, հասկընան, գիտցող ըլլան, եաքը քեզ քամահրեն, քեզ խացեն կծու խօս-

---

քաղցրութիւն է հաց մի 'ի ժամ սովոյ. բարերարութիւն է՝ պապակելոց և նուաղելոց 'ի ծարաւոյ՝ ցօղանել զաղբիւր ջրոյ ... Անշնորհ է երախտիք, որ յերկար պահի 'ի բանի տուողին, և յակամայս և որպէս թէ բռնութեամբ ելանէ 'ի ձեռաց. հաճոյական երախտիք են՝ դիւրապատրաստ և յօժարամիտ տուրք ... Ո՛չ ձրի էառ, որ յետ աղաչելոյն առ..... Տացո՛ւք որպէս շնորհ, և ո՛չ որպէս 'ի վաշխի։

Նոյնն. Բարոյ։ Ածասէր լինիս, եթէ նմանօղ Ածյ լինիցիս յայսմ մասին. այսինքն եթէ կամիցիս ամենեցուն օգնել, և ոչ ումեք վնասել։

Օգոստինոս առ Մակեդոն։ Սիրեսցես ասէ զընկեր քո իբրև զանձն քո. ընկեր աստանօր ո՛չ զարեան մերձաւորս է իմանալ, այլ զբանիւ համապատուելոյս. զի յայսմ ընկեր են ամենայն մարդիկ. զի թէ զդամոց բաժանորդութիւնն՝ ընկերս կացուցանէ, որչափ ևս առաւել բանին բնութենակից ընտանութեան։

Նոյնն. առղ. ճգ. Թէ կարող իցես, տո՛ւր. թէ չես կարող, լե՛ր քաղցրադութ. Ած վարձատրէ զներ-

քերով տառերներու առջին, իբր թէ քուկին անխել-
քութեանդ պատճառ է եղեր ան նեղութեանը վրադ բե-
րելու. նաև կարելի է որ աւելի նեղութեան մէջ քեզ
ձգեն. իսկ թէ որ իրենց բանին շահաւոր ըլլայ, նաև
քու անունդ զրպարտելով կըկոտրեն, քու սիրական
մեծերին աչքէն հանել կուտան, վաստակդ ձեռքէդ
կառնեն. և ասոնք ամենևին խղճմտանք չեն ըներ,
խելք կըսեպեն:

Հիմակվան տանը վաստըկելը դժար ըլլալով դուն
վաստակ, առուտուր; շահ կըխնդրես գտնել, բայց
'նա կըսեմ վաստըկին տեղը բաղձա որ՝ ինչ գեղի՝
ինչ քաղքի մէջն ես, մարդիկ սրտցաւ ըլլան, սիր-
տերնին գութ ունենան, խղճան, ուր որ քաղքը-
ցիք կամ ազգայինք ասանկ սրտով ըլլան, հան ին-
քիրեն վաստակը ոտքդ կուգայ, կըշահիս: Բայց
ուր որ մարդիկ ամենքն ալ քար սիրտ ըլլան, իրենց

---

քին բարերարութիւն, ուր ոչ գտանէ զարտաքին
կարողութիւն: Մի՛ ոք ասիցէ, չունիմ. սէրն ո՛չ 'ի
քսակէ առատաձեռնէ, (այլ 'ի սրտէ):

Լակտանտիոս. յղ. Ածային կարգաւորութեան. Գ. 10:
Այն՝ որ ոչն ետ այլոց կենդանեաց զիմաստութիւն,
ետ նոցա զբնաւորական ամրութիւնս պահպանո-
ղականս յերեսաց յարձակմանց և վտանգից. իսկ
զմարդն մերկ և տկար կերպարանեաց, զի առաւել
իմաստութեամբ զարդարեսցէ զնա, բայց յայլոց
անտի ձրից ետ նմա և զգութ բարեպաշտ. զի մարդ
մարդոյ պաշտպանեսցէ, սիրեսցէ, յանձանձեսցէ,
և ընդդէմ ամենայն վտանգաց՝ անխտիր առցէ և տա-
ցէ օգնականութիւն: Այս ուրեմն ծայրագոյն կապ
'ի մէջ մարդկան՝ մարդասիրութիւնն է. և որ խզէ
զայն, ապիրատ և մարդասպան ծանիցի. զի եթէ
'ի միոյ Ածաստեղծ մարդոյ սերեալ եմք ամենեքին,
յայտ է թէ և արենակից մերձաւորք եմք. նմին իրի
անօրէնութիւն մեծ է ատել զմարդ, թէ և մեղու-
ցեալ առ մեզ. և եթէ 'ի միոյ Ած ընկալաք ամենե-
քին զոգի և զշունչ, զինչ այլ. բայց եթէ եղբարք

միայն քաշել ուզենան ինչպէս որ ըսինք, հոն Թէև հարուստ ըլլաս վախցիր որ քեզի Թշնամութիւն ընելով օր մը չաղքատցընեն:

Հապա ուր Թողունք որ՝ սա դարուս եռքերը բաւականանալ (խանահաԹը) ինչ է՝ վերցըվեցաւ բոլորովին (1), կշտանալ ինչ է՝ չիկայ, ոչ հագուստի փարԹամութեան վրայ, ոչ տանը զարդարանքին վրայ, ոչ տանը շէնքին վրայ և այլն. որ աստիճանի մարդ ըլլայ՝ իրմէ աւելի վերիններուն կըցանկայ հասնիլ. ստամպօլցին հագուստներու վրայ կշտանալ չունի, որոնց վրայ Եւրոպացին կըծիծաղի. Եւրոպացին ուրիշ խարՃերու վրայ կշտանալ չունի, որոնց վը-

---

եմք. և արդարև՝ առաւել հարազատք ըստ հոգւոյ, քան ըստ մարմնոյ: Ապա ոչ սխալեաց լուկրետիոս, յորժամ ասաց, Ցէլէսթեայ սերմանէ է ծագումն մեր ամենեցուն. (յոր հայր և սաելն, նորա ազգ խոյ նեմ+)... Ամէն իրի ընդ վայրագասուն գազանս են գրելի. ոյք մխասեննն մարդոյ, և ընդդէմ հասարակաց բնութեան և իրաւանց կողոպտեն, նեղեն, սպանանեն, կորուսանեն ... Զեմք արժանի ազատութեան 'ի վտանգէ, Թէ չեղաք այլոց ձեռնտու. չեմք արժանի օգնութեան, եթէ չօգնեմք ... Ապա ուրեմն պահելի է զմարդկութիւն, եթէ ստուգապէս մարդ կամիմք կոչիլ: Եւ զինչ իցէ պահել զմարդկութիւն, բայց սիրել զմարդ, զի մարդ է որպէս զմեզ ... Եւ վարձք այսմ գործոյ մարդասիրութեան՝ յԱյ եւեթ է խնդրելի. զի եթէ 'ի մարդոյ խնդրեսցես, չեղև մարդասիրութեան գործդ, այլ վաշխառութիւն բարերարութեան: Եւ չերևի իսկ իմիք արժանի այն՝ որ զոր ինչ առնէ, ոչ այլում, այլ անձին իւրում առնէ:

(1) Բաւականութեան կամ գոհ ըլլալու վրայ:

Մեծն Բարսեղ. Ճառ ընդդէմ ագահ մեծատանց: Եթէ անձն ունի զառաքինութիւն, եթէ լի է գործովք բարութեան, եթէ ընտանի է այ, Ճոխ է բարեօք

րայ ստանպօլյին կըծիծաղի, ինչպէս են կերակուրի զեղխութեան վրայ, որոնք եաքնալ պիտոր յիշենք, Թատրոններու վրայ և այլն ։ Ահա գլխաւոր առջի պատճառը՝ ինչու համար հիմակվան մարդիկ Թէև աւելի շահ ու հարստութիւն ունին, աւելի փարթամութիւն (սալթանաթ) ունին, բայց հանգստութիւն ամենևին չունին, որ քիչ մը առաջ ունէին. վասն զի քիչ մը առաջ բաւականանալ (խանահաթ) գիտէին, քիչ բանով գոհ կըլլային, տուներնին զարդ չունէր՝ բայց սիրտերնին հանգիստ էր՝ մարմիննին ողջ. հիմակվաններուն տուները շատ զարդ ունին, վրանին շատ ոսկի, բայց սիրտերնին անհանգիստ,

մարմիննին հիւանդ ։

Աս շահասիրութիւն ոգիին աւելի յանդգնութիւնը

---

բազմօք, և զուարճանայ զգեղեցիկն զայն զուարճութիւն հոգևոր ։ Իսկ դու՝ որ զերկրաւորս հոգաս, և զորովայն պաշտես, և բոլորովին մարմին ես և գերի ցանկութեանց, լո՛ւր զանուն քեզ յարմարաւոր՝ ո՛չ 'ի մարդկանէ ուստեք, այլ 'ի նմին իսկ 'ի տնէ եգեալ. ա՛նմիտ, յայսմ գիշերի զոգիդ 'ի քէն 'ի բաց պահանջեսցեն. իսկ զոր պատրաստեցեր, ո՞ւմ լինիցի ։

Մեծն Գրիգոր. յԵւլէն. ա. 18 ։ Նա է աղքատ, որ կարօտի այնմ՝ զոր ունի. վասն զի նա՝ որ չունի, և ոչ ցանկայ ունել, փարթամ է. իբր զի աղքատութիւնն 'ի չքաւորութեան մտաց է, և ո՛չ 'ի քանակն ստացուածոց. զի որ գո՛հ է ընդ աղքատութի իւր, ո՛չ է աղքատ ։

Բէռնարդ. 'Ն փօնի ամէնայն մէջ ։ Որո՞վ դիմօք քրիստոնեայն 'ի խնդիր լիցի հարստութեան՝ յետ երանելոյ քնի զաղքատս ։ Մինչև ցե՞րբ որդիք տարրակք, մինչև ցե՞րբ բերան ձեր խօսեսցի զնանրութի, երանի տալ ժողովրդեան՝ որ ունիցի զերեւելիս զայսոսիկ և զժամանակեայս, ուր որդին ա՛յ բացեալ զբերան իւր՝ խօսեցաւ զճշմարտութի, երանի աղքատաց, վա՜յ մեծատանց ։

լսէ, փոխ ըստակ կառնեն միայն ուտելու մտքով, տալիք ունին պարտըկան են, երբոր պարտատէրը ուզելու ըլլայ իր ըստակը՝ անանկ յոխորտալով կը-խօսի պարտըկանը պարտատէրին վրայ՝ որ կարծես թէ ինքը պարտըկան մարդ է՝ որ առնելիք ունի մէ-կալին վրայ, ամչնալ չեկայ, հոգ չեկայ թէ ես պարտք ունիմ, իրաւ ասանկ չէր քաղաքուն յիսուն տարի առաջ՝ գտնէ տեղ տեղ : Ա՛լ աւելին լսէ, ի-մացիր որ՝ Այ բաներուն մէջն ալ կըմացընէ աս ոգին շահասիրութէ. զուտ Այ համար չըներ Ածպաշտու-թեան գործքերը, այլ մէկ մարմնաւոր շահու մը աչք ունի՝ անոր համար աղօթք կընէ, ողորմութիւն կուտայ, և այլն :

## ՈԳԻ Վաճառականութեան : (1)

Շահասիրութէ ոգին բերաւ վաճառականութէ ոգին, որ առջի ատեններու վրայ խիստ շատցաւ եւրոպայի մէջ, ինչվան եւրոպացոց կէս ժողովուրդը կամ թէ աւելին վաճառականութեան հետ եղան, և ամմէն մեծ ու պզտիկ մէյ մէկ վաճառական դար-ձան. վերջի ատեններս նաև տաճկի սահմանին մէջ աւելցաւ վաճառականութիւնը, մանաւանդ երբոր հրա-ման եղաւ եւրոպայի ազգութեանց սև ծով նաւար-կելու : Հրեաները որ հնուցմէ վեր վաճառական ազգ

---

(1) Վաճառականութեան վրայ :

Սողոմոն. Ժղ. : Պարկեշտ վաճառաշահութիւն է, որով ոչ ոք մեղանի, իրաւամբք շահել, և ոչ զոք զրկել :

Կիկերոն. Ժղ. : Վաճառականի և արուեստաւորի գործ է այնպէս շահել զգուշամբ, զի ոչ ուրեք մեղս բերիցեն. զի որ ինչ 'ի չարէն յառաջ գայ, հուսկ յետոյ 'ի չար անդր յանգի :

են, աւելի տիրեցին վաճառականութե մէջ. վասն զի երկու հարկաւոր Թէուեալ ունին. մէյմը որ՝ ամէն շահաստան քաղաքներուն մէջ հրէայ կըգտնըվին հեշտ ու շուտով (խօլայութենով) կըդարձընեն ապրանքը ու ըստակը, մէյմընալ որ իրարու տէրութիւն կընեն: Իսկ մեր հայոց մէջը աս դարուս ետքերը մանաւանդ Թէ ընկաւ. երբոր ինկիլէզը իր տէրութիւնը աւելի տարածեց հընդստանին մէջ, ամէն գլխաւոր բաները վաճառականութե իր ձեռքը առաւ, որոնք առաջ Ճիւղայեցի հայոց ձեռքն էին, ու խիստ վարպետութեամբ կըդարձընէին (1): Հիմա անհատ անձինք կընեն վաճառականութիւն, անալ պզտիկ բաներու մէջ. վասն զի շահաստան տեղվանքները հայ չեն գտնըվիր՝ որ իրարու ապրանք խրկեն. ըլլան ալնէ իրարու տէրութիւն ընել չունին մեկալ ազգաց պէս, ինչպէս որ յայտնի է:

## Ոգի Ճանապարհորդութեան: (2)

Երկու վերոգրեալ ոգիները բերին մարդուս մէկ տէր մը Ճամփայ ընելու մանաւանդ ծովով, որպէս զի կարենան հեշտ (խօլայ) երթալ հընդստան. ասոր վրայ շատ աշխատեցաւ մարդս աս ժը դա-

---

(1) Վարպետ տէֆթէր բանելը՝ որ կըգտնըվի եւրոպացոց մէջ, մանաւանդ Սքրիթթուրա տօփփիա ըսածնին՝ առաջ Ճիւղայեցի հայերը հնարեցին, ետքը անոնցմէ օրինակ առին եւրոպացիք:

(2) Ճամբորդութեան վրայ:

Պլուփարքոս: Որոց չէ քաղցրացեալ տունն, քաղցր է ընդ աշխարհ յածիլ:

Կիկերոն առ Կէլիոս: Ամենայն շրջագայութիւն՝ վատութիւն է այնոցիկ, որոց հանճարն կարէ լինել արգիւնական ՚ի հայրենիս և պանծալի:

րուս մէջ, մանաւանդ մուսկովին տէրութեանը, կարծէր որ հիւսիսային ովկիանոսէն կրնայ անցնիլ պէրրինկին նեղուցը մտնալ որ ասիային ու ամերիկային մէջն է՝ անկէց վար հարաւ իջնալ, ան ճամփով երթալ գալ՝ հինտիստանի ապրանքները բերել, որ կըլլար մէկ նոր ճամփայ մը աւելի կարճ՝ քան որ ինկիլիզը Ֆիլէմէնկը կընեն շատ յոգնելով աֆրիկէն պտըտելով կերթան հինտիստան. բայց պինտ եղքը հասկըցան՝ որ՝ ծովուն սառոյցները (պուզեդայները) թող չեն տար, վտանգի մէջ կըձգեն ամմէն ապրանքը: Ցամաքէնալ մուսկովը քերվան կըհանէր երկան ճամփորդութ. ինչվան չինումաչին, ան ճամփով չինուն ապրանքները կըբերեր, անալ խափանվեցաւ:

Ուրիշ տէրութիւններալ մանաւանդ ինկիլիզը՝ նոր կղզիներ՝ անծանօթ տեղեր գտնալու. համար շատ ճամփորդութիւն ըրին, որպէս զի շահաւոր բան մը գտնան, վաճառականութիւն ընեն: Բայց աս ճամփորդութիւնները վաճառականութիւնէն աւելի գիտութեան շատ օգուտ ըրին. աշխարհագրութիւնը՝ բնաբանութիւնը՝ անոնց ճամբորդութեամբը շատ կատարելագործեցան:

---

Նոյնն. յղ. պտփղածից: Օտարականի անկ է ոչ այլ ինչ առնել արտաքոյ իւրոց պիտոյից. ոչ հետազօտել զայլոց զգործս, և ոչ հետաքրքիր լինել յայլոց իրս:

Անտոնոն: Չէ բաւական աշխարհատես լինել, որպէս յոլովք առնեն՝ որք ոչինչ այլ տեսանեն, բայց շէնս, շիրիմս, և այլ ինչ իրս ծաղու արժանիս. այլ հարկաւոր է զիւրաքանչիւր երկրի զգործս, զընթացս, զօրէնս, զվարս և զբնաւորութիւնս քաջիկ նկատել, յորում հաստատեալ է ճշմարիտն խոհականութիւն՝ առաջնորդ և լոյս մարդկային կենաց:

Լէհոնիոս 'ի կոսփանդ: Որպէս ախտացեալքն ջերմամբ՝ այսր անդր շրջշրջեն զանձինս, և սակայն փո-

Այս կերպ ճամփորդութիւնը ասկէց առջի դարերուն մեծնալ եղած է, ԺԵ դարէն սկսեալ, բայց աս ԺԹ դարուս մէջ շատ յաճախեց. Թէ որ ամէն ճամփորդութիւնը յիշելու ըլլայինք, ինչ որ Թագաւորներուն պատուիրելովը ըրին, կամ առանձին մարդիկները ըրին, մէկ մեծ գիրք մը կըլլար։

Մէկ ուրիշ կերպ ճամփորդութեան սկսմընալ եղաւ եւրոպացոց մէջ աս ԺԹ դարուս մէջ, որուն վախճանն է մարդ կրթելու։ Տղաքները դպրոցին մէջ սորվելէն ետև ճամփայ կըհանեն, եւրոպային երևելի տեղվանքը կըպտըտցընեն. աս ճամփորդութիւնը շատ օգուտ ունի մանաւանդ իշխանաւորներուն տղոցը, որոնք պիտոր կառավար ըլլան։ Մէկ մը որ՝ տղան պզտիկութենէ տարիքը հասած ըլլալով չիկրնար անկարգութիւններ ընել՝ իրեն հաւատարիմ վերակացու հետը ունենալով, որ իր երկիրը մնացած ըլլալով կարելի էր որ ընէր։ Երկրորդ՝ ան տարիքը հասած տղան միշտ նորութիւն կըփնտռէ, նոր նոր բաներ կուզէ ընել, որով իր երկիրը մնացած ըլլալով կարելի էր նոր խռովութիւններ հանել նոր անկարգութիւն, մանաւանդ մեծերուն տղաքը. աս ճամփորդութիւնը իրեն ամէն օր նոր

---

խեն զմահիճս մնոտի յունով սփոփութե. 'ի նոյն կիրս դառնիմք և մեք՝ ընդ վայր փոփոխելով յերկրէ յերկիր. վասն զի խօթ եմք մտօք.... Զոր օրինակ նկարք՝ թէպէտև զարմանալիք իցեն, ոչ յերկար զուարճացուցանեն. սոյնպէս և պէսպիսութիւն անձանց և տեղեաց նորութեամբն զօշոտէ զաչս մեր, այլ առ սուղ մի եւեթ ժամանակ։

Եւէնէկոս պոռփէսոս. ճառ Ը։ Յորժամ յուլութե նստի առոյգ բնութիւն, հիւծի մաշի 'ի ծոց մայրենի։ Նշդեհութեամբ պարտ է 'ի բաց առնել զանչափութիւն գթոյ առ իւրսն. որպէս զի 'ի տղայտիոց հանդիսասցի ոգի մանկութեան։ Այլև այլ

նոր բաներ կըցըցընէ, նորութեան մէջ կըզբաղեցընէ՝ որ օգտակար նորու՛ն է ։ Երրորդ՝ խելքը կըբացվի , բան կիմանայ , աշխարհ տեսնալով իր մանկական նախապաշարմունքները կըձգէ , եփուն մարդ մը կըլլայ ։ Չորրորդ՝ ան ճամփորդութեան նեղութիւնը իրեն համբերութիւն կըսորվեցընէ , չարքաշ մարդ կընէ ։ Հինգերորդ՝ ամէն տեղին՝ ամէն քաղքին խելքը՝ կառավարելութիւնը աշքովը տեսնալով՝ բարի օրինակ կառնէ , թէ որ քաղքի մարդը միշտ արթընցընէ տղան՝ տասնեկ բաներու ուշ գնել տայ ։

Մէկ մարդ մը որչափ բան լաւ ըլլայ , թէ որ ճամփորդութիւն չէ ըրեր , աշխարհ չէ տեսեր , միշտ անկատար կըմնայ կենցաղավարութեան մէջ , մանաւանդ մեծերուն տղաքը՝ խեղեպցած ժիժիք կըմնան , ինքիր խելքին հաւնող ( տխմար ,) կամապաշտ . բայց ճամփորդութիւնը՝ զանազան ազգաց հետ տեսնըվելը՝ ու պակասութիւններս ձգել կուտայ , հասուն մարդ կընէ ։

---

ամաց՝ այլ և այլ ընթացք վայելեն . և զղեսպխոսութիւն ընթացից ամէն ուսուցանեն ։ Միշտ տղայ է, որ առ անին գեգերի . զի ոչ եսես՝ զինչ արտաքոյ գործի ։

Անանուն ։ Շրջիլ ընդ աշխարհ լեցի ոչ 'ի զուարճութիւն միայն , այլև 'ի պտղաբերութիւն ։

Ոհրատիոս ։ Ձերկինս փոխեն՝ և ոչ զոգի , որք ընթանան՝ յայնկոյս ծովի ։

Սոփոկլէս ։ Սոկրատ լուեալ յումեմնէ , թէ ոչինչ օգտեցաւ 'ի շրջագայութենէ , ասէ . ոչ վայրապար այդ անցք ընդ քեզ անցին , զի զքեզ ընդ քեզ տանէիր՝ յո և գնայիր ։

## Ոգի յանչրութեան, ծոծոխամփութեան (1), և նուրասիրութեան ։

Ոմանք երբեմն գրեթէ նոյն գործ ունին, որոնց վրայ գրեթէ կըպլըլըտի աս ԺԹ դարուս պատմութիւնը ։ Անանկ է ամբողջ մարդկութեան վարքը ինչպէս մէկ առանձին մարդու մը. կըտեսնանք որ՝ մէկ անհատ մարդ մը մանկութեան ատեն աս բանիս ան բանին վրայ սէր կունենայ. երիտասարդութեան ատեն ան յօժարութիւնները կըձգէ, ուրիշ բանի վրայ սէր կունենայ, անչափ կըփոխվի որ՝ ինքն ալ կըզարմանայ իր վրայ, թէ ինչպէս անանկ բանի վրայ յօժարութիւն սէր ունեցերէ առաջ. իսկ երբոր 40, 50 տարին հասնելով կատարեալ մարդ կըլլայ, ա՛լ աւելի կըփոխվի, ուրիշ բաներու սէր կըձգէ. իր առջի բաղձանքներուն վրայ ինքն ալ կըզարմանայ ։

Ասանկալ առջի ատենին, միջի ատենին, ու հիմակվան ատենին մարդիկներուն սէրը յօժարութիւնք անանկ կըփոխվի որ՝ ծայրէ 'ի ծայր դէմը կըլլան ։ Միայն հազուստին վրայի սէրը յիշենք, որ եւրոպացիք ատեն մը ունէին, բանված կամ ըռդօֆայէ

---

(1) Զանչրութեան, ու ծոծոխամփութեան վրայ ։

Սէնէկա ։ Խնդրի՝ ո՞ւր է խառնակեաց այդ պատանի. ծոյլ էր, լսեա՝ անդէն զսյանի պատասխանի ։
. . . Սիրեաց զանգործ զատարկութիւն յամենայնի, տղայ կանխաւ, և միշտ տղայ մեռալ ունի ։

Պուղիւբէոս. Ճ ։ Ցուցինչ իրաց օգտակարաց պարտ է յետս կասիլ վասն դժուարութեանց, որ ընդ առաջ ելանեն. այլ պիտոյ է ստանալ զունակութիւն 'ի լաւ անդր, որով ամենայն բարիք յաջողեն ։

Նոյնն. ԾՀ ։ Են ոմանք, որ ոչինչ ընդհատ յանհմուտ և 'ի հեղգ սուրհանդակաց՝ թողեալ զեռանդն նախկին՝ ձեռնթափ լինին 'ի սկսեալ գործոյ. իսկ

ծանր հագուստներ հագնիլ, փէշէրնին մեծ՝ լայն ու երկայն կարել, չխօսակ կենալու համարալ մէջը մուխսալա գնել, հիմա անչափ փոխված են որ՝ և ոչ սոսկ իփէկէ խումաշէ հագուստ կըհագնին, այլ ամենինալպարզ չուխայէ, անալ կարճ, միայն իրենց ալջիններուն ըրածներուն վրայ կըպատմեն կըծիծաղին: Գըլխարկնին առաջ ան գիլի ծայրը պըտկցընել ըրին, ետքը ան գիլի ծայրը մեծցընել. մազերնին առաջ բարձրը ու մեծ ըլլալու համար՝ օտարի մազերով լեցընել, բեռ մը մազ իրենց գլխին վրայ շալկել, ետքը իրենց մազերնալ կըտըրտել, քիչ մը մազով մնալ. ասս ըրածներուն վրայ իրենքալ կըզարմանան, կիմանան որ ուրիշ համ մը չիկայ՝ բայց միայն նորութեն: Աս ոգին նորասիրութեն ինչե՞ր կընէ մանաւանդ զգեստին վրայ, մանաւանդ գլխին վրայ. երբոր ամմէն տարենին մէկ տեղ բերես, իրեն ներհական ըրած ձևերը տեսնալով կըծիծաղիս. յատուկ է իրեն մեծցընել պըտիկցընել, լանցընել նեղցընել, երկնցընել կարճեցընել, շատցընել քիչցընել: Եւրոպացոց հագուստներուն պատկերաց գիրքը կայ հին ու նոր տարեններու, հոն թէ որ տեսնաս աս

---

այլք սովին իսկ զօրագոյն հանդիսանան 'ի վերայ այլոց, վասն զի անյողդողդ հանապազորդեն յառաջադրութեան:

Սենեկա. Եղբ: Չիք ինչ, որում ոչ յաղթեսցէ փոյթ պնդութեան անընդհատ մտադրութ՟... Հանապազորդել պէտք են, և անխոնջ և անձանձիր փութով զանձն զօրացուցանել, մինչև ըստ բարի կամաց՝ և բարի միտք արդիւնացին.... Ամօթ է խորշիլ 'ի ծանրութէ, և կռուիլ ընդ փորձոյն՝ յոր բուռն հարեր: Ո՛չ է այր արի և տոկուն, որ յաշխատութենէ փախչի. և ոչ աճեն 'ի նմա արութիւնք ոգւոյ ընդդէմ իրացն դժուարութեան... 'ի բարձունս անդ են երանելի կեանք. այլ յարատեւութեամբ լինի 'ի նոյն հասանել.... Ցարիցուք

փոփոխութիւնը, մանաւանդ ըսենք մարդուս փոփոխամտութիւնը՝ կըզարմանաս։ Եւրոպացիք Ժզ. Ժէ. դարուն տենները անանկ մօրուսապաշտ են եղած՝ որ երկան մօրուք ունենալը միայն մեծերուն պահված է եղեր. Ֆրանսային վճիռը կայ, սաստիկ կարգելէ՝ մէկը չիկրնայ աւելի երկան մօրուք ունենալ՝ քան որչափ որ իր բուռին (ավուճին) մէջը կըսըղմըվի. անկէց աւելի երկան մօրուք ով որ ունենայ ճերիմէով պատժըվի, վասն զի միայն արքունեաց համար պահված էր. բայց աս սէրը աս պատիւը մօրուքի վրայ հիմա կըտեսնանք եւրոպացոց մէջ որ բոլորովին ատելութիւն դարձեր է։

Մեր հագուստի ու զարդարվելու վրայի փոփոխութիւնը ոչինչ սեպելու է, բայց մարդկային փոփոխամըտութիւնը տես ան բաներուն վրայ, որ աղէկ բան են, շատ աշխատանքով շինված բան են, տեսն անցնելըն ետեւ նոյն բաները գէշ են կըսէ, մարդս ինքիր ձեռքովը կաւրէ։ Երկրորդ յովսէփ կայսեր 40 բերդ իր հրամանով փլցընել տալը՝ ինչ զարմանալի բան եղավ. սանկալ նորաղանդ Ֆրանսզներուն քակելը

---

արիացուք ընդդէմ բախտի. և որ ինչ ընդդէմ պատահեսցէ, գիտասցուք՝ թէ չէ այնչափ մեծ, որչափ համբաւի։

Քիղոն մին յեօթանց իմաստնոց (առ. ստոբեայ) սովոր էր ասել. Յամր բերել պարտ է յիրս ամենայն, այլ յետ միանգամ բուռն հարկանելոյ՝ հաստատութեամբ պարտ է հանապազօրդել 'ի գործն։

Սբն ամբրոսիոս անպարտելին հոգւով յառաքինիս՝ պատմէ 'ի թղթ. լբ. զանձնէ իւրմէ, թէ ասէր առ նա կաղիգոնոս սեներկապան արքունի սպառնալեօք, իշխե՞ս դու 'ի կենդանութեան իմում արհամարհել զվաղենտիանոս. գիտեա զի բառնամ զգլուխ քո 'ի քէն։ Առ այս ետ պատասխանի ամբրոսիոս. տէր տացէ թողացուցանելով, զի դու 'ի

իրենց կամքովը ան բերդերը՝ որ իրենց պապերը շատ աշխատանքով ըստրկով շիներէին, ու ամմէն աղգ. աշխարհի կռվկայէն որ աղէկ բան են, պատերազմի տեղն պէտք են, ասոնք ոչինչ կըսեպէին ։ Ան մեծ մեծ անէրը՝ պալատները (սէրայները)՝ վարպետարան շէնքերով զարդերով լեցուն՝ իրենց ձեռքով քանդեցին. վարպետ արձաններ, չիգտնըվելու բանվածներ, որոնք քիչ մը առաջ իրենց պապերը երևելի վարպետներու շինել տըվէրէին շատ խարջերով, իրենց ձեռքով վար առին ։ Արծըլթի վրայ օրինած զարդեր, աննման փորվածներ, որ առջի մարդիկ աշխատէր փորերէին մանաւանդ եկեղեցական զարդերու վրայ, ու ժը դարուս եղքի մարդիկը ամմէննալ ոչնչացուցին, որ հիմա անանկ վարպետ չիգտնըվիր ։ Երկու ուկիէ աշտանակ (շամտանը) յիշենք մարդահասակէն աւելի բարձր, վրանին վերէնիվար փորված պատկերներ, անանկ բարակ՝ անանկ զարմանալի բանված հսամ, որ շաբաթ կուզէր ամմէն մէկը 'գիտելու նայելու, ասոնքալ Ֆրանսային խառովութե առենը կրակը դրին հալե֊

---

գլուխ տարցիս զսպանալիսդ. իբր զի ես առնեմ՝ զոր արժանն է եպիսկոպոսի, և դու առնիցես՝ զոր անկ է նմանեացն քոյ ։

Որպէս և վասն մեծին բարսղի կեսարացւոյ գրի յեկեղեցական պատմութիւնս, թէ յորժամ մահ սպառնայր նմա դատաւորն 'ի դիմաց վաղեսի արիոսեան կայսեր, աներկիւղ և համարձակ պատասխանի ետ սքն, և ասէ. Իցէ թէ ունէի 'ի ձեռին արժանաւոր ինչ պարգև՝ տա 'ի տալ այնմ, որ զբասիլիոս փութով լուծցէ 'ի կապանաց սատի աղցաւոր մարմնոյ ։ Եւ իբրև ետ նմա ժամանակ զկէս մասն գիշերոյ՝ խորհել զարժանն, զայս արար դարձեալ պատասխանի առ դատաւորն. Ես նոյն եղէց առ վաղիւ, որ ինչ այսօր. այլ իցէ թէ դու զքեզ ոչ փոփոխիցես ։

ցին, որ հիմա դանձ (խաղնա) խարճըվի, չիկայ մէկ վարպետ մը չինօղ։ Ո՛ր մէկը յիշեմ. մարդկային ձանձրութեան փոփոխամտութեան բան մը չիդիմանար, ամէն բանը կավրէ։ Աս դիս եւրոպայի մէջ բարակամիտ գիտուններ աս ըրին. ան դին ասիայի մէջ Վահապի արալները գերեզմաններու վրայ ճէվահիրըլը շէնքերը ավրեցին, թալլեցին։

Բայց անալ նայէ որ՝ նորութեան ոգին (1) թէ աղէկ բանի վրայ ըլլայ, թէ գէշ բանի վրայ, ինչ խռովութիւններ, ինչ արիւններ ըներ կուտայ. մեծին պետրոսի ըրած նորութիւնները մոսկովի վրայ աղէկ բաներ էին, բայց ինչ ջարդ, ինչ արիւններ ըներ տըվավ. հիմալ մոսկովին տէրութիւնը ինչ կըքաշէ վերցըներ ուզելով գերի ունենալը։ Երկրորդ յոժսէփ կայսեր ըրած փոփոխութիւնները նորութիւնները ինչ խռովութիւններ պատճառեցին։ Կիրայ խանին նորութիւնները խըրըմին մէջ զինքը հալածական ըրին։ Ասանկալ քառավալշօ վէզիրին ըրած նորութիւնները փօրթուկալի մէջ շատ փորձանքներ բերին, դանուըչըի վէզիրին ըրածներնալ նաբօլիի մէջ։ Իսկ

---

(1) Նորասիրութեան ոգւոյն դէմ՝ հին հեղինակներուն խօսքերովը։

Ովիդ. Գ. պոնտ. Դ։ Քան զամենայն հաճոյական, գոգ նորութիւնն է առ մարդկան։

Կալպուրնիոս. Է։ Ընչին թուին՝ զոր ինչ տեսաք յանցեալ ամ, որք անարգեմք՝ ում միայնք ժամ 'ի ժամ։

Պլուտարքոս. 'Ի Բարոյ։ Որպէս խոհակերք ցանկան առատութեան մսոյ կենդանեաց, և ձկնորսք՝ ձկանց, նոյնպէս հետաքըքիր չար՝ նորալուր բանից, զի ունիցի ինչ որսալ։

Երասմոս հռոտերդամ։ Որպէս խիթալի է վասն մարմնոց մերոց մնուս գարնայնոյ և աշնայնոյ՝ առ այլափոխութեան, այսպէս ամենայն նորութիւն վնասակար գտանի 'ի հրապարակի։

Ֆրանսացիներուն նորասիրութեան ոգին, անոնց ըրած փոփոխութիւններին 1789 էն սկսած 5 միլիոն մարդ ջարդելու պատճառ եղան միայն Ֆրանսաց ազգէն. Թող տուր ուրիշ ազգաց կոտորմունքը: Ասանկով ամեն նորութիւն կբերէ խռովութիւն:

## Ոգի կրօնաւորութեան, և անոր ներգործը:

Եկեղեցին 'ի սկզբանէ ասանկ յառաջացաւ. առաջ հալածման ատենները մարտիրոսութեան սէրը տիրեց, ետքը հալածանքէն փախչող քրիստոնեայները ճգնաւորութեան սէր ձգեցին. զատ զատ առանձին խրճիթներու (քօլիվաներու) մէջ նստելով կըճգնէին. ետքը վանականութեան սէր ընկաւ. որոնք շատուոր մէկ տեղ միաբան մէկ վանքի մը մէջ կընստէին: Արևմուտքայ գութերուն ու վանդալներուն հալածանքէն կոտորածէն փախչողները վանքերը կըմտնային, պէնետիկդեան կարգին մէջ կրօնա-

---

Կիկերոն. տուսկուլ. խնդ. Գ: Զի՞նչ ինչ 'ի մարդկային իրաց մեծ երևեսցի այնմ, որում յաւիտենականութիւն ողջոյն՝ մեծութեամբ հանդերձ տիեզերաց քաջածանօթ գտանիցին: Զի զի՞նչ 'ի զբաղմանց մարդկան, և այն յայսչափ սղութեան կենաց՝ մեծ կարիցէ երևել առն իմաստնոյ, որ հանապազ արթնութեամբ հսկէ 'ի վերայ անձին իւրոյ, զի և ոչ մի ինչ որպէս անկարծ կամ յանկարծ կարասցէ դիպել նմա, և ոչ մի ինչ իբրև նոր եկեսցէ ընդ առաջ: Որ և այնպէս յառեալ ունի զաչն կորովաբիբ, զի միշտ տեսցէ կայան անձին և կամ տեղի անքոյթ և անվիշտ. իբր զի զոր և դիպուած բերցէ նմա բախտն, անդորր արտև տարցի վայելչապէս: Արդ՝ որ զայս արասցէ, ոչ միայն ազատ գտցի 'ի խօթութենէ կամ 'ի խօթամիտ դժկամակութենէ, այլև յայլ ամենայն ամբոխմանց սրտի:

ւոր կըլլային, որ Նը պենտակլեդոս հանեց Է դարուն մէջ: Այս վանական կեանքը շատ ծաղկեցաւ, յարմար ու օգտակար եղաւ մարդուս. անոր համար զանազան կրօնքներ ելան, որոնք թէպէտ ամէննալ վանքի մէջ կընստէին միապէս, բայց վարմունքնին տարբեր էր՝ մարդուս տարբեր բնութը կեօրէ. անանկ որ ԺԶ դարուն մէջ խիստ շատ կրօնք ելալուն համար՝ Լատերանու ժողովը արգելեց որ նոր կրօնք չեվելնայ, բայց ինչվան աս ԺԸ դարուս մէջէրը՝ 127 էն աւելի կերպ կերպ կրօնքներ ու միաբանութիւններ կըհամրեն ելած:

Ատեն մը անչափ սէր կար վանքեր շատցընելու՝ որ Թագաւորներ իշխաններ վանքեր շինելու հետ կըլլային. միայն ստամպօլ քաղաքէն ինչվան պօղազին բերանը 300 վանքէն աւելի կային. ինչպէս եկեղեցիներուն շինելու անանկ սէր կար, որ եաւէ կայսերը արգելք հանեցին թէ ստամպօլի մէջ ալ եկեղեցի չիշինվի: Բայց նայէ մարդկային յօժարութե փոփոխութեը որ աս ԺԸ դարուս մէջը գրեթէ կէսէն սկսեալ անանկ մարեցաւ կրօնաւորութե սէրը, որ անոր ներհակ տրրեց ընջելու, վանքերը վերցընելու սէրը: Բայց աս ընելէն ետև, ու ատեն անցնելէն վերջը, փորձով իմացան, թէ օգուտ չեղաւ աշխըրքիս կրօնաւորաց վերցըվիլը, այլ շատ վնաս:

## ՈԳԻ զինուորութեան, եւ աղքատութէ:

Այս կարդալով շատ ծիծաղիս պիտոր մարդկային կրից ներհակութեը վրայ: Ոգի կրօնաւորութեանը մարեցաւ աս ԺԸ դարուս մէջը, անոր տեղը ոգի զինուորութեը մտաւ, զինուոր ըսելը աշխարհիս կրօնաւորը ըսելու է. վասն զի կրօնաւորներուն պէս ունին հնազանդութի, աղքատութիւն, ու չարքաշութիւն որ է ճգնութիւն, տաք ու պաղ քաշել,

որթուն կենալ, անօթի ծարաւ, մէկ անդէն մէկալը տեղ երթալ հնազանդութեան համար, և այլն ։ Վանքերը աւրեցին, վանքերուն տեղ խշտյներ շինեցին, որ նոյնպէս վանքեր են զինուորներու ։

Զինուորութեան արուեստը զանազան մարդիկներ օրեօր քիչ քիչ շտկեցին մանաւանդ ժէ դարէն ըսկըսեալ, որոնցմէ մէկն ալ եղաւ Պարմային դուքսը Ալէքսանդր Ֆարնեզեան, որուն զօրքը կըմանէր մէկ շարժական բերդի մը. աւստրիայնները քովերէն պաշտնէշի (մեթէրիզի) պէս շարել կուտար, որոնք զինուորներուն հետ տանյջ խառնըշնելու անշփոթ կարգաւ կերթային, զինուորները քառանկիւնի ձեւով կըկենային, Ճակատին զէն կարգաւ կեցող զինուորներուն մէջէն մէկ Ճամփայ մը բաց կըթողուին, երկու բաց անդալ կըթողուին եւ զէն անկիւնները (քեօշէները). աս բաց Ճամփաներուն անջինալ ձիաւոր զօրք կըպաշտպանէին. ասանկ կարգ խօթելով շատ յաղթութիւն ըրաւ։ Եւեւէ եւեւ աս Զինուորութեան մարդ մեացընելու համար այնչափ խելքով շտկեցին, որ վերջին կատարելութիւն հասաւ մանաւանդ ժը դարուս մէջ Բ. Ֆրետերիկոսի պրուշի թագաւորին ձեռքովը, որուն ատենը եղաւ որ՝ ամմէն զօրաց բանակը մէկ մեքենայի (ռօլոժի) մը պէս շարժել մտաւ. զօրապետին հրամանովը բիւրաւոր մարդիկ իբր մէկ մարդ մը շուտ, հեշտ (խօլայ) քալցընել. կրնայ ըսուիլ որ՝ արուեստաներու մէջ չիկայ մէկ արուեստ մը այնչափ կատարեալ, որ եւրոպացիք կատարելագործեցին, մարդնայւոր շարժելու բանը խելքի արուեստ ըրին՝ սաթրանճի խաղին պէս ։

Զարմանքը աս է որ՝ մեռնելու արուեստ է, բայց այնչափ սէր մտած է եւրոպացոց մէջ՝ որ իրենց մեծծերուն մէկ նարելուք (մօտա) մը եղած է զինուորութեան մէջ մտնալու, ինչվան թագաւորներ՝ թագաւորի զաւկըներ ան կեանքը որ աղքատը չկքաշէր, իրենք սիրով կըքաշեն, ու պարծանք կըսեպեն. ար-

ներքին ձգել, բայց տեղվանք լեռներու վրայ պառկիլ.
գիշեր ցորեկ Ճամբայ ընել, տաք ու պաղ քաշել.
ինչվան նաև պզտիկներուն սիրտը սէր ձգել տըվին,
պզտիկ տղոց զինուորի հագուստ հագցընելով վրա-
նին մայլելով։

Օրինաւորութե ոգին հետը պիտի ունենայ նաև ազա-տականութե կամ ազնուականութե իբրև մասն իշխա-նական կառավարութե. բայց անոր տեղը շատ ան-գամ կըմնայ կասկածելի ազատութե մը, որ ինքիր-մէն ամմէն մարդու վրայ կըտիրէկոր. որ է Սանձար-ձակութի, հետևալ Անառակութիւն, աս դարուս մէջ աւելի տիրած. ինչպէս որ ամմէնքը աչօք բացօք տե-սան, ու կըտեսնանկոր անոր պտուղները։ Աս ոգին ազատութե գրեթէ կըցըընեն որ՝ հնուցմէ վեր կայ եղեր. պետրոս առաքեալին օրերնալ աս ոգին նման մէր ըսած մարդիկներուն պէս ազատութիւնը անաստուածութե վրայ դրած են եղեր, ու տէրութե-ներու դէմ են եղեր։ Գիտէ տէր ... զանիրաւս պահել 'ի տանջանս աւուրն դատաստանի, մանաւանդ որ զհետ մարմ-նոյ պղծութեան ցանկութեանց իւրեանց երթեալ. արհամարհօղք Տէ-րութեան։ Բ։ Պետ. Բ. 9. 10։ Նաև ծնալ չէին ըն-դուներ, որ աս կարգ խօսքերով կիմացընէ։ Ժպիրհք, յանդգունք, անձնահաճք, զփառս (Բյ) հայհոյել։ Անոր համար վարը անաստուածներու կըմանցընէ ասոնք, ո-րոնց հիմը (Թէմէլը) արծաթսիրութիւնը եղած էր, որ Թէև անիրաւութեամբ ըլլայ՝ կընայէին յափշտա-կել։ Որ ունին աչս հարբեալ շնութեամբ, մանաւանդ ան-ծից ... պճարել անյագութեան մեղացն։ Իրենց միտքը աս մոլութիւնները խօթել էր, սէր բերելու համար՝ սուտ Ազատութե կըլլայ ընելով, շատաբանութք կըջանային մարդիկ խաբել։ Քանզի ամբարտաւանս ընդունայնութեան բարբառեալ պատրեն ցանկութեամբ մարմնոյ գիջութեամբ զայնոսիկ՝ որ սակաւիկ փախուցեալ յայնցանէ՝ որ 'ի մոլորութեան շրջին, նոցա Ա-զատութիւն խոստանան, և ինքեանք ապականութեան ծա-ռայք են։ Բ. 18։ Ասոնք, տեղնիւտեղը պիտոր տես-

նաս այս ընդհանուր պատմութեան մէջ, մանաւանդ եռքի տաճարներու շատոնց վրայ :

Առաջուցմէ վեր քանի հերետիկոսաց որ ելերեն, ո-րոնց հերետիկոսութիւը բարոյականի վրայ եղերէ, գրեթէ ամմենուն մոլորութիւնայ՝ Աղոփուէ ու Ան-տոյկուբէ վրայ է եղած : Այսինկ ազատութի վարդա-պետօղներ կային նաև սողոմոն իմաստուններն տաճը, որոնց խաբէութիւը կըպատմէ Իմաստ . գլ . ը : Աշ-տարակին տանինին եղած հպարտութիւնայ՝ ազատան-տէր ըլլալու վրայ էր կըրոէն, ած չիճանչնալ, իրենց ուղած կուռք մը պաշտել, որովհետեւ երբայեցոց ածաշունչը անանկ բան կըդնէ որ՝ Մովսէսի մատե-նագրին մէկնութիը կեօրէ՝ աշտարակին գլուխը կուռք դնել՝ կռապաշտութի ընել էր մտօքնին, ինչպէս մեր Վարդանինայ կըյիշէ : Ինչվան նաև Ջրհեղեղին տանէ-նայ անանկ վարդապետութիններ կային, անոր համար Որդիք մարդկան կըսվէին անոնք, ըստ որում ած չէին ուզեր ճանչնալ, մարդէ առաջ եկած ենք կըսէին, ա-զատութիւնին անառակութի վրայ կըբանեցնէին, բռնութի ընելով իրարու կանոյքը կըյափշտակէին, անոր համար սբ գիրք՝ մարմին եղած էին կըսէ, անով կըքացարէ, և աւետարանին մէջնայ, ղուկ . ժէ, իրենց շահասիրութիւը ու արծաթսիրութիը կըյիշա-տակէ : Իսկ մէկալնոնք որ՝ ածմէ ստեղծըված ըլլալը կըճշդունէին, ու ած կըպաշտէին, անանկները սբ գիրք Որդիք այ կանուանէ :

Անկէց կերեւայ որ անառակութիը միշտ ըլլալով աշ-խարհիս վրայ, ազատութեն ոգինայ միշտ կար, միայն պարագայներով տարբեր են եղեր իրարմէ, ինչպէս աս ժԲ դարուն մէջնայ :

## ՈԿԻ ԿԻՓՈՒԹԷ :

Այս ժԲ դարուս մէջը եւրոպացոց մէջ խիստ վառ-վեցաւ աս ոգին, շատ ծաւալեցաւ գիտութիւը . ան-կէց նոր նոր բաներ գտնըվեցան ինչպէս որ յայտնի

է, բայց գիտութիւնը ըլլալով մէկ խորթին բան մը, շատ բանին պատճառները անյայտ, անկէց կըլլայ որ՝ մէկ գիտցէն քանի որ գիտութիւնը կըծաւալի, մէկալ գիտցէն անչափալ կարծիքները կըշատնան մի և նոյն բանին վրայ ։ Հիմա տասանկ կընդունին, քանի մը տարի անցնելէն ետև կըփոխվին, ուրիշ կարծիք մը կընդունին. տասանկ անդադար փոխվելով կերթայ փիլիսոփայութիւնը, մանաւանդ բնաբանական գիտութիւներու վրայ, որով գիտունք կերպ կերպ կարծիքներով բաժնըված են, շատ բան անորոշ մնացած կան, կարելի է որ ետևի եկած ատենը որոշել տայ ։

Հիմակվան գտնըված բաներալ կան՝ որ մենք նոր կըկարծէինք, բայց ետքը կիմանանք որ հիներնալ գիտեն եղեր, ինչպէս Գաւլանոց Գաւաղանը՝ կրակին մէջը անխաս կենալը՝ հնոց գրեանց մէջը կըտեսնանք որ հին ատեններնալ գիտեն եղեր, ինչպէս որ պիտոր պատմենք դարուս ետքը ուսումնական մասին մէջ ։ Կայալ բան որ՝ հիմա տեխայի մէջ աւելի գիտեն, ինչպէս Անտուէօսսի Ֆրանսզին դեսպանը իր նոր շինած գրքին մէջը ցըցուց որ՝ Ջրագիտութեան վրայ ստանպօլի մէջ եղած աղէկ կերպը ջուրը հեռըվանց շարժելու բերելու համար՝ Ֆրանսայի մէջ չիկայ ։ Ասանկալ փորձովնիս կըտեսնանք բժշկութեան վրայ, որ անատօլցոց քով կան դեղեր կամ եղանակ բժշկելու՝ որ եւրոպացիք չըգիտեն, շատ ցաւ կայ որ անատօլցիք շուտով ու աղէկ կըբժշկեն մանաւանդ Ճէռահութեան բաները ։ Ամենուն յայտնի է ինչպէս ծաղկի հիւանդութեան պատրուսելու (աշին) գիւտը անատօլուէն հայաստանէն ելաւ, անկէց ծաւալեցաւ ստամպօլ, ստամպօլէն եւրոպա ։ Աղէկը ան կըլլար որ՝ քանի մը երևելի բժիշկներ եւրոպացոցմէ աս մերքով քալէին ասիա ու աֆրիկէ, անոնց դեղերը կերպերը սորվելու, շատ բան կըգտնըվէր կըկատարելագործէր. ինչպէս որ ան բժիշկներէն ոմանք ըրին, ու վարպետ օգտակար դեղեր սորվեցան ։

Միայն թէ մարդկային գիտութեան հետ զուտ ճըշմարտութիւնը մինակ չիմնար, այլ միշտ մէկ տեղ կընկերանայ Սեփին մոլորութէ, երբոր փիլիսոփայները յունաստանի մէջ ծաղկեցան, շատ ճշմարտութիւն ծանուցին, լոյս ծաւալեցին արտաքին գիտութեան վրայ. բայց մէկալ գիտցէնալ ուրիշ փիլիսոփաներ կելլային, որ անճոռնի մոլորութիւններ կըսորվեցընէին, անով կերպ կերպ աղանդներ կըհանէին։ Ասանկալ քրիստոնէութեան ատենը երբոր հաւատքի գիտցէն ճշմարտութիւնը՝ գիտութեան լոյսը՝ սկսաւ ծաւալիլ, կերպ կերպ հերետիկոսներ ելան, որ երբեմն մէկ բանի վրայ՝ երբեմն մէկալ բանի վրայ մոլորութիւն կըքարոզէին. երբոր ան բաներնալ շատ վիճաբանութեամբ շատ ժողովներով մէկիկ մէկիկ որոշվեցան, որ ալ մասնաւոր բաներու մը̃ տարակոյս չիմնաց, ոգին մոլորութեան աս ժը̃ պայծառ դարուս մէջ ամբողջ հաւատքի մը̃ մոլորեցուցիչներ հանեց. ասով հասկըցվեցաւ որչափ անկատար ըլլալը մարդուս գիտունը, քանի որ մէկ դիտցէն աշխատելով ճշմարտութիւնը դուրս կըհանէ, այնչափալ մէկալ դիտցէն ճշմարտութիւնը կըմթնցընէ։ Անոր համար իմաստնոց մէջ վախ կայ որ՝ գիտութիւնները խիստ բարակնալով բարձրընալով օր մը չըլլայ թէ մէկէնիմէկ վար իյնայ, ինչպէս որ ամմէն բանին մէջ ատվորութիւն եղած է աշխըրհիս վրայ. երբոր բան մը խիստ վերի ծայրը կելլայ, մէյմընալ մէկէն կինջնայ վար կիյնայ։

Ասոր շուշորդը տեղ տեղ ոմանց մէջ երեւցաւ ա̃ծաբանութեան գիտութեան վրայօք. ուզելով ամմէն բանին խելքը հասցընել, ուզեցին նաեւ ա̃ծային բաներուն խելք հասցընել, բոլորովին գիտութեան տակ խօթել, որ էր յետին յանդգնութեան ու անխելքութեան պտուղը։ Ասով եղաւ որ՝ ինչ բանին որ խելվընին չիհասնիր՝ չընդունեցան, անհաւատութեան մէջ ընկան. չիմտածելով որ հաւատքի բանին մէջ ան է խելքը՝ որ չիփնտրուէ ա̃ծաշունչէն դուրս, այլ ինչ որ Ն̃ս գիրքը կաւանդնորդէ, ան բռնէ երթայ, ինչ-

նեցօղ միշտ անպակաս էր, ատոնց գլխաւո-
րը Թագաւորին առջինեկն է կըսէին, որ
կալլէտի իշխան կըսվի, ու Թագաւորին յա-
ջորդը կըլլայ. անոր համար հօրն ու տղին
մէջը շատ տրտունջ ու դժգոհանք կար, ի-
րարու հետ աղէկ չէին. տղան իր հօրմէն
կըզանկտէր՝ որ աքվիսկռանա եղած հաշ-
տութիւնը 1748. հոկտ. 18. շատ ապրտու-
նօք ու չիմոտածելով ըրերէր իր հայրը. ան-
հոգ ըլլալով թէ ինկիլիզին շահը նայելու,
և թէ իր բարեկամ դաշնակցեալ ազգե-
րուն շահը, մանաւանդ աւստրիոյ տանը
շահը, որ է նեմցէի կայսեր ցեղը. անոր
համար արքունիքէն (սէրայէն) հեռըցերէր
տղան, շատ ամիս էր որ չէր տեսած իր հօ-
րը երեսը: Ասոնք միայն Ֆիօռէնցացի մառ-
քէզը նիքքօլինի կըցաւ հաշտեցընել իրա-
րու հետ հայրն ու տղան. ասիկայ շատ կար-
դացօղ քահանայ էր ու երևելի ճանապար-
հորդ, որ ամմէն տեղ մեծ համարում ունե-
ցաւ իրեն ընդարձակ գիտութեցը համար՝
ու աղէկ վարմունքին համար: Ասանկով
աս մարդուն ձեռքովը խաղաղեցաւ արքու-
նիքը:

### Օլանտայէն կամ Ֆիլէմէնկէն Վրայ.

### 1750:

Թէպէտ Ֆիլէմէնկը 50 տարիէ չափ իր
ազատութիւնը ու խաղաղութիւնը վայելեց,
բայց հասարակապետութէ ըլլալու ոգին

ու բաղձանքը (սէվտան ու հավէսը) որ մեծ մեծ բաներու ձեռք զարնել ու առաջացընել կուտայ, նոյն ոգին պատճառ եղաւ, չիկարծած փոփոխութեանց մէջ ձգել տըրվալ զիրենք, մանաւանդ տարաձայնութիւն ու իրարու հակառակութեան մէջ: Իրաւ է որ՝ Փիլէմէնկցիք միաբան եղան ինչվան որ գիրենք հասարակապետութիւն մը ըրին ինչպէս որ կուզէին. օխտը նահանգ (էյալէթ) մէկ տեղ միանալով դաշնակից ըլլալով մէկ հասարակապետութիւն մը եղան, բայց ամէն մէկ նահանգը իրեն. յատուկ կառավարութիւն, յատուկ խորհուրդ ու իշխաններ ունէր, մէկը մէկալին կառավարութեանը մէջ չէր խառնըվէր. միայն օլանտա նահանգը ուրիշ նահանգներուն վրայ քիչ մը կըխառնըվէր, գերագոյն կըսեպվէր մեծ ու հարուստ ըլլալուն համար. տուրքի դիւանէն վեց նահանգ ամէնը մէկ տեղ ինչ կըվճարէին, մինակ օլանտա այնչափ կըվճարէր: Բայց ամէն օխտը նահանգներու վրայ խառնըվող կառավարող՝ Հայա կամ Լայա, քաղքին մէջի ժողովներ. ամէն օխտը նահանգներնալ իրենց մարդը կամ նուիրակը հոն կըխրկէին. անոնց ժողովը ընդհանուր ազգին բաները կըկառավարէին, ինչպէս են պատերազմը, խաղաղութիւնը, դաշնադրութիւնը, դրսի տէրութեանց հետ խօրաթելը: Ասոնք միայն կըսվէին ընդհանուր իշխաններ, որ բոլոր պատգամեան կամ Փիլէմէնկին ազգը կըներկայացընէին: Հայա քաղքին բնակիչքնալ ամէնէն հարուստ

ըլլալով ամենէն աւելի բան կըվճարէր հա-
սարակի համար. անոր համար իրեն իշխա-
ները ամենէն աւելի կըխառնըվէին կիշ-
խէին հասարակաց գործողութեան մէջ. Թէ-
պէտ և աս հայոց աւելի իշխելը իրենց
մէջը մեծ առիթ մը կըձգէր նախանձու ։
Բայց ասանկ հասարակապետութիւն ըլլալէն
ետև մէջերնին չիպակսեցաւ մէկ ծածուկ
հակառակութիւն մը իրարու հետ. ոմանք
կուզէին խիստ ճիշդ հասարակապետութիւն,
ոմանքալ կուզէին մէկ գլուխ մընալ ունե-
նալ, որ Ստատհոլտէր կըկոչէին, ըսել է՝
իբր Ընդհանուր տեղակալ, աս հակառակութիւնը
մէջերնին ոչ երբեք պակսեցաւ ։ Հասարա-
կապետութիւն ըլլալու վախճանը՝ միտքը աս
էր՝ որ ազատ ըլլան, ազատութիւն ունենա-
լով իրենց աշխատանքնուն ճարտարութեննին
բանեցընեն, վաճառականութիւն ընեն, հարըստա-
նան, ինչպէս որ իրաւ եղան. ասանկ ծաղ-
կեցան հարստութեամբ՝ որ եւրոպայի մեծ
տէրութիւններէն մէկը եղան, բոլոր աշխար-
հիս վաճառականութեն, առատութի, ըն-
տակ դարձընելու՝ իբր գլուխ ու հիմն եղան.
Յայտնի ցըցուցին աշխարհիս՝ որ երբոր
միաբանութիւնը և աշխատանքը մէկ տեղ
միանան, ինչ մեծ բաներ կընան ընել ։
Այս ժէ դարուս սկիզբը՝ իրենց խիստ մեծ-
ծութեան առենը եղաւ, որոնց հարստութիւնը
աւելի Հինտիստանին պահարաններէն էր, պա-
հարաններուն շատը իրենք կըբերէին, իրենք
կըծախէին ամենէն եւրոպացւոց, երբոր ետև
և ետև բերելով խիստ կըշատնար պահա-

րը, աժան ծախել չէին ուզեր, այլ կերէին չէին աժընցընէր. 1740 ամսդրտամի մահ-ուէնէրու մէջ պահված հինաւուրատան ձեռա-գիրները՝ 12 միլիոն Փիօրինի աժողչեքով երեցին, որպէս զի քիչ մնայ, գինը վար չիյնայ։ Ինչպէս որ օխտը նահանգներու մէջ՝ օլանտան ամմէնէն վեր հարկինք ու-նէր, աստանկալ ամսդրտամ քաղաքը օլան-տա նահանգին մէջ ամմէն քաղքըներեն վեր էր, ըլլալով ընդհանուր շահաստան քաղաք բոլոր Փիլէմէնկ ազգին, և ամմէն առուտուրի իբր կեդրոն ու հրամայօղ։ Աս ամսդրտամ քաղաքն էր՝ որ ամմէն տարի աշխարհիս ամմէն կերպ ըստակներու գինը կորոշէր, վճիռ կուտար. ամմէն քամպիալ-ները կամ բօլիցաները վճարելու առենը՝ ամսդրտամին դրած գինին վրայ կընայէին. ամմէնուն կանոնը անիկայ էր։ Ամսդրտա-մու նաւահանգիստնալ իբր աշխարհիս ամ-մէն վաճառականներու թագաւոր ըլլալով. ամմէն տեղէն նաւեր կուգային իր ուզը՝ շատ օր կըլլար որ՝ հարիւր նաւէն աւելի նեւրս կըմտնային, հարիւրէն աւելի դուրս կելլային.

Ըսանկ հարուստ կացութիւնը չուզեր պատե-րազմը, արդեւք կըլլայ իրենց վաստըկէն, անոր համար Փիլէմէնկը միշտ կընայեր որ խաղաղութի պահէ։ Իր երկրին դիրքը չու-նէր մէկ ամրութի մը թշնամիի դէմ կենա-լու, բայց եթէ մէկ քանի մը արտաւոյ՝ որ աշխարհիս մէջ մէկ երկիր մը չունի ան ամ-րութիւը. աս է որ՝ Փիլէմէնկին երկիրը ծա

վէն ցած է, ամէնքն ջուրերը թումբերով (պէնտերով) բռնըված են որ ան ջուրերը իրենց երկիրը չեն կոխեր: Թշնամին գալու ըլլայնէ՝ ան թումբերը վար կառնեն, ջուրերը չորս դին կըկոխեն, իրենք քաղաքըներուն մէջը կըգոցվին, թշնամին տեղ չունենար իր զօրքը մտցընելու, կելլայ կերթայ: Բայց երկրին դիրքը թէ որ աս դիւցէն մէջինեներուն օգուտ մը կըբերէ, մէկալ դիւացէնալ ուրիշ վնաս մը կըբերէ, որ որչափ խաղաղասէր ըլլան, ակամայ (զօռաքի) նեղը կըձգէ զիրենք, ծեծի մէջ խառնել կուտայ. վասն զի նեմցէն՝ Ֆրանսզը՝ ու Ինկլիզը՝ դրացի ըլլալով Ֆիլէմէնկին, իրեքնալ Ֆիլէմէնկէն զօրաւոր տէրութիւներ, հարկ կըլլայ Ֆիլէմէնկին ծեծի ատեն ատոնցմէ մէկին հետ միանալու, որպէս զի իրեքնալ մէկ տեղ իրեն թշնամի չունենայ, մանաւանդ Ֆրանսան, որ ամմէնէն վտանգաւոր էր. ու ԺԷ դարուն մէջը շատ հեղ սպառնացեր էր Ֆիլէմէնկին նոր հասարակապետութեը վրայ: Աս Ֆրանսզին վախը պատճառ կըլլար որ Ֆիլէմէնկնալ դաշնակից կըլլար կըկապվէր նեմցէին ու Ինկլիզին հետ. ան երկուքնալ սիրով կըպահէին իրենց բարեկամութիւը Ֆիլէմէնկին հետ, որ թէպէտ քիչվոր էին, քիչ զօրք ունէին, բայց Ֆիլէմէնկին անհատնում հարստութիւնը իրենց պէտքը կըլլար:

Նոր Շդատ հալդեռը՝ որ 1747ին եղավ, Կուիլլէլմոս Կարոլոս Հենրիքոս, շատ սիրելի

եղաւ Փիլէմինկներուն, շատ օգտակարութիւններ պիտոր ըներ, բայց 1751 Հոկտ. 17. տկարանալով (հիւանդանալով) պառկեցաւ. 22ին մեռաւ. պզտիկ զաւակ մը թողուց երեք տարեկան, անոր համար իրեն կնիկը դրին կառավար Փիլէմինկներուն վրայ, ու դայեակ և պահապան տղին վրայ. բայց մեռնողը առուտուրը շատցնելու համար որոշե հետև առաջարկերեր որ Սպառնաւահանգիստ (բօռթօ ֆռանքօ) ընեն, ան պատճառով շատ կոխիմներ բացվեցաւ, բան մը չորոշվեցաւ. վասն զի զանազան գաւառնեերուն զանազան կարծիքը ու շահասիրութիւնը ասանկ տարամտութիւն շատ յաճախել կուտայ ան տէրութեանը մէջ որոնց խառն է կառավարութիւնը, ուրիշ դրդուիչներալ չէին պակասեր ներքին հակառակութիւն ցանելով, ինչպէս 1754 Ոսկար մէյմը մեռաւ, որուն մեռնելը ժողովուրդը ուզեց կախել. աս պատճառով որ՝ 1748 խիստ տաքնալով խօսելով գլուխ էր եղեր ապստամբներուն և խռովութեան, հարկ եղաւ ժողովուրդը զսպելու համար զինուորներ խրկել:

## Փրանսայի Վրայ.

1750:

Մեծազօր Փրանսային թագաւորը ԺԴ լուիզը որ մեռաւ 1715. խիստ ուժովցուց Փրանսային ազգը, զօրաւոր անունը նաև իր յաջորդին ԺԵ լուիզի թագաւորին օրնալ

անգամ ծեծերուն պատճառովը՝ իրենն զօր-
քը ջարդըվելով՝ երկիրը աւերվելով՝ երկ-
րագործ ու վաճառական մարդիկները պակ-
սելով ժդ Լուիզիին ծերութեան օրերը խիստ
գէշ վիճակի մէջ ընկերեր Ֆրանսան։ Ա-
նանկ որ իր մեռնելուն ատենը 1715, մէկ
մասը տէրութեան եկամտին՝ օտարներուն ձեռ-
քը կերթար այնչափ պարտքերուն համար՝
որ պէսպէս պատճառով եղերէր, որուն
ճար մը գտնալ անկարելի կերեւնար։
Ատեւի նստօղ ժե Լուիզիին տղայութեան ա-
տենը օռլէանս դուքսը՝ որ թագաւորահայր
էր եղած, տեսնալով որ նաղտ ըստակ քիչ
կար, իրեն խելացիութիւնը ու ճարտարութիւնը
բանեցուց պաշարելու որչափ կարելի է, բայց
անոնքալ վտանգաւոր եղան։ Պրեսդ նա-
ւահանգստին մէջը հնդստանի բաժանոր-
դութիւն կամ քօմբանիա բացաւ, անով քիչ
մը օգնութիւն եղաւ, թէ չէ՝ ամմէն ազգը
բացը պիտոր ելլար, հարկ եղաւ նաեւ ինչ
որ ոսկի արծաթ կար ժամերուն մէջը, իշ-
խաններուն քովերը, ամմէննալ հալել, ըս-
տակ կոխել, որ ատեն մը շատ վնաս տըւաւ
արուեստաւորներուն։ Անոր տղայութիւնը
անցուց ժե Լուիզին ու մեծցաւ, կառավա-
րելու շատ հոգ չունեցաւ, բայց բաղդ ու-
նեցաւ աղէկ ընտրութիւն ընել պաշտօնա-
տէրերուն, վասն զի իրեն վէզիր քարտի-
նալ Ֆլէուրին ըրաւ, որ իր վարպետն էր՝
և խիստ խելացի մարդ. իրմէ առջինները
փարթամութիւն կըցըցընէին ինչպէս որ կը-
վայլէր իրենց իշխանութեան աստիճանին,

բայց Փլիւռին իր մենծութիւնը ցըցուց չափաւորութեան ու պարզութեան վրայ, ասով իր անունը երեւելի ըրաւ ։ Շատ կըզգուշանար մարդու արիւն թափել, անոր համար պատերազմ ընել կարգելէր ․ իր խելքը միտքը տըվերեր Փրանսային պարտքը թեթեւցընելու՝ որ չափէն աւելի շատցերեր, ծեծ ընելէն կըփախչէր, ուրիշ տէրութեց աւելի միջնորդ հաշտեցուցիչ ըլլալ կընայէր՝ որ շահ կըբերէր, քան թէ յաղթող ըլլալ՝ որ միայն անուն կըբերէր՝ բայց շատալ կորուստ ։

Սանկ խելացի կարգով տնտեսութիւն իրեք տարի ու կէս կառավարելով Փլիւռին՝ մենծ դեղ դըրաւ եկամուտին համար, ու ցըցուց որ՝ թէ որ աս ճամբով երթան Փրանսացիները, խազնային պակսութիւնը կըլընար կըշտկըվէր, բայց Զ կարօլոս կայսեր մահը՝ որ աւստրիոյ տանը վերջինը եղաւ մանչու դիւացէն, բոլոր մտքին դըրածը ավրեց ։ Ասան զի Փլիւռին նաեւ Թագաւորը կուզէին որ՝ աւստրիոյ տանը յաջորդութիւնը մնայ Մարիամ Թերեզինային ու իր զաւկըներուն վրայ, (1) բայց Պէլլիլ ըսված երկու եղբայրները՝ որ Թագաւորին ու Ռիշլիւ դքսին խիստ աչքն էին, եւ պռօլիո մառէշալին ու Նօայլին հետ մէկ տեղ շատ իշխանութիւն ունէին, զօրաց վրայ կըխառնըվէին,

---

(1) Որովհետեւ աս Մարիամ Թերեզինան աղջիկնէկ զաւակն էր վերոյիշեալ կարօլոս կայսեր, ու արդէն մանկան թագուհի էր պսակված ։

ծնծղի ատեն շատ շահ կունենային ։ Անոնք բոլոր Փրանսային արքունիքը գրգռեցին ծեծ բանալու, որպէս զի ոչնչացուցանեն աւստրիական տէրութիւնը, որ Փրանսային հետ միշտ հաւասար տէրութիւն մըն էր եղած, երկուքին մէջը շատ հին թշնամութիւններ էին պատահած, աղաղակ կըվերցընէին ըսելով, սա առիթը (փուրսատը) չփախցընենք, թէ չէ՝ չենք կրնար մէյմը-նալ զանիալ աւստրիական տունը ցածցընելու ։ Աս բանին շատ ակամայ հաւանութիւն տըվաւ Փլէօռին, գիտնալով որ դէմ էր արդարութեան ու հաւատարմութեան, չէր ուզեր որ իր 85 տարըվան ծերութիւնը ու իր համբաւը վտանգի մէջ ձգէ պատերազմելով ։ Բայց երբեմն նախանձօզներ իր սիրտը երերցուն համար կըձանձրընէին որ՝ Փլէօռիէն ատենները (1) ամենէն ջանք կըքանանեցընէին որ աւստրիոյ տունը ցածցընեն, հիմա Փլէօռին կուզէ որ մէկ նոր աւստրիական տունմընալ ոտքի վրայ հանէ թէ որ կարելի է ։ Աս պատերազմը առջի տարիէն ետև ձախորդ գնաց, ինկիլըզը Փռանսային նաւերը տեղ տեղ կտորտեց. իսկ ցամաքին վրայ իրեք մեծ բանակ (օրտու) պահելու համար՝ հարկ եղաւ Փրանսային նորէն պարտքի տակ մտնալ ։

Աս քարտինալին մեռած ատենը՝ իրեն հետ

---

(1) Ասոնք են քարտինալ Մազզարինը ու քարտինալ Ռիշլիէն ։

կործանումը, մնացեալ կառավարութէն գլխա-ցէն։

Կառավարութէն պակասութիւնը միշտը եղաւ Փրանսայի քաղաքամէջներուն ներհակու-թիւնը Թագաւորին դէմ. վասզի անոնց ատեն ու քաղաքամէջն ընտանդը դատաւոր էր միայն դատերու (ատեաններու) վրայ, բայց մէ-ջինները համարձակեցան կամաց կամաց ի-րաւունք ունենալ ամմէն Թագաւորական հրամանները քննելու. այսինքն՝ Թագաւո-րական հրաման մը անցուկ ընելու համար, պէտք էր քաղաքամէջներեան ստորագրելին, իրենց հաւանութիւնը տալին, անանկ որ կառավարութիւնը՝ կարգադրութիւնը՝ չէր կրնար 'ի գործ դրվիլ, և մէկը չէր պարտաւորէր հնազանդելու, ինչվան որ քաղա-մէջը չի հաստատէր, որպէս զի օրէնքի ուժ ունենար։ Աս անկարգութեան (1) եղաւ որ՝ ժողովուրդը զքաղաքամէջը երբեմն կը-սեպէր իբր միջին իշխան Թագաւորին ու ազգին մէջը՝ երբեմն վերագոյն քան զկա-ռավարները ու աւելի իշխանութիւն ունե-ցող քան զինքը Թագաւորը։ Փարէզին մէ-ջի եղած քաղաքամէջը գլուխ կըսեպվէր ամմէն տասներչորս քաղաքամէջներուն վրայ՝ որ Փրանսայի մէջը կային, և ժողով մը կըձևացընեին, որ կարելի է թէ անչափ հեղինակաւոր զօրաւոր կըսեպվէր, ինչչափ

(1) Աս անկարգութեան պատճառ եղաւ անչափ վրէժ-ման ու հակառակութեան ԺԴ. ու ԺԵ Լուիզի Թագա-ւորներուն ատեններըը։

էր ինկվիզիցին բառուլանձնոգը, թէպէտ և բոլորովին տարբեր էր թէ կերպին դիտացէն, թէ ընտրութեր և թէ մէջի եղօղներուն դիտացէն։ Մէջի եղօղներուն պաշտօնները ամենքնալ կըծախվէին, անոր համար միայն ազնուականք կրնային ծախու առնել շատ ըստակ տալով, և շատ հեղ երիտասարդները կառնէին, որ քիչ գիտէին, և քիչ փորձ ելին, միայն հրամայել գիտէին իրենց պաշտօնին ուժովը, բայց իրենք ամբարտաւան ու թոյլ ըլլալով, զիրենք ժողովրդեան շահը ուզող կըձևացընէին, միշտ ատելութի ունէին ժողովրդեան դէմ նաև արքունեացը դէմ, թէպէտև թագաւորազունքալ հոն պաշտօն ունէին։

Մէկ պատճառնալ Փրանսայի կառավարութիւր ավրօղ՝ եղավ կնիկ մարդիկներուն խառնըրվիլը կառավարութեն մէջ. աս պակաստուխս թէպէտ 300 տարվընէ վեր Փրանսայի արքունեացը մէջ մտած էր, ինչպէս որ Հենրիքոս Թագաւորին ատենը 1500ին բուսադրեա խաթունը կիշխեր, բայց ԺԵ լուիզին օրը խիստ շատցաւ։ Աս Թագաւորս քանքարաւոր խելացի էր. իր վարքը վարպետ դաստիարակի տակ կրթըված ըլլալով աղէկ էր իր արքունեացը մարդիկներուն բաղդատելով. առջի տարիները 15 տարիէն աւելի իբրև հայր մը եղավ իր ժողովուրդին վրայ. Թագուհին հետ մէկ տեղ խիստ սիրով կեցաւ, որ կըսվէր մարիամ լեցինսքի՝ լեհի Թագաւորին աղջիկը, որ լուիզին երկու տարով մեծ էր, խիստ

կայեց ։ Ըսանկով ալ խաթաւնը Ֆրանսայի թագաւորութենը թէպէտ շատ մնաս ըրվաւ, ինչվան կործանումը բերաւ, ինչպէս որ՝ ետեւէ ետեւ պիտոր պատմենք, բայց շատ մարդիկներուն աղէկուն ըրաւ ։

## Սպանիայի վրայ .

## 1750 ։

Սպանիայի վրայ թագաւոր 1746էն ետեւ կընստէր Ֆ. Ֆերտինանտոս, երկրորդ տղան Ե. Ֆիլիպպոսի պօւպօնեան, իր առջի կընկանէն՝ որ կըսվէր մարիամ լուիզիա գաբրիէլա սավօյացի ։ Բախտը նստածին պէս Ֆերտինանտոս բարերարութն սկսաւ ընել ազատութն տալով բանտարկեալներուն, ներում տալով ապրանք փախցընօղներուն ու փախչօղ զինուորներուն, շաբաթը երկու օր սահմանեց դատաստան ընելու իր ժողովրդեան համար ։ Իր առջի հոգը եղաւ հօրը կտակը բանալ որ ըրած էր 1724, նաեւ ուրիշ մըն ալ 1734. ան կտակին մէջը ինչպէս որ սովորուն էր՝ 200 հազար ռիալի եկամուտ թողուցերէր Ե. Ֆիլիպպոսի որբեվարի թագուհիին համար, (որ կըսվէր Եղիսաբեթ Ֆառնեզեան.) եւ երկրորդ կին նոյն Ֆիլիպպոսի, մարիամ գաբրիէլա թագուհիին մեռնելէն ետեւ ։ Ըսկէց զատ 600 հազար ռիալի եկամուտ՝ եւ Սը. Իլտէֆօնսին դարպասը (սէրայը) իրեն թողուցերէր քանի որ ողջ մնայ . մուրալ ուզէ՝

թող երթայ կրսէր. Թէեւ սպանիայէն դուրս ելլայ՝ ան ատենուան իրեն թողված եկամուտներնալ թող վայելէ։ Կարգադրեր նաեւ որ իմ յաջորդս խորհրդակցի եղիսաբեթ թագուհիին հետ, ինչպէս որ եսալ շատ հեղ խորհրդակցելով աղէկ խորհուրդներ առեր եմ իրմէ։ Նանք ամենքն կատարեց նոր թագաւորը փերտինանտոս, չիթողուց որ մատրիտէն դուրս ելլայ թագուհին ինչպէս որ սովորած էր, հապա երկու դարպաս քովէքով զարդարեց իր ամենն բանտովը, մէկը թագուհիին՝ մէկալը քառտինալ տոլէին համար. շատ սէր ցուցուց իր խորթ եղբայրներուն վրայ, ու եղիսաբեթ որբեվարի թագուհիին վրայ։ Նայց մեծերը վախնալով չըլլայթէ եղիսաբեթ թագուհին աս թագաւորիս վրայալ իշխէ, ինչպէս որ կիշխեր Ե փիլիպպոսի առջի թագաւորին վրայ, ջանացին պաղեցընել։

Թագաւորականն եկամտին ավրըվիլը պատճառ եղավ եղիսաբեթ թագուհին հեռացնելու, ինչու որ եղիսաբեթ թէպէտ բադինօ վէզիրին կառավարութիը՝ (որ պաշտօնը առնելէն առաջ ճիզվիթ էր։) տարեկան եկամուտը թագաւորին հասուց 24 միլիոն ռիալի, իսկ զինուորութիը 70 հազար մարդ, բայց փառասէր ըլլալով կուզէր որ՝ իր մանչ զաւկըները մէյ մէկ թախտի վրայ թագաւոր նստեցընէ. իր երկրորդ զաւակը կարոլոս նաբոլիի վրայ թագաւոր դնելու համար երկան պատերազմ ըրավ. ասանկով եաւէ եաւ իրեք պատե-

պաղել՝ ընել տալով էր երկանք ամէն հէ-
ռու տեղէր միայն էր կամքը առաջ տանե-
լու համար, խաղնան խիստ աղքրացուց,
ծովու վրայի ուժը և վաճառականութիւնը
խիստ տկարեց ծեծ ընելով ու շատ մարդու
եկամուտ կապելով: Անոր համար Փէրտի-
նանտոս մէկ ընդհանուր նորոգութիւն մը
ըրավ տնտեսական, շատ հազարապետնե-
րու և ուրիշ թագուհիին մարդիկներուն
թոշակները (էօլէֆէնէրը) կտրելով. Նաև
թագուհիին եկամուտներնալ շատ կտրե-
ցին քիչցուցին, ասկէց խիստ դժարը ե-
կավ Եղիսաբեթ թագուհիին. Ֆերտինան-
տոսալ անոր հակըցուց որ՝ ամենը եկավ
քաշվելու չորս քաղքըներուն մէկին մէջը՝
որ մեռնող թագաւորը կտակին մէջը թո-
ղուցեր էր իրեն նստելու համար. Եղիսա-
բեթ թագուհինալ նը իլտէնֆօնսին դար-
պասը գնաց քաշուելու տողովը:

Ֆերտինանտոս աղէկ թագաւորներէն մէ-
կը եղավ, որ շատոնցմէն չէր տեսած սպա-
նիան. աւելի շատ աղէկութիւն ըրած կըլլար
ժողովուրդեան, թէ որ աւելի ողջութիւն ու-
նենար, իրեն կառավարութեան խառնըվող
(որոնց աւելի մտիկ կըդնէր) էին թագու-
հին Մարիամ Վարվառէ Փօրթուկալցի, Էն-
սէնատեան մառաքէզը իր վէզիրը, Կարօլօս
պրօսքի նաբօլցի ասպետը, որ աս դարուս
մէջը երևելի երաժիշտ եղաւ՝ Ֆառինէլլօ
ըսվելով: Ինչոց դառնալ կուզէր հօրենա-
կան պարտքը վճարելու համար, և մարդ-
շատցընելու սպանիա, որուն մէջը ան ատե-

ղավ որ մատրիտի մէջ բնապատմական հան-
դիսարան մը շինել տըվավ, որուն մէջը
կարգաւ շարեց որչափ հանքեր (մետաղ-
ներ), ոսկեր, ժժմունքներ, թռչուններ,
որ ամերիկայ կըգտնըվին, նաև գետնի տա-
կէն ելած փղոսկրներ, որ շատ զարմանք
բերել կու տայ կարգացողներուն, որով
հետև չիդիտցըվիր որ հնուառաջ փիղ դըրա-
նըված ըլլայ, իսկ հիմա չիգտնըվիր, ու հան-
դիսարանս ետևէ ետև ավելցուցին:

Ամերիկայի հիւսիսային դին եղողները շատ-
տապակութեն հետ էին. Աքաքիս և Սու-
ուօնք ըսված ժողովուրդը միշտ սպանիացոց
վրայ կըվաղեին, անհանգիստ կընեին, ինչ
պէս նաև մէքսիքոյի մէջ շատ ջարդ ըրին,
անոր համար երբոր եւրոպայի մէջ խաղա-
ղութիւն եղավ, սպանիան իր զօրութիւնը
դարձուց ամերիկայի վայրենի մարդիկնե-
րուն վրայ:

## Փորթուկալին վրայ.

## 1750:

Աս տէրութեն որուն թագաւորը իրեն մակ-
անուն ունի Ամենահաւատարիմ, վերի աշխարհ
պզտիկ բան մընէ, երկու միլիոնով կըլմըն-
նայ մէջի մարդը, բայց իր ուժը մենծու-
թիւնը առաջ հիմնտիստան էր, ուր վար-
պետ նաւապետներ ունենալով պէնտ ա-
ռաջ եւրոպացոցմէ իրենք հոն գացին, տեղ-
վանք առին, եւքը եւրոպայի զօրաւոր տէ-

րութիւնները անկէց հալածեցին, փորթուկալին միայն վարի աշխարհին տեղվանքը՝ ուրանք հոն ալ գացեր առերէին։ Եւրոպային մէջը սղտիկ ըլլալով անուն չունի, բայց իր անուանի չըլլալը իրեն մեծ հանգստութիւն կըբերէ, շատ ծեծերէն խալըսելով. աւելի հանգիստ կընար մնալ, թէ որ դրացի տէրութիւնները զինքը հանգիստ թողուին։ Անկլիզին հետ խիստ աղէկ է, Անկլիզնալ իրեն հետ խիստ բարեկամ է, միշտ կըպաշտպանէ, վասն զի շատ շահ ունի անկից. բայց Անկլիզը շատ կըխառնըվի վրան, քիչմընալ սպանիան, երբոր աս երկուքը կռիւ կունենան, փորթուկալնալ ակամայ (զօռաքի) կռիւներու մէջ կըխառնեն. փորթուկալցիք չարքաշ մարդիկ ըլլալով երկան Ճամփորդուն մանաւանդ ծովու վըրայ աղէկ կըդիմանան, շատ կըվաստըկին։ Թագաւորոց ցեղը կամ տունը կըսվի Պրականցեան, որ 1640էն թագաւորել սկսաւ. աս ատենվան թագաւորը կըսվէր Ե յոհաննէս, որ անշուք տկար մամածակ մարդ մընէր, ուրիշ բանի վրայ սէր չունէր անչափ՝ որչափ եկեղեցական արարողութեց վը։ Փորթուկալին մեծ եպիսկոպոսին համար՝ որ պատրիարգ կըսվէր ամմէն տարի հռոմայէն նոր նոր արտօնութիւններ ու փառաւորութիւններ առնել կուտար, այնչափ որ՝ օր մը ԺԲ կղեմէս պապը ըսավ։ Ուրիշ թագաւոր մը շատ պիտոր աշխատի աս աւելորդ ջնորհքները արտօնութիւնները վերցընելու, քան որ հիմա յոհաննէս թագաւորը կաշ-

խատի առնելու ։ Ըստ քանէրուս համար շատ ըստակ դուրս կելլար փորթուկալի երկրէն ։ Ամմէն քանէն աւելի զարմանալին ան էր որ՝ մէկ մարապետ մը իրեն խորհըրդական էր ըրած, անոր խորհրդովը կընէր գրեթէ իր ամմէն քանը ։

Ըստ տարվանս մէջ յուլիսին եօթի օրը մեռաւ յոհաննէս, իր տղան յովսէփ Ա տեղը նստաւ. ասիկայ իրեք դիւանադպիր (սըռքէտաթիպ) ունեցաւ, Մէնտօզան, Կօռդէ ռէալ, ու Կառվալհօն. յովսէփ թագաւորը թէպէտ խելք ունէր կառավարելու, բայց հոն սխալեցաւ որ՝ իր իշխանութիը բոլորովին տըվավ վերօգըրեալ քառվալհօ յովսէփին ձեռքը, որ կըսվէր Պօմպալի մառքէզ. ասիկայ եօթէն իր վէզիրը ըրավ, որ անանկ բացարձակ իշխանութի քանեցուց ամմէն քանի վրայ՝ որ եղավ մէկ չար բռնաւոր մը, պատիժ պատուհաս մարդու, ինչպէս որ ետեւէ ետեւ ունինք պատմելու ։ Երբոր յովսէփ թախտը նստաւ, թէպէտ տեսաւ որ ժողովուրդը հանգիստ էր, որովհետեւ մէկ տուրք մը վրանին չկար, թագաւորութեան պարտք մը չունէր, բայց կառավարութիը անհոգ թողուցած էր, ձեռագործը՝ վաճառականութիը՝ ընկած, ծովու ցամաքի ուժը տըկարացած, անանկ որ՝ պարպըրըշ ծովապատանիները (խուրսանները) փորթուկալի նաւերու վրայ կըվազէին, ինչվան դաշտ գետին մէջը՝ որ լիզպօն մայր քաղքին առջին է ։

փորթուկալին ներսի ու դրսի առուտուրը՝ ամէննալ ինկիլիզին ձեռքն էր, արքունեացը (սէրային) ու լիզպոն քաղքին քանի բան պէտք ըլլար, ինկիլիզները պիտոր հոգային։ Ջօրքի դիրայէն՝ 25 հազար հողի ցամաքի վրայ պատրաստ ունէր, իսկ ծովու վրայ 8 . 10 մեծ նաւ, քանի մընալ ֆուխաթա։ Յովսէփ թագաւորը իմանալով որ՝ իրեն հօրեղբայրը մանուէլ՝ շատ լոյս կընայ տալ, սիրով իր քովը կանչեց, վասն զի աս մանուէլ առաջ ավըրված էր մեռնօղ թագաւորին հետ՝ որ իր եղբարն էր, հաշտըրվելէն ետև՝ փորթուկալին երկիրը մտաւ, բայց իր գեղին տունը քաշված կընստէր։ Աս մանուէլին հետ խորհուրդ ընել սկսան՝ որ թագաւորութեան պակասութիւնները շտկեն, պատերազմական նաւեր շինեն, ոսկին արգելեն որ դուրս չելլայ. վասն զի արգելքները մտիկ չիդնելով՝ ամմէն տարի շատ ոսկի դուրս կըփախցընէին գաղտուկ, մանաւանդ ինկիլիզները։

Ամերիկա եղած պրասիլ աշխարհը մէկ մեծ աշխարհմընէ փորթուկալին տակը, իրեն հարստութիւը աս պրասիլ աշխարհէն է, մէջը իրեք միլիոն ու 500 հազար մարդ բնակիչ ունի. 14 գաւառ կըբաժնըվի։ Աս պրասիլ աշխարհը վեց ամիսէ վեց ամիս շատ գանձ կըխրկէր փորթուկալ, տարին գրեթէ 18 միլիոն խաչանիշ ոսկի, որ իրենց ըռտակն է. աս ոսկին (որ անցած դարուն սկիզբը գտան), կըհանէին հանքերէն ու աւազներէն (մատէնններէն ու խումերէն),

որ գետերուն մէջը կան՝ բայց աւելի գանձ բերողը իրենց՝ եղավ Ելմասին Հանքը, որ 1740ին ատենները պատահմամբ գտնըվեցաւ ալրաղիլուն մէջը աս կերպով: Գերիներէն ոմանք որ ոսկի փնտռելու համար դրված էին լա սէռռա տօՖռիօ ըսված գաւառին մէջը՝ երբեմն երբեմն պզտիկ խորտուբորտ քարեր կըգտնային բայց փայլուն, աս քարերը իբրև անպիտան բան մը մէկ դի կընետէին: Հանքի վրայի վարպետներէն ոմանք դիպուածով տեսնալով, շատ քննել սկսան աս քարերս, նաև ալմէիտեան պետրոսին տըվվին որ քննէ, որ էր ընդհանուր վերակացու փորթուկալի հանքերուն վրայ: Ասիկա որ Հինտիստան (1) կոտ քաղաքը կեցած մարդ էր, սկսաւ տառակուսիլ արդեօք Ճէվահիր է՝ թէ չէ, իրկեց փորթուկալ որ քննեն. փորթուկալը տէրութինալ իրկեց աքունհային, որ իր դեսպանն էր Ֆիլէմէնկի մէջ. անիկայ տըվավ արուեստաւորներուն, երբոր չարխէն քաշեցին, գտան որ ամմէննալ աղէկ էլմաս էին, Ջուրէրնին Հինտիստան ելած էր

(1) Հինտիստան Ելմասին ամմէնէն հին հանքը Կօվէլ գետին քովն է, որ մօղօլին օւրքսա ըսված Թագաւորութենը մէջ կըբղխայ, ու գանդըկէս գետը կըխառնըվի: Պօւնէօ կըղզիին մէջինալ կըհանէին՝ բայց քիչ: Իսկ Ելմասին մեծ մասը որ աշխարհ կըպըտըտին, շատ խարձով կըգտնան ան լեռներուն երկան գօտիին վրայ, որ քոմօրին հրուանդանէն ինչվան ալէնկալա կերթան. մանաւանդ կօլքօնտա ըսված տեղը: Տես 1812 Եղանակին մէջ. Թղթ. 84:

մասէն աւելի ձերմակ, աւելի խտակ, բայց անկէց քիչ կարծր, քիչ փայլուն, անոր պէս չեն կրնար բանուիլ։

Երբոր աս բանս լսեցին ծովեզերեայ պրա-զիլու բնակիչքը՝ վրայ Թափեցան աս քա-րերս ժողվելու, այնչափ շատ գտան որ՝ 1746ին եւրոպիա բերած ելմասնին եղան 1546 ունկի. (1) ետեւէ եւս նաւերով եկած ելմասներուն կշռուքը հասաւ 10146 ունկի. անով ելմասին գինը վար ընկաւ. Թէ որ անանկ երԹար՝ նէՃէֆ քարին գինը պիտոր հաներ։ Փորթուկալին տէրութիւնը մտածե-լով որ՝ աս պատուական քարին յարգը (խի-տիպարը) ասանկ չիկոտրի, մէկ բաժանոր-դութի (քօմբանիա) մը դրաւ, որ անիկայ միայն կարող ըլլայ աս քարերս հանելու ծախելու, ուրիշը չիկրնայ հանել. բայց պայմանաւ դրաւ որ միայն 600 սեւ գերիներ բանեցընէ աս քարերը հանելու, Թէ որ ուզէ աւելի մարդ բանեցընել, ամմէն մէկ բանւոր մարդուն համար՝ հազար ռիալի վճարէ, երբոր մէկ քար մընալ որոշված չափէն աւելի մեծ գտնըվի, ան քարը Թա-գաւորին տըրվի. ով որ բաժանորդութէ դուրս գաղտուկ ելմաս քար հանէ՝ սպանվի։

Տեսնալով որ աս եռքի պատուերքը չիբռնը-վիր հանքին (մատէնուին) քովը որչափ երկիր-ներ կային, բնակիչները մէջէն հանեցին, ա-նապատ Թողուցին, անանկ որ՝ հիմա 300

(1) Մէկ ունկին 8 տիրհէմ է։

մղոնի չափ երկրին մէջը միայն մէկ դեղ մը կայ, ուր բանվորները կըբնակին, որք են գերի վերոյիշեալ բաժանորդութեան, մնացածը մէկ ահռելի անապատ մընէ, վարուցանալ չիկայ։ Աս չիբանված ելմաները լիզպօն կուգան, որ փօրթուկալին մայր քաղաքն է. հոն ինկիլիզները՝ Փիլէմէնկները՝ ծախու կառնեն, իրենք բանեցընելով ամէն տեղ կըխրկեն։ Երսուն տարի մը առաջ հրեայ մը աս ելմաներէն մէկ ելմաս մը ծախեց 219 քուատ, ըսել է 80 քուատ աւելի քան ան ելմասը՝ որ 1476, յանդուգն կարոլոս պուրկօյնային դուքսը կորսնցուց մօրատլին պատերազմին մէջ ըղվիցցերիին երկիրը, և հիմա դօսքանայի դըքսին ելմաս կըսվի. 26 քուատալ աւելի քան մոսկովի թագաւորին ունեցած ելմասը, երկուքնալ այնչափ անուանի, որոնց վրայ տես 1819 Եղանակին մէջ. թղթ. 90։ Փորթուկալի թագաւորին քովը աստնցմէ կըգտնըվի մէկ ելմաս մը 1680 քուատ, կամ ուրիշ հաշիւով 96 տիրհէմ, բայց դեղինի կըզարնէ, և քիչ փայլուն է։

## Եռաքօլինի վրայ.

1750։

Առաջ Նաբօլի իտալիային խարուսնկ ծայրը մէկ երեսէ ձգած հեռու գաւառմընէր եղած սպանիայի, առանց կառավարութեան թողուցած, չունէր ուժ ոչ ծովու վրայ՝ և

ոչ ցամաքի վրայ. փոխարքայ մը կընստէր հոն սպանիայի Թագաւորի դիւացէն՝ որ շատ հեղաւ կըփոխուէին. ասոնք օտար ըլլալով ու ժամանակաւոր՝ մինակ իրենց շահը կընայէին. ժողովրդեան աղէկութիւնը չէին հոգար, վրանին ամենևին գութ չէին ունենար, միայն զիրենք հարստցընել կըհոգային: Տարվէտարիաւ շատ ըստակ Նաբօլիէն դուրս կելլար, սպանիա կերթար. 230 տարի կար որ ասանկ փոխարքայներէն կառավարվելով Նաբօլի շատ ավրըված մնացերէր, ուրիշ դիւացէն անուն չունէր որ՝ մինակ իր գետնին բարեբեր ըլլալուն համար, ու իր զուարճալի դիրքը համար. անկէցաւ եղերէր որ՝ Նաբօլցիները թէպէտ քանքարաւոր մարդիկ էին,, բայց իրենց վրայ մէկ կոպտութիւն մը կար ընդհանրապէս:

Աս անկարգութիւնները կամաց կամաց շտկըվիլ սկսաւ տասնըչորս տարվանը մէջ՝ քանի որ կարոլոս Թագաւորեց Նաբօլիի վրայ, որ վերոյիշեալ սպանիայի Թագաւորին փերտինանտոսի եղբարն էր. ասիկայ փերտինանտոսէն աւելի ողջութիւն ունենալով, ու քանքարաւոր ըլլալով, խիստ հոգ կըտանէր որ Նաբօլին իր երկիրը շէնցընէ. վասն զի տեսաւ որ՝ ազատական արուեստները ընկած էին; վաճառականութիւնը տկարացած, երկրի տէր եղօղները՝ որ պարոն կըսվին, և ուրիշ մեծերը՝ մէյ մէկ բռնակալ եղեր էին մէկէ մը վախ չունենալով: Ասիկայ իր աղէկ կառավարելովը՝ արուեստը, օրէն-

քը՝ գիտութը՝ ու ծովու առուտուրը ծաղ-կեցուց , մարդը շատցուց , բարի բանէրու սէրը ու բարեկարգութիը կամաց կամաց իր ջանքովը անանկ մտուց հոն՝ որ 1760ին զանըրված Նաբօլցիք ան չէին , ինչ որ երսուն տարի առաջ կերևային ։

Կառավարութէ մէջ աւելի խառնըվող էր Թագուհին մարիամ ամալիա սաքսօնիացի, սակայն խորհուրդի մէջ կըմտնար (1) , ու շատ սիրելի էր Թագաւորին , միայն իր խըռտութիէն կըվախնային ․ ասանկալ երևելի կառավարող էին մօնդալլէկօ դուքսը որ վէզիրն էր ․ գրիգոր մառքէզը ըսքվիլլաչեան՝ որ եկամուտի վրայ էր , և բեռնարդոս մառքէզը Տանուչչի Ֆիօռէնցացի, որ ամմէնէն կարդացող ըլլալով ամմէնէն զօրաւոր էր ։ Աս անուանի մարդը ըսդիա գեղըն մէջը ծնած էր , որ դօսքանային քազէնդինօ գաւառին մէջն է , իր հայրը ձեռահութէ դասատու էր , ինքնալ օրէնքի դասատու էր բիզային համալսարանին մէջ ․ 1734 ձմեռը սպանիայի զօրքը հոն կեցած ըլլալով , մէջէրնէն մէկ զինուոր մը իր ընկերը մեռցընելով ժամը փախերէր , ուսկից դուրս հանելով բռներէր աշխարհական դատաւորը ․ աս բանիս վրայ դանուչչին մէկ գիրք մը շինեց ջատագովելով դատաւորական իրաւունքը , մէջը կըցըցընէ որ՝

(1) Ըստ որում սովորութիւն էր որ՝ Նաբօլիի Թագուհին երբոր առջի մանչ զաւակը կըծնանէր , խորհուրդի մէջ կըմտնար ։

որ տեղը պէտքը չէ ապաստան ըլլալ չարագործ ու արիւնահեղ մարդիկներու ։ Այս գիրքս իդալիայի շատ իրաւագէտներու հաճոյ եղաւ. ստեփաննոս կոմսը որ Թագաւորահայր էր, շատ համարում ունեցաւ վրան, Թէպէտ արքեպիսկոպոսին ու հռոմայու անհաճոյ եղաւ. աս գրքին համարումովը դանուշչին ճանչցըվեցաւ, անուն հանեց, որուն պաշտօն մը տըվըին սպանիայի զօրացը վրայ ։

Աս դանուշչին խրատ տըվավ Նափօլիի Թագաւորին՝ որ ամ̃ բանէն առաջ ասանք ընէ. մէյմը կալուածներուն անկախութ̃իը ոչնչացընէ ։ մէյմընալ հռոմայու հասկըցընէ որ՝ ասկէց ետքը չիսեպէ Նափօլին իբր մէկ յաւելուած երկիր մը տէրութե̃, և հռոմայէ կախեալ, ինչպէս կըսեպվէր ինչվան հիմա, ու աս բանիս համար ընծայ կըխըրկէր հռոմ ՉԻՆԷԱ ըսված, (որուն վրայ ետքը ունինք պատմելու), հապա դըրացի Թագաւոր մը Թող սեպէ, վասն զի աս բանս բացարձակ չիկրնար քաշել ։

Ամմէն տարի Նափօլի քաղաքին մէջը խելացի օրէնքներ դուրս կելլային զանազան անկարգութ̃ինները շտկելու, և շահաւոր կանոններ խօթելու դատաստաններու մէջ, որպէս զի հարուստն ու աղքատը՝ զօրաւորը ու անզօրը՝ միակերպ պատժըվըին, երբոր յանցաւոր ըլլան ։ Խիստ շատ բազմութ̃ կային փաստաբաններու (ավօքաթներու), ու դատաստանական մարդիկներու՝ Պա-ԼԻԷՏՏ ըսված, որ դատ (տավա) ունեցող-

ներսուն արիւնը կըծըծէին ըստակ քաշելով, ասոնք ամէնը նայեցան որ քիչցընեն, բայց որպէս զի Թագաւորը ապահով նստի իր Թախտը կամաց կամաց սկսան ընել: Ասոր համար (1) շատ աշխատանքի կարօտ եղաւ նաբօլիին մէջէն վերցընել անկարգութիւնները, մանաւանդ կալուածներուն տէրվըտոց գոռոզութիւնը. անանկալ ըլլալով շատ մարդ կար որ կըձշգոհար աս նոր կառավարութեը վրայ, թէ ինչու անկարգութիւնները կըվերցընէ:

Մէկ դատաստան մը դըրին նաբօլիի մէջ Տորքուամէ անունով, աս դատաստանին հօգը աս էր՝ որ ներսի ու դըսի աւուտուրը ծաղկեցընէ, Թագաւորական եկամուտը էվելցընէ. ասոնք սկսան ձիշդ քննել եկեղեցականաց ազատ ըլլալը տուրքի դիւացէն՝ որով քիչ բան կուգար խաղնան, շատ մտածելէն ետև՝ որոնք որ աղէկ հիմ (թէ մէլ) չունէին, կամ ասելի վնաս կուտային Թագաւորին եկամուտին; ժողովըրդեան վըրայ ծանրութի կըլլային, անոնք ամէնը վերուցին: Նոն Թոյլտուութիւք որ առաջ տըված էր վանքերուն պարտէզին մէջը Թութթիւն տնկելու՝ վերջացընել տըվին: Ինչ կալուած որ՝ իր ժառանգութիւը աղէկ չիկըրցաւ ցըցընել՝ առին. և ուրիշ կալուա-

(3) Վասն զի ինչպէս կըպատմեն՝ նաև մեծին կոստանդիանոսի ատէնը հեշտ (խօլայ) եղաւ իրեն բաժնըված երկիրները միացընել, քան թէ նենգաւործութիւնները դատաստանին մէջէն վերցընել:

ծոց վրայ տուրքեր դրին, ասով թագաւորին եկամուտը՝ իրեք մասին երկուքը մէկէն շատցաւ, Զ. կարոլոս կայսեր ատենին եկամուտին վրայ 3 միլիոն տուքատ ավելցաւ։ Մէսսային եպիսկոպոսը ուզեց աս բանիս դէմ դնել, պաշտպանել ուզելով եկեղեցական իրաւունքը, բայց թագաւորէն հրաման եկաւ որ՝ շուտ մը Նաբօլիի երկրէն դուրս ելլայ, ասով ամմէնն ալ լռեցին։ Հռոմ մտածեց աս բանիս համար մէկ յատուկ ժողով մը սահմանել, բայց իմացաւ որ աւելի հոգ տանելու է Նաբօլիի դատաստանը աւելի առաջ չխտանելու համար, քան թէ պարտաւորել որ՝ իր ըրածները ետ կանչէ, անոր համար վճռեց որ՝ ասկից ետքը չափաւորվի եկեղեցականաց համրանքը Նաբօլիի ու սիչիլիայի մէջ, վասն զի այնչափ էր Նաբօլիի երկրին մէջը եկեղեցականաց բազմութիւնը, որ 80 հազարը կանցնէր, այսչափ բազմութիւնը պատճառ կըլլար սաստիկ դատաստան կտրելու։ Իսկ ամմէն ժողովրդեան համրանքը՝ ան ատենը գտան 5 միլիոն ու 300 հազար մարդ, Նաբօլիի ու սիչիլիայի մէջը։ Աս ճամփաներով ըստակ պատրաստեցին հարկաւոր բաները հոգալու, այսինքն՝ նաւեր շինելու, թերսանէները նորոգելու, և ուրիշ աղէկութիւններ ընելու, անանկով Նաբօլին ու սիչիլիան հասան ան վիճակը՝ ինչ վիճակի որ մէջն էին Բ. Ֆետերիքոսի սվէվիացիի՝ ու անճիոսեան ռոպերդոսի ատենը։

Օրքի դիպացէն՝ Նաբօլին 30 հազար մարդ

ունէր ոտքի վրայ, ծովու վրայ 4 մենծ նաւ-
ուներ, 8 շամպէք, 6 չէքտիրի, և ուրիշ
պզտիկ նաւեր շատ՝ իր երկան ծովեզերքը
պաշտպանելու համար պառապառըշներուն
ձեռքէն: Ասոնցմէ խալըսելու համար շատ
ուզեց Նաբոլին տաճկին հետ բարեկամա-
կան դաշնադրութիւն ընելու, թէպէտև
ֆրանսզը և ուրիշ ծովեզերեայ տէրութիւնե-
րը շատ դէմ կեցան, բայց սանկալ ընե-
լով չեղաւ որ Նաբոլին խալըսէր թունու-
զին ու Ճէզայիրին ասպատակուէ (խուր-
սանտութէ):

Առաջ նեմցէները տեսնալով որ՝ Նաբոլին
խիստ զատված էր իրենց երկիրներէն, օ-
րինակ առնելով սպանիացոցմէ՝ միայն կը-
նային որ՝ ինչ որ կրնան իրենց քաշէն առ-
նեն, երբոր իրենց ըստակ պէտքը կըլլար,
երկրին աւելի պատուական բաները դրաւ
(բաէհին) կուտային: Համան որ մէկ չէքտի-
րի մը կըշինվէր, պատրաստ կըլլար դուր-
սը ծովը ելլալու՝ որ խուրսանտները բռնէ,
ան ատենը խուրսանտները ծովեզերքը ցա-
մաքը կելլային, նաև Նաբոլի մայր քաղքին
մօտիկները կուգային: Աս էր բուն պատ-
ճառը՝ որ Նաբոլին ու սիցիլիան միշտ զբա-
ղեալ էին թշնամիներուն դէմ դնելու:

Կարոլոս թագաւորնալ ու իրեն կառավար-
ներնալ ամմէն բանէն աւելի հոգ տարին
հասարակաց կրթութիւնը կարգի դնել, որ
ավըրված թաղվածի պէս էր, գեղեցիկ
դպրութիւը ծաղկեցընել, անոնց վարպետ-
ներ ճարել, քանի հասարակաց ուսման հա-

մար շէնքեր որ կային՝ նորոգեցին ու ընդարձակեցին, Փառնէզեան անուանի գրքատունը Պառմայէն հոն փոխադրեցին, որուն խարճը հասաւ 500 հազար ռիալի։ Նաբոլցիները տեսնալով ասանկ իրենց վրայէ եղած սէրը, իրենքալ կամաւոր ընծայ տըվին Թագաւորին մէկ միլիոն տուքադ, որ ինչ բանի ուզէ՝ խարճէ. Թագաւորը աս ընծան ընդունելով, ինքնալ փոխարէն Նաբոլի քաղքին արտօնութիւնները հաստատեց, որոնք որ Թագաւորին իշխանութեան ու հասարակաց ապահովութեան դէմ բան չէին։ Ետքէնալ 1738 նոր կարգ մը հաստատեց Ս. Գեննարիոսի անունով որ պաշտպան է քաղքին, որպէս զի իշխանները օրով կապվին Թագաւորին հետ. աս կարգը՝ որուն մեծաւորը Թագաւորն է, կըտրվի միայն երեւելի պարոններու։ Կարոլոս Թագաւորը Հռոմայու վճռէն ետեւ որ Ֆռամասօններուն ընկերութեանը դէմ եղաւ 1751, ինքնալ սաստիկ արգելեց անոնց ընկերութիւնը իբրեւ խռովարար հասարակաց խաղաղութեան, ու ավրօղ Թագաւորական իրաւունքը, բայց Դանուչչի վեզիրը ուրիշ բարեկարգութիւններ ալ կըմտածէր դնել, որ ասոնք են։

ա. Մէկ նոր կառավարութիւն մը սահմանել ընդհանուր մաքսի (կէօմրիւքի) վրայ, և տուրքի՝ նաև ուրիշ Թագաւորական իրաւունքի վրայ ցամաքային ու ծովեզերեայ քաղքըներուն մէջ։

բ. Վերակացուներ ընտրել, որոնց հոգը

ըլլայ աւելի ծաղկեցընել ձեռագործները , Նոր ձեռագործներով սահմանել ըռդօֆայ, Ճանֆէս , չուխա, որպէս զի այնչափ կարօտ չըլլան դրսէն առնելու ։

Դ. Վրանազին և ուրիշ տէրութենց հետ դաշնադրութիւն ընել առուտուրի վրայօք , մանաւանդ սպանիայի Թագաւորին համանութիւր առնել՝ որպէս զի Նաբօլին կարենայ հինտիստան ու ամերիկայ նաւ խրկել , առուտուրի բաժանորդութիւն ( օռթախութի, քօմբանիա ) սահմանել , ինչպէս որ ինկիլիզը ու Ֆիլէմէնկը ըրերէին ։

Ե. Ամէն Ճարպիկ դրսեցիներուն Թողուլ որ գան , բնակութիւն ունենան Նաբօլիին հողը , հրաման տալով որ ազատաբար բանեցընեն իրենց դաւանանքը ։

Զ. Մէկ Զիէ Ճամփայ մը բանալ Նաբօլիին մէկ ծայրէն մէկալ ծայրը , որով ադրիական ու Ճերմակ ծովը մէկմէկու խառնըվին, անով խալըգին նաւերը սիչիլիային մեծ պտոյտը ընելու , և ափրիկէին ծովեզերքը մօտիկնալու , որ է վտանգաւոր ։

Է. Խօնսօլներ դնել Նաբօլի ու բալէռմօ, և ուրիշ նաւահանգիստներու մէջ , որպէս զի փոփոխակի հաղորդակցութիւն ըլլայ ասոնց և ուրիշ եւրոպայի ծովեզերեայ քաղքըներուն հետ ։

Ը. Ազատութիւն տալ որ ցորենը դուրս տանին , երբոր անչափ շատ ըլլայ որ՝ ալ վախ չըլլայ կարօտութի քաշելու Նաբօլիին մէջ ։ Աս բաներէս շատը եղած էին , ուրիշ բաներալ կային ըլլալու՝ որ չէյաջողեցան .

Ինչպէս էր ետ կանչել հրէաները, որ 1540 քշուած էին, երբոր պետրոս դոլետացին անգութ մարդը փոխարքայ էր հոն. թէ որ ան արտօնութիւնը ու ազատութիւնը տային, ինչ որ տըվերէին ալիկուռնայի մէջ, երկիրը կըշէննար, պատիժ սպառնալով անոնց՝ ով որ հրէաները չարչարէ, ու նանկով կամաց կամաց աս դիէն ան դիէն շատ հարուստ վաճառականներ եկան հոն։ Բայց ռամիկ ժողովուրդը՝ ամմէն նոր բանը որ իր, մօքին դէմ է, չուզեր. անոր համար Հրեաներուն դէմ սկսան գէշ խօսիլ, զարնել, ըսպաննալ, անկէց հրեաներն ալ գաղտուկ փախան։ Ժողովուրդը կերպ կերպ պարսաւադէտ գրքեր հանեց Թագաւորին դէմ, որոնց մէջը մէկն ալ աս չորս գրերով պարսաւ մը հաներեր. Կ. Մ. Թ. Հ. որ ըսել է. Կարոլոս Մանուկ Թագաւոր Հրէից։ Վասն զի սպանիացիք իրենց Թագաւորին զաւկըները ինֆանս կամ ինֆանթէ կանուանեն, որ ըսել է Մանուկ։ Հրէաներուն դէմ գրգռօղը եղաւ Ներբէ անուն Ճիզվիթը, ասկէց տէրութիւնը մէկ ընդդիմութի մը ունեցաւ կըսեն Ճիզվիթին կարգին ու ամմէն կրօնաւորներուն դէմ, որ Թագաւորական կարգադրութեց դէմ կըխօսէին, անկէց եղաւ որ՝ տէրութիւնը յօժարուն ու շուտով մտիկ դըրավ ան խօսքերուն որ՝ Ճէնօվէզի անունով քահանայ մը գրերեր, ճամփայ ցըցընելով կրօնաւորները չափաւորելու, ըսելով թէ՝ տէրութենը թող Ճիշդ հաշիւ (հիսապ) ու-

զէ ամենէն կրօնաւորներու և մարապետներու վանքերէն, թէ ինչ ունին, և քանի հոգի են, անոնց ամենէն մէկուն չափաւոր բան կապէ, յատուկ ըստակալ կապէ տարին չէնքին և ուրիշ խարճերուն համար, մնացածը որ աւելորդ հարստութիւն է, տէրութիւնը թող իրեն առնէ, ժողովրդեան հարկաւոր բաներու համար խարճէ։ Աս խօսքերս խիստ հաճոյ եղան տէրութեան, քննեց, ընդունեցաւ, բայց ապսպրեց որ՝ կամաց կամաց 'ի գործ դրվի, չըլլայ թէ մէկ խռովութիւն մը ելլայ։ Կալլիանի մեծանուն եպիսկոպոսնալ հռոմ խրկեց, որ Նաբօլիի թագաւորին դիտացէն աս բաներս խնդրէ. այսինքն՝ Նաբօլիին թագաւորը իրաւունք ունենայ իր երկրին եպիսկոպոսները ինքը ընտրելու։ Մէկ որոշեալ համրանք մը դնէ քահանաներու, կրօնաւորներու, մարապետներու, որ անոնք միայն ազատ ըլլան տուրքերէն։ Աս ամենէն ժառանգութիւնները՝ որ վանքերուն՝ և ուրիշ եկեղեցական տեղերուն պիտոր անցնին, տէրութիւնը կարենայ իրեն առնելու։ Նաբօլի եղած հռոմայու նուիրակները ասկէց ետքը դատաստան չիկտրեն քահանաներու և կրօնաւորներու վրայ, իրենց դատաստանարանը գոցվի, այլ անանկ վարվին՝ ինչպես որ կըվարին ուրիշ ուղղափառ թագաւորութեանցը մէջ։

Նարոլըս թագաւորը հռոմ գոհըլվելով անձամբ խօրաթեց սրբազան պապին հետ աս բաներուս վրայ. սրբազան պապնալ որ

էր ԺԶ. պենետիքդոս լամպերդինը՝ քանի
մը բանի վրայ հաւանութիւն տըլալով, միայն
թէ ժամանակ ուզեց մտածելու ։ Երբոր
քառտինալ Սվալտայնին շատ կըպնդէր
կըսորդորէր որ հաստատուն կենայ, իր հա-
ւանութիւնը չիտայ, պենետիքդոս խելացի
ըլլալով աս խօսքս զուրցեց քառտինալին ։
« Սրվալինամ, դուն ան նաբօլցի աղնուա-
» կանին պէս չըլլաս, որ՝ 24 հեղ մինամար-
» տութին ըրաւ պնդելով թէ Տանդէ բա-
» նաստեղծը Բռիօսդօ ու Դասսօ բանաս-
» տեղծէն վեր է, եւքը երբոր մեռնելու
» եղաւ, խոստովանեցաւ որ՝ չէր կարդա-
» ցած ոչ մէկը և ոչ մէկալընմէ ։ Դունալ
» մեր օրէնքը գիտես, բայց ուրիշ տէրու-
» թեանց օրէնքը չիյտես, չես կարդացած ։ »
Ինկեց եւքը հռոմայու դիւացէն մէկ նոր
դատաստան մը դրվեցաւ նաբօլիի մէջ,
երկու եկեղեցական, երկու աշխարհական,
մէկ եպիսկոպոս մը գլուխ, որպէս զի որչափ
վիճմունք, դատ (տավա) ըլլայ եկեղեցա-
կաններու վրայ, աս ատեանը տեսնայ իրենց
դատաստանը ։ Հրամանաւ տրվեցաւ որ՝
ամմէն եկեղեցականաց եկամուտներէն՝ հա-
րիւրէն չորսը կարենայ թագաւորը առնել,
որով մէկ միլիոն տուքադէն աւելի ժող-
վըվեցաւ ։

Նաբօլի քաղքին քով կրակ ցաթկեցընող
լեռ կայ վեսուվ անունով, աս լեռը 1751.
հոկտ. մէջ սաստիկ բռնկեցաւ, որ ինչվան
նոյեմբ. 7. քշեց, կրակ կտրած հող՝ լաւ-
ըսված, գետի պէս վազցուց, որ շատ վնաս

տըվլավ երեւալով մըկելով, գեղ մը կայ՝ որ յանեաց աշտարակ կըսուի, մէջի հորերը ցամքեցան ծանխալ քաշեցաւ:

Հատմայա վերջ.

1750:

Աս տարենս Հռոմ քահանայապետս կընտրէր Ժդ. պենետիկտոս Լամպէրդինին ըսված, որ շատ անուանի եղաւ, 1749. մարտի 9. շըր Ջաքերականն թուղթ հաներ յոբելեան տարւոյն համար, որ պիտոր ըլլար 1750 (1). Ամէն դիացէն շատ բազմութիւն ուխտաւորներու ժողվըվեցան, Հռոմ մէկ հիւանդանոց կամ հօգետուն մը կայ Ս. Երրորդութեան անունով, աս տեղիս պարտք դըրված է որ՝ երեք օր ուխտաւորները պիտոր ընդունի, եկող ուխտաւորները այնչափ շատւոր եղան որ՝ միայն ապրիլ ամսըվանը 43 հազար սեղան կամ հարկինք ըրավ անոնց, կերակուր հանեց. իսկ բոլոր տարվանը մէջ 197 հազար անգամ: Ան Ֆրանչիսկեան կրօնաւորները՝ որ Իտ" կըսւվին Մինօրի օսսէրւվանդի՝ ան տարի մեծ ժողով ունէին Հռոմ ընդհանուր մեծաւոր ընտրելու համար, որոնք յոհաննէս մօլինա սպանիացին ընտրեցին. Երբոր ասիկայ Թա

(1) Աս հանդէսը ամէն 25 տարին հեղ մը կըլլար, սկսեալ 1400էն, որ սահմանեց Զ. բոնիֆակիոս քահանայապետ, և հաստատեց Ե. քիսզոս:

փորով ժամ գնաց յոթելեան տարի ըլլա-
լով, երկու հազար կրօնաւորի չափ կային
իր հետը, որոնք տեսնալով Լամպէռդինը՝
մէկ գունդի մը զօրաց նմանցուց (1)։

Հռոմ եկօղ ուխտաւորներուն բազմու-
թեանը մէջը գտնըվեցան ոմանքալ որ՝ խառ-
վելով Փռամասօններուն ժողովքին մէջը
գրվեցան, դնելով մտքընին որ՝ թէպէտ
աս ժողովներս մէջ կըլեմէս քահանայապետը
դատապարտեր էր, վճռելով ով որ մտնայ,
մտածին պէս նզովեալ ըլլայ, բայց որով-
հետև հիմակվան քահանայապետը Լամ-
պէռդինը չէր հաստատած ան վճիռը, ա-
նոր համար չանցնիր կըսէին։ Աս պատճա-
ռով Լամպէռդինը 1751 նոր կոնդակ հա-
նեց Փռամազօններուն ժողովքին դէմ,
առջի կոնդակը հաստատելով (2)։

Այս քահանայապետս Լամպէռդինը քանի

(1) Եղբօր աս Մօլինան Մօտէնայէն երկիրը գնաց՝ իր վանքերուն այցելութ ընելու համար, Մօտէնայէն դուքսը հրամմեց իրեն շուտ մը դուրս ելլալ իր երկրէն, ինչու որ չէր գացած անձամբ հրաման առնելու դքսէն, միայն թղթով թողութն խնդրեց դքսէն, ըսելով որ Մատրիտ երթալու արտորալուս համար, ժամանակ չունեցայ գալու հրաման առնելու։

(2) Աս աղանդս հիմնած կամ նորոգված ըլլալով ատատամը Ինկկելիզ Քռոմվէլէն, յայտնի էր որ թագաւորներու և հաւատքի դէմ եղած ախտոր ըլլար։ Աս բանս որ ծածուկ կըպահէին, երևան եղավ Փռանսայի եաքի խռովութ ատենը, ինչպէս որ յայտնի կըտեսնէ Պաւռուէլ քահանային շինած պատմութիւը ժաքօպէններու վրայ, որուն դէմ գիրք շինողին վարձ խոստացան Փռամազօնները, բայց գտ- մէկը չելավ որ դէմը շինէ։

մընալ չէնքեր շինեց. Սբ պետրոս մեծ ժա-
մուն գմբէթը ըլնելու վրանդի մէջ էր, վասն զի Ե պօղոս քահանայապետին ատենը՝ կարօլոս մատէռօ ճարտարապետը խախ-տեր էր ան պատերը՝ որոնց վրայ գմբէթը կե-ցուցեր էր ֆօնդանա ճարտարապետը Ե սիքստոսին ատենը, աս բանիս համար լամպէռդինը չորս անուանի ուսումնական-ներ (մաթէմաթիքօներ) կանչեց, ասոնք էին պօսքօվիչ ճիզվիթը, ժաքիէ ֆրանչիս-կեան կրօնաւորը, սիւէյռը, ու բօլէնի մառքէզը, որոնք առանց դպչելու ան մեծ չէնքին վարպետութիւն մը երկըթէ գօտինե-րով ամրըցուցին: Րասնկալ նորոգեց ու զարդարեց մեծ ժամը՝ որ կըսվէր Սրբուհի մարիամ մեծագոյն (մաճճիօռէ), Սբ յօ-հաննէս լատերանեան, Սբ պօղոս՝ որ պա-տէն դուրս է, Սեսսօրիանեան տաճարը՝ որ կըսվի նաև Սբ խաչ երուսաղէմեան, Սբ մարդինոս լեռան վրայ, Սբ ապօղինար, Սբ մարիամ հրեշտակաց: Գետնի տակէն հանել տըրվալ մէկ կոթող (տիքիլի դաշ) մը՝ Սեսոստրեան ըսված, որ քամբօ մառ-ցօ ըսված տեղը թաղված կար, իսկ հիմա Սբ լօռէնցիոս ժամուն դիէրը դրված է ինը կտորով: Մէկ մեծագործ չէնք մը կար կոթող կամ մահարձան (քօլօսսէօ) հռո-մէական ըսված, որ շինեցին վեսպասիանոս կայսրը ու տիտոս՝ հրէաստան առնելէն ետև, ասոր մէջը հին կռապաշտ հռոմայե-ցիք սուսերամերկ խաղ կըխաղային, իրար ջարդելով կտըրճութիւն կըցըցընէին, ան-

կայ անանկ բարձր ու ընդարձակ շէնք մը ներ ահագին, որուն համար գետի պէս ոսկի խարձնեցին ան երկու կայսրը : Աս շէնքս անանկ կեցած էր ինչպէս Ը ուրպանոս քահանայապետին օրը, ատոր ատենը պարպերինեան իշխաններըն՝ (որ իր եղբօրորդիքն էին), պատերուն մեծ մասը քակեցին իրենց պալատ ( սէրայ ) շինելու համար, հիմա լամպէռուդինը տեսնալով որ չի կրնայ պիտոր նորոգել, անոր մէջը մատուռներ շինել տըվավ, երևելի վարպետներուն պատկերներովը զարդարված : Ասանկ շինութիւններ ըրավ, ճամփաները շտկեց՝ աղէկցուց, ամմէն հիւանդանոցները ընդարձակեց, ու պէտք ըլլալու բաները հագաց սկսեալ ան հիւանդանոցէն՝ որ կըսվի Հոգին Սբ. սասսիեան :

Օր մը հռոմայու մէջ մէկ քանի բռնօղներ ( հասաանէր ) մտան մէկ խանութ մը որ մօտիկ էր Սբ. յակոբոս ըսված սպանիացոց ժամուն՝ նավօնա հրապարակին մէջ. ան ժամուն տիրացուներէն մէկ քանի մը հոգի տեսնալով, ասոնց ետևէն վազելով մէկը բռնեցին, գետնի տակի խուցի մը մէջ դրին. ատորվանց բանտապետը իրեն մարդիկներով եկավ, բռնութեմբ հանեց տարաւ հասասը : Աս բանիս վրայ հռոմ եղող սպանիացիք բողոք վերուցին որ իրաւանց դէմ ըրավ բանտապետը, երկու սպանիացիք շուտ մը հռոմայէն ելան՝ սպանիա գացին թագաւորին գանկատելու, որովհետև հռոմայու կառավարօղնալ մէշտ խուլլուխ կըտըրտըր

„ կանեան կայծակները ( նզովքները ) հի-
„ մա չեն անցնիր ։ Օրէնսդիրը՝ որուն փո-
„ խանորդն եմ, չուզեց երկնքէն կայծակ
„ իջեցընել, նայինք որ՝ չըլլայ թէ բարի
„ նախանձուն հետ կիրքալ մէկ տեղ խառ-
„ նըվի ”։ Երբեմն ընդարձակ խելքովն էր՝
որ լօթռաններուն ու քալվիններուն հետ-
ալ սիրով կըտեսնուէր, զանոնք շահե-
լու համար, անոր համար պըրուշի Թագա-
ւորին քոյրը՝ որ պառայթի մառկռա-
վիա ( իշխանուհի ) կըսուէր, ու իր եղբօրը
ալեա շատ խելացի էր, մօնդէ քավալլօ ըս-
ված պարտիզին մէջ շատ հեղ ընդունեցաւ ։
Աս իշխանուհիս երբոր հռոմայեն դուրս
երթալու էր՝ ըսաւ ։ “ Հռոմայեն չուզե-
„ լով կելլամ, աւելի լամպէռդինին խօսակ-
„ ցութենն զատվելուս համար՝ քան թէ հռո-
„ մայու հին տեսնելու շէնքերեն զատվե-
„ լուս համար ։ Իմ եղբայրս շատ շնորհա-
„ կալութիւն պիտոր ընէ իր քաղաքավա-
„ րութեանը համար որ ինծի ըրավ, ու սէր
„ պիտոր ունենայ վըրան ”։ Աս բանիս վըրայ՝
լամպէռդինը ասանկ գրեց քառտինալ
Գենչինին ։ “ Ահա եկաւ ատեն՝ որ բռօ-
„ դեստանդներուն մեծերնալ կուզան հի-
„ մա մեզի տեսութիւն, անչափ ատելի չենք
„ երևնար՝ ինչպէս որ հասկըցուց անոնց լու-
„ Թէռը ։ Չէ թէ աղանդները՝ ապա խենդ-
„ երևակայութիւնները ու աւելորդապաշ-
„ տութիւնը են աւելի կատաղի սատանայ-
„ ները՝ որոնք պէտք է երդմնեցուցչութե
„ հանել, որովհետև շատ երկիրներու մէջ

» ասոնք են որ՝ Ճշմարիտ հաւատքի անուանով
» տիրեցին. ասոնք են այն սատանաները՝
» որ յայտնութեան գրքին ըսածին պէս՝ եր-
» կինքին աստղերուն մէկ մասը իրենց ետե-
» ւէն կը քաշեն։ »

Լամպէտուզինը մեծ ու խրթին դիպուածնե-
րու առեն՝ Ֆրանսային դեսպաններուն (էլ-
չիներուն) հետ կը խորհրդակցէր, խիստ
ընտանեբար կը տեսնուէր անոնց հետ՝ քան
թէ ուրիշ տէրութեանց դեսպաններու հետ.
Ֆրանսայի Թագաւորին հետ, որ էր ԺԵ
լուիզ, մէկ մասնաւոր սէր մը ունէր. իրեն
գաղտուկ թղթերը որ կը գրէր անոր՝ կը
ցցընեն իր սէրը. միշտ վարժած ըլլալով
գիտնական գործքեր գրելու՝ իր թղթա-
գրութիւնը ծանր ոճ մը ունէր իր կենակ-
ցելու ոճէն դուրս, որ միշտ զուարճալի էր։
Նաբօլիի տէրութեան հետ մէկ քանի մը ան-
ցաւ որ՝ թէ որ Լամպէտուզինը չըլլար, կրնար
մէկ մեծ խռովութիւն մը ելլալ։ Որչափ Նա-
բօլիի զինուոր որ կը փախչէին՝ Պէնէվէնդ
քաղքին մէջը կը փախչէին կապուցիններուն՝
որովհետեւ հռոմայու տակն էր. աս բանիս
վրայ ամմէն իժիր դանկատ կուգար Նաբօ-
լիի Թագաւորէն, բայց պարապ կըլլար։
Ետքը մէկ Նաբօլիի զօրապետ մը գնաց
Հեռուանց պաշարեց Պէնէվէնդ քաղաքը,
պահանջելով որ փախած զինուորները ի-
րեն յանձնեն, ասով քաղաքը նեղութիւն
քաշեց պաշարի (զահրէի) դիմացէն. բայց
քաղքին կառավարը չուզելով յանձնել
զինուորները՝ խնդրեց Թագաւորէն՝ որ ան

պաշարումը վերցընէ, Թագաւորն ալ պաշարումը չիվերցուց։ Նոյնատենը լամպեդուդինը Սօջքա մառքէզը խրկեց՝ որ բանը շտկեց, խօսք կապելով որ՝ ասկէց ետքը ամէն հոն փախած զինուորները յանձնեն, բայց կեանքերնին չնորհելի. և աս բանիս համար Նաբօլիի Թագաւորին դիւցէն մէկ հազարապետ (ուֆֆիցիալ) մը նստի պենտեվէնդ քաղքին մէջը։

Աս պնդելը բանի մը վրայ՝ պատճառ կըլլայ գժտութեն (խըռխըռի), լամպեդուդինի իշխանութիւնը անանկ էր որ՝ ատենօքն կեօրէ ամէն բանի մէջ մէկ իշխան մը՝ մէկ անուշութիւն մը կըցըցընէր։

## Տոսքանայի վրայ.

## 1750։

Տոսքանան հին ատենը Էտրուրիա կըսվէր. մէջինները արուեստ ու գիտութիւն ծաղկեցընօղ էին իտալիայի մէջ. երբոր հռոմայեցւոց տակը ընկան, ասոնք հռոմայեցւոց սէր ձգել տըվին արուեստ և ուսում սորվելու. հոն նստօղ հռոմայեցի զինուորները քու գալէն հարիւր տարի առաջ առնօ գետին քով քաղաք մը շինեցին, ֆլուէնցիա կոչեցին, որ ետքը ֆլօռէնցիա կամ ֆիօռէնցա, ֆիռէնցա ըսվեցաւ. միշտ դօսքանային մայր քղքը եղաւ։ Ասկէ ետև շինված քաղքըներուն մէջը դուքսեր կամ կոմսեր նստան. ետքը ամէն դօսքանան մէկ մարքէզին տակը անցաւ. մարքէզնե-

րէն եւսէ կառավարիչներն առան . կառավար-
նէրուն տակէն կամաց կամաց ելան երեք
հասարակապետութիւն եղան, որ իրեք քաղ-
քի անունով ըսվեցան, Փիօռէնցա կամ
Ֆիռէնցա, Բիզա, Սէնա : Իսկ 1250ին ա-
տէնները փոլէսպալօ կամ լօբբօ Մէտիչի՝ կի-
բէն. աղէկ խորհրդովը յաղթութիւն ընել
տըվավ կվէլֆի ժողովուրդին դիբնցէն՝ որ
Փիօռէնցա կընստէին, ասոնք ալ փոխարէն
Մէտիչի ցեղը Փիօռէնցայի քաղաքացի գրե-
ցին, ու իրենց հասարակապետութեան պաշ-
տօններուն մէջ խօթեցին :

Սա Մէտիչի ցեղէն ա՛ կօզմոս առջինը եղավ
որ 1569 . սեպտ . 27 . Ե . պիոս պապէն
Մեծ դ—ս դօսքանայի ըսվեցաւ . ու 1562
մէկ զինուորական կարգ մը սահմանեց աս-
պետներու, Ս. ստեփաննոսի հռոմայ քա-
հանայապետին ու մարտիրոսին անունովը .
ասիկայ չին էդրուրացւոց պէս գիտութե-
ներ ձգելով, իրենքովը կանչեց կարդացող-
ները, անոնցմով հիմնեց բիզայի համա-
լսարանը : Սոր վեց յաջորդ եղան, որոնց
վերջինը եղավ յոհաննէս կասդօն, որ 1737
մեռաւ անորդի, ան ատենը տունը ցեղը
մարեցաւ : Սա աշխարհաշէն ցեղը Մէտիչի
որ կըթարգմանի բժշկեան, 200 տարվանը
մէջ՝ սկսեալ Ժ՛ լեւոն քահանայապետէն՝ ա-
նանկ ծաղկեցուց դօսքանիայի մէջ կարդա-
ցողութիւնը, գիտութիւնը, արուեստը, որ
եղավ դար գրեթէ հաւասար օգոստոս կայ-
սեր և ԺԴ լուիզի Ֆրանսայի թագաւորին
ատէններուն նման :

Զեդը մարելէն ետև՝ որովհետև եղիսաբեթ փարնեզեան սպանիայի թագուհին ամէնէն մօտիկն էր մէտիչի ցեղին, կայսրը եղիսաբեթին տղան կարոլոս 1731 յաջորդ դրաւ դօսքանայի դքսին, բայց որովհետև 1735 վիէննայի մէջ եղած դաշնադրութեամբ կարոլոս նաբօլիի վրայ թագաւոր եղաւ, դօսքանային դքսութիւնը ֆրանչիսքոսի տրվեցաւ, որ առաջ դուքս էր լօռէնայի, ետքը Մարիամու Թերեզիային հետ պսակվելով, կայսրը եղաւ, Ա. Ֆրանչիսքոս ըսվեցաւ: Աս Ֆրանչիսքոս ունէր աղէկ սիրտ, բայց որովհետև ինքը հեռու տեղ վիէննայի մէջ կընստէր, իշխաններ կըխրկէր, անոնցմով կըկառավարէր դօսքանան, անոնք իրէն սրտին կեօրէ չէին կառավարէր, յիշեցընել կուտային դօսքանացոց իրենց առջի տիրվըտանքը, մէտիչի ցեղին քաղցր իմաստուն կառավարութիւնը, որոնք իրենց իշխանութեան ատենը 200 տարիի չափ ուրիշ բարեկարգութիւներէ զատ՝ զօպերեին նաև պարպարըզներուն ասպատակութիւնը վերյիշեալ կարգին ասպետներուն ձեռքովը, որ իրենց չէքտիրներով պըտըտելով ան ծովերը, շատ յաղթութիւն ըրին պարպարըզներուն վրայ. խաղաղ պահել տըվին դօսքանային երկիրը ծովին գիւացէն: Բայց հիմա Ա. Ֆրանչիսքոս կայսրը ան չէքտիրները վերցուց, պարպարըզներուն հետ հաշտութիւն ըրաւ. ամէն տարի ըստակ վճարելով անոնց որ՝ դօսքանայի նաւերուն չի դպչին: Աս ընելով Ֆրանչիսքոս՝ հեռուեցաւ

ֆիլէմէնկին, շվէտին, ու տանիմարգային որովհետեւ անոնք ալ իրմէ առաջ անանկ ըրած էին ։

### Իսպանիայի ու Պորդուգալի փոխանակութիւններուն վրայ.
### 1750 ։

Սպանիային թագաւորը Զ Ֆէրտինանտոս կըջանար որ իր եղբայրներէն մէկը Նաբօլիին վրայ թագաւոր գնէ, մէկալն ալ որ էր փիլիպպոս՝ բառմայի ու բիաչէնցայի մէջ դուքս նստեցընէ, որ 1748 եղած հաշտութիւը յաջողվեցաւ. որովհետեւ փիլիպպոսին մայրը եղիսաբէթ ֆառնեզեան՝ ժառանգ էր աս երկիրներուն, որոնց տէր էր մանդուա եղած Կոնծակա անուն ցեղը, և ան ցեղը 1746 հատեր մարեր էր. ասանկով փիլիպպոսը դուքս նստաւ բառմայի, բիաչէնցայի, նաեւ կուաստալլայի վրայ ։

Այս երկիրներս քիչ մը առաջ երկան ատեն զօրանիստ տեղ եղան ան տէրութիւններուն որ ծեծի մէջ էին, անկէց շատ ըստակ մտաւ, բայց շատ աւելի հարստութիւն թափեցաւ՝ երբոր սպանիայէն մէկ նոր արքունիք մը եկաւ հոս, որ էր վերոյիշեալ փիլիպպոսին արքունիքը, աւելի փառաւոր քան ֆառնեզեան արքունիքը. կըսեն որ՝ ան խազնային մեծ մասը՝ որ ամերիկայէն քառիչէ եկաւ, սպանիան խարճեց փիլիպպոսը բառմայի դուքս ընելու համար ։

Երբոր բառմացիք տեսան փիլիպպոսը ու իր կողակիցը դքսուհին, լուիզիա եղիսաբէթ,

որ Փրանսայի Թագաւորին առջինեկ զաւակն էր, բնութիւ խիստ առատաձեռն, քան հասկըցող, ու սրտցաւ գթած, խիստ ուրախացան որովհետեւ իրենց գալէն առաջ սպանիացի պաշտօնատերերը վերակացուները խստութ տուրքեր պահանջերէին, երկըրցիք խիստ տժգոհ էին, ու մօտիկ էին մէկ այլմուկ (վէլվէլէ) մը հանելու, չորս դին Թուղթ կըպուցերէին անարգելով ու մահ սպառնալով եկամնից հաղարապետին (տէֆթէրտար էֆէնտիին) վրայ, որ նոր եկերէր սպանիայէն։ Աս բանս իմանալով արդարասէր փիլիպպոսը՝ դքսուհին հետ մէկ տեղ քննեց պատճառը, հրամեց որ տուրքերը քիչցընեն, պաշտօնատերերը փոխեն, բարի կարգ խօթեն, որով վերցըվեցաւ տուրք առնօղներուն ոլորակները նենգագործութիւները, վերցըվեցաւ նաեւ երկու խումբ զօրաց՝ որ մաքսին (կէօմրիւքին) վրայ դրած կային։ Ասանկով իմաստուն կառավարութիւ Թէ որ մէկ դիացէն տուրքերը քիչցան, բայց մէկալ դիացէնալ պարապ խարճերը վերցընելով Թագաւորական եկամուտը քիչնալուն տեղը՝ շատցաւ. ան ատենը ժողովուրդը խաղաղկեցաւ ու հնազանդեցաւ։

Աս կերպով Լոդէ ըսված ցեղին երկիրները չէնցան, բնակիչքը ուրախացան, երբոր հոն դարձաւ եկավ իրենց սիրական իշխանը Փրանչիսքոս, որ շատ մը սկսաւ բարեկարգութիւններ ընել, մտածեց նաեւ Մօտէնա գլխաւոր քաղաքը գեղեցկացը-

նել, որ ձեռքը 'ի գործ դրին, Իտալիայի աղուոր քաղաքներէն մէկը ըրին :

## Մ ենտոնիին Լոյս.

## 1750 :

Երբոր 1748 հաշտութիւն եղաւ, աւստրիացւոց տանը՝ այսինքն Նեմցէն՝ որուն կայսրուհին էր Մարիամ Թերեզիան՝ առաջարկեց վենետիկցւոց որ՝ դրէնդինօի ու միլանի կողմերը եղած իրենց երկիրներէն քանի մը տեղ առնէ, անոնց տեղը՝ խորուաթիայի մէջի եղած երկիրներէն իրենց տայ : Վենետիկին ատեանը՝ որոնց դուքսը (տօժէն) ան ատենը պետրոս կռիմանին էր, չուզեց աս փոփոխութիւն ընել, կասկած երթալով չըլլայ թէ նեմցէն լոմպարտիային ան երկիրները ուզէ, որոնք վենետիկցին արդէն տըւած էր աւստրիական թագաւորին, անանկալ ձամփով մը պատասխան տըւաւ որ՝ կայսրուհին Մարիամ Թերեզիան ալ ետեւէ չինկաւ ուզելու : Ազնուապետական կառավարութեան մէկ մեծ սկիզբն է՝ ամէն նորութեան դէմ դնել, և մէկ տկար տէրութեան մը ամէն զգուշութեան պէտոր բանեցընէ որ՝ քովի մեծ տէրութիւնը բան մը ուզելու ըլլայ՝ շուտով չիդիմանի, չխորտակեցընէ անանկ խնդիրքներ ընել տալու :

Մէկ ուրիշ վէճ մընաց կար շարունակմընէ վեր վենետիկի ու Հռոմայու մէջ՝ Փեռուաւայի դքսութեան սահմաններու վըրայօք, աս

քանիս համար ծըք պետնաուրքդաս քաղհանայու-
պետը որ է լամպեդուզինը՝ յատուկ մաղ-
դիկ դրամ, որ կտրեցին որոշեցին ան առհ-
մանները երկու դիպաց հաւանութիւ ։
Մանք շուկեց վենետիկին տէրութիւնը՝ բայց
պարպարըշի ծովապատականերին ( խուր-
սանտաներէն ) միշտ նեղութիւ կըքաշէր. իր
նաւերը չէին կրնար ազատ բանիլ, առուլ-
չինեցիքալ փագեցին բուէմկզա բերդը՝ վե-
նետիկցոց ձեռքէն առին, Թայլելով ու ամ-
մէն Թօփերը տանելով ։ Ղեզայիրլին ու
Թունուզլին ծովապատակաները միշտ ան-
հանգիստ կընէին Ադրիական ծովին եզերքը,
յանդգնելով ինչվան չէրիկօ եկան՝ որ է
չուխա տապան, բայց հան եղօղ վենետիկ-
ցի. կառավարը վրանին կրակ ընելով հեռը-
ցուց, ան ատենը վենետիկի ատեանը ( տի-
վանը ) օխտը նաւ խրկեց, որ ան կղզինե-
րուն ծովերը կըպըտըտէին, պզտիկ նաւա-
տորմիղ ( տօնանմա ) միհալ Փուխաթանե-
րու և չէքտիրմներու խրկեց Ադրիական
ծովին բերանը ։ Բայց դարապլուսին մէկ
շամպէքը յանդգնելով՝ Ադրիական ծովին
ներսի դին մտաւ, վաճառականի մը նաւ-
առավ. ասա լսելով վենետիկին զօրապետը՝
երկու նաւ վրան խրկեց, որոնք վրայ հաս-
նելով, չորս ժամ կռիւ ընելէն ետև առին,
մէջինները ամմէնը ջարդեցին, շամպէքը
ծովը ընկղմեցին ։ Պարպարըշին տայինները
մօրդ խրկեցին սուլթանօլ օգնութիւն ուզելու
համար վենետիկի դէմ, բայց տաճկին Թա-
գաւորը չուզենալով ծեծ բանալ՝ վէզիրին

բերնովը շատ լեղի խօսքերով յանդիմանեց, երեսնին զարկաւ իրենց ըրածները՝ որ դաշնադրութեանց դէմ կընէին. սպառնալով իր պաշտպանութեան տակէն հանել զիրենք, թէ որ չփոխէին իրենց ճամբան։

Ուրէշ իրեք վենետիկի նաւեր Ճէզայիրին ծովեզերքը երեւցան, ան ատեններնալ ինկիլեզին օխտը մեծ նաւերը համարձակեցան մտան Ճէզայիրին բուն նաւահանգիստը, չվախնալով անոնց մարտկոցներէն (թոփխանեներէն՝) բռնադատեցին որ ինկիլեզի դրօշակով (պայրախով) նաւ մը առերէին, շուտ մը ետ տան. Ճէզայիրին տային շատ պատճառանքներ բերելով թողութին խնդրեց, հարկադրելով յանձն առաւ եր-երկու երեւելի մեծերը լոնտրա խրկել, որ թողութին խնդրեն, խոստանալով որ ասկէց ետքը անանկ բան չընեն։ Ասով ինկիլեզը գոհ ըլլալով միջնորդ եղաւ սպանիային սիրտը առնելու, որ կըսպառնար թըփոտել Ճէզայիրին քաղաքը, բայց իտալիային մէջի եղած տէրութիւնները՝ պապաւըշներուն ապստամբութեան (խուրամետութեան) տակը ընկան ինչպէս առաջ։

Թէ որ եւրոպայի տէրութիւնները իրարու հետ միաբան ըլլային, մէկէն կրնային վերջացընել անոնց ապստամբութիւնը ծովու վրայէն, ինչպէս որ շատ հեղ մտքընին դըրին, բայց քանի որ անմիաբան են մէջերնին, ոչ երբեք կառաջացընեն ուզածնին։

## Վենետիկի վէճը աքվիլեայի պատրիարքութեան վրայ:

Վենետիկին տէրութիւնը ծովուն դիւացէն՝ պառապառշներուն դէմ զբաղմունք ունեցաւ, իսկ ցամաքի դիւացէն մեծ վիճմունքի մէջ ընկաւ աս ատեններս Նեմցեի հետ աքվիլէայի պատրիարքութեան վրայ, որ թէպէտ պզտիկ բան մը նէր՝ բայց վէճը շատ քշեց ու խիստ տաքցաւ:

Աքվիլեան Նեմցեին կամ աւստրիոյ տանը տակն էր, բայց հնուցմէ դաշնադրութիւն ըրած էին վենետիկցիք ու աւստրիոյ արշիդուքսերը՝ որ աքվիլէայի պատրիարքութեն անունը երբեմն վենետիկցին ժառանգէ, երբեմն աւստրիոյ տունը. աս դաշնադրութիւնը հաստատեր էին մէջերնին 1617, երբոր որ հաշտութիւն ըրին ան ծեծէն ետև՝ որ ի ֆերտինանտոս կայսեր ու վենետիկցոց մէջ եղաւ (1): Արդ՝ թէպէտ դաշնադրութիւննին ասանկ էր, բայց վենետիկցին մէկ հնարք մը կըբանեցնէր որ՝ Նեմցէն ոչ երբէք ժառանգեց ան իրաւունքը, վասն զի վենետիկցիք միշտ իրենց մէջէն մէկ ազնըւական մը պատրիարք կընտրէին, աս պատրիարքը մէկ օգնական մըն ալ կընտրէր իրեն յաջորդ ըլլալու համար վենետիկի ա-

(1) Սէյնաի ուսկոքներուն պատճառովը՝ որ բոլոր ադրիական ծովը կապտատակէին (խուրսանութեն կընէին).

սենոյն (տիվանին) հաւանութիւնը, ու հռո֊
մայ քահանայապետին կոնդակովը, անանկ֊
կով միշտ վենետիկցի կըլլար պատրիարքը, նեմցէնալ ոչ երբէք ուզեր էր որ՝ մէկ հեղ֊
մընալ իրմէ ըլլայ օգնականը՝ որ յաջորդէ
աքվիլէյայի պատրիարքին ։

Այսօրուհին մարիամ Թերեզըննան ալ սո֊
վորութեան դէմ բոլոր վերցուց անդելով
որ՝ իրմէ առջիննէրուն աչք գոցելը Թոյլ
կենալը ան բանին վրայ՝ իրաւունքը չէին
կրնար ոչնչացընել յայտնի դաշնադրութեամբ
հաստատուած ըլլալով, անոր համար կըպա֊
հանջէր որ՝ իրմէկալ պատրիարք դնէ հոն ։ Ասանկ շատ վիճմունք ըլլալէն ետև երկու֊
տէրութեանց մէջը՝ (1) որոշեցին որ հռոմայ
քահանայապետին ձգեն աս բանս կտրե֊
լու, որովհետև լամպէրդինին էր քահա֊
նայապետ՝ որ շատ մեծ անուն ունէր աղէկ
քննելու արդար դատաստան կտրելու հա֊
մար ։ Վենետիկցին դժարութիւն չիքաշեց
սրբազան պապին դատաստանին ձգել, մտա֊
ծելով որ՝ հռոմայու սկզբանքը կեօրէ մէկ
իշխանութիւն մը երբոր կընդհատի, շատ
ատեն կըկտրի, իր իրաւունքը կըկորսնցը֊
նէ, որ կըսվի նախագրաւութիւն. հիմանալ նեմ֊
ցեցին պահանջմունքը այսչափ ատեն կտրը֊
ված խափանված ըլլալով՝ կորսնցուցերէր
իր իրաւունքը ։ Պենետիքդոս ժդ, որ է

(1) Աս բանիս մէջ շատ ձեռք ունեցաւ անուանի
գրագիրը քրիստիանի կոմսը՝ որ դեսպանը վենետիկ֊
էր եկեր իբրև՝ մէկ հաւատարակ մարդ մը ։

լամինկեա դրին քահանայապետը՝ ուզելով հօր
պէս և անաչառ դատաւորի պէս կարենալ ա-
ռանց մէկ դրին քաշելու, որպէսզի որ՝ վենե-
տիկցին միայն բնաւորէ անուանէ պատրիար-
գը, իսկ պատրիարքութեան ան սահմանին
մէջ որ աւստրիոյ տակը կընայ՝ առաքելա-
կան փոխանորդ մը դրկէ, որպէս զի նաւ-
ցէր ժողովուրդը օտար եպիսկոպոսին (ինչ-
պէս է վենետիկցի եպիսկոպոսը) իշխանու-
թէ դուրս ելլայ։

Ես խորհեմ խելացի դատաստանը անհաճոյ
եղած վենետիկի տէրութեանը՝ տեսնալով
որ ասով պիտոր պզտիկնար իր արտօնու-
թիւնը. սկսաւ բողոք վերցընել ըսելով որ՝
հռոմ առանց հաւանութեան ունենալու վե-
նետիկէն՝ չէր կրնար իրենքիրմէ առանձն մէկ
նորութիւն մը ընելու, եկեղեցական թեմերը
փոխելու համար պէտք է աշխարհական իշ-
խանութեան միաբան ըլլալ։ Աւեպէտ վե-
նետիկին ու նեմցիկին խօսք տալը (որով
հռոմ դատաւոր դրին աս բանս կտրելու),
երկուքնալ կըպարտաւորէր համաձայնուն ո-
րոշումը ընդունելու, բայց վենետիկը իր
տհաճութիւնը յայտնի ցըցընելով, որբազան
պապին նուիրակին պատուէր խրկեց որ՝
շուտով վենետիկի երկրէն դուրս ելլայ, իր
վենետիկի դեսպաննալ (եղ չին) որ հռոմ
կընստէր, պետրոս անդրէաս քաբբէլլօ ա-
նունով՝ ետ կանչեց, որ իր ելլալու ատենը
մէկ բողոք մը գրեց համաձայն վճռոյն դէմ,
քառատիմանինկերուն քովը ձգեց. ասանք թէ-
պէտ ետ կեցան ան գրուածը ընդունելու,

բայց օրինակը շատ ըլլալով Հռոմայու եր-
կիրը տարածվեցաւ ։ Սենետիկին տէրու-
թիւնը պինտ կենալով իր ուզածին վրայ ,
ետեւէ ետև կտրեց Հռոմայէն իր բարեկա-
մուն կապերը , իսկ Հռոմ միշտ աս կըրղու-
ցէր ։ “ Նաւը ձր դլին որ ըլլայ թող երթայ,
„ բայց իմքն Հռոմ խղճմտանք մը չունի
„ ըսպալ իր վճռոյն վրայ , և առաքելական
„ փոխանորդ դնելով ան պատրիարքական
„ մասին մէջ որ Նեմցեին տակն է , Հռոմ
„ արդարութե դէմ բան չըրաւ , իսկ եր-
„ կու տէրութիք Նեմցէն ու վենետիկը տէր
„ են իրենց բանին , ինչ որ աւելի աղէկ կը
„ ճանչնան , ան թող ընեն „ ։ Նմենեւալ
զովեցին որբազան պապին ժդ . պենետիկ-
դոսի թէ աս խօսքերը , և թէ իր խոհեմու-
թեամբ ըրածը աս բանիս մէջ ․ ոչ աթոռոյն
պատուոյն դէմ բան ըրավ , և ոչ բանը բը-
ռընկցուց , ինչպէս որ ատեն ատեն աս բա-
նիս մէջ իր նախորդներուն օրերը եղերեր ․
և սաանկ անտարբեր կեցաւ , որ զի աւե-
լի նեղութիւն չիկրէ տէրութիւններէն ։
Սենետիկի տէրութիւնը լուռ չիկեցաւ ,
արտորաց՝ դըրսի տէրութիւններուն իմացուց
մանաւանդ Ֆրանսայի , որպէս զի անոնք
Հռոմայուն թուղթը որ գրվեցաւ 1749 ․
Նոյեմբ ․ 19 ․ առաքելական փոխանորդ նըս-
տեցընելու համար՝ ետ կանչել տան , ան-
կեց ետքը նաւատորմիղ ( տօնանմա ) մը
պատրաստեց , ցամաքի զօրքն ալ շատցուց ։
Նայց աս բաներս անօգուտ եղան , վասն
զի պենետիկդոս ուրիշ մէկ թղթով մը յու-

նիսի 27 գրված , Մադդիմիս կոմսը եպիսկո-
պոս ընտրեց , որպէս զի փոխանորդին համա-
դեսը կատարէ ։ Սենետիկին եկեղեցա-
կանքնաւ վենետիկին դին քաշելով՝ Տեւ-
ֆին քառոտինալը որ աքվիլայու պատրի-
արգն էր , իր անունով երկրորդ բողոքման
Թուղթ հանեց հռոմայու վճռոյն դէմ ։
Քառտինաւ քվիրինիաւ՝ որ պրեշեայու ան-
ուանի եպիսկոպոսն էր , սաստիկ խօսքերով
գրուածքներ հանեց ջատագովելու համար
տեւլֆին քառոտինալը ու իր հայրենիքը որ
էր վենետիկ , ու խիստ տաքցած թղթեր
խրկեց հռոմ , երբ մէյն բեռնարդոսի օրի-
նակին հետեւելով , որ խիստ համարձակ կը-
խօրաթէր գ̃ եւգինէոս քահանայապետին
հետ ։ Բայց լամպեռդինը վերոյիշեալ քառ-
տինալներէն խելացի ըլլալով , ցաւակից ըլ-
լալով ալ միայն կըզգուշցնէր ։ „ Զիյտէի որ՝
„ մենք հիմա մը դարուն մէջն ենք եղեր ,
„ հիմաւ մէկ երկրորդ սբ. բեռնարդոս մը
„ կայ եղեր „ ։ Սառտենեայի Թագաւորը
առաջարկեց վենետիկցոց միջնորդ ըլլալու ,
որուն շնորհակալութ̃ պատասխանեց վե-
նետիկը ։

Նոր ընտրըված առաքելական փոխանոր-
դը գնաց աքվիլէա , որ հին ու յատուկ
տեղն է պատրիարգութ̃ , ուսկից որ փո-
խադրըվեցաւ ուտինէ քաղաքը , երբոր աք-
վիլէան՝ աւստրիական Ֆուրուլին մասն ե-
ղաւ ։ Սս փոխանորդը իր աթոռոյն իշխա-
նութիր առածին պէս՝ եկեղեցականք եր-
կու բաժնըվեցան , մէ՛ զի վենետիկին կա-

լալ հրաժարելու, և որովհետև շատոնցմըն-
նէ էր որ՝ պատրիարգական իրաւունքը ան-
գործ կեցած էր իբր ոչինչ մը, առաքելա-
կան փոխանորդ դնելնալ առժամանակեայ
(էյրէնթի) էր, նայեցաւ ընդունել ինչ որ
առաջարկըված էր։ Քարտինալ Տէլֆինի-
նալ դեռ ընդունած չըլլալով հռոմայէն իր
կոնդակը՝ հեշտ (խօլայ) էր փոխելը։

Ամանկով մէջերնին հաստատեցին մէյմը՝ որ
Ակիլէյայի պատրիարգութը ասկէց ետքը
մէկնայ, երկու արքեպիսկոպոսութիւն բաժ-
նըվի, մէկ եպիսկոպոսը Կօռիցիա նըստի[1],
մէկալը Ուտինէ նստի, որ վէնէտիկի Ֆուռ-
ուլիին մայր քաղաքն է, երկուքնալ
նման արտօնութիւններ ունենան։ Երկրորդ՝
որչափ պտուղ կան, որչափ ողորմութիւն
կուգան այս աթոռիս մէջ, ամէննալ եր-
կու հաւասար մասն բաժնըվի։ Ակիլէյայի
կանոնիկոս չըլլային, հապա ուտինէի կամ
կօռիցիայի ըլլային, որուն որ կըվերաբե-
րին։ Երրորդ՝ պատրիարգական մականու-
նը թող մնայ քարտինալ տէլֆինին վրայ
քանի որ կապրի, բայց իրաւասութենէն
հրաժարվի, իր մեռնելէն ետև՝ նաև այն
մականունը ջնջըվի։ Չորրորդ՝ պատրիար-
գութեան ամէն եկամուտը երկու հաւասար
մասն բաժնըվի, երկու եպիսկոպոսութեան
վրայ։ Հինգերորդ՝ ինչ որ հին միաձնութեներին

(1) Այս եպիսկոպոսութիւնը ետքը Բ. յովսէփ կայսրը
Լուպիանա փոխադրեց. իսկ կօռիցիա՝ պարզ եպիս-
կոպոսանիստ եղաւ։

ատենը օտարացուցին աքվիլէայի եկեղեցիէն՝ երկու դիւացէնալ եւ տան, որպէս զի արդարապէս բաժնըվին ինչպէս որ կըվայլէ։

Ան ատենը հռոմայ քահանայապետը երկու նոր արքեպիսկոպոսութիւն սահմանեց Կօռիցիայի և Ուտինէի. մէկալ եպիսկոպոսական աթոռները՝ որ աքվիլէայի պատրիարգին տակն էին՝ նեմցէի մէջ եղածները՝ կօռիցիային տակը ձգեց, իսկ վենետիկի երկրին մէջ եղածները՝ ուտինէին տակը ձգեց. պատրիարգական եկեղեցին աքվիլէայի՝ անմիջապէս հռոմայուն տակը ընկաւ։ Ասանկով լմնցաւ աս վէճը, և վերցվեցաւ հին ու երևելի պատրիարգութեն մէկը՝ որ սկսաւ հերձուածի ատեն, վերջացաւ խաղաղութեն ատեն։

## Զուիցցերներ, կամ Սուիցերի Կրայ.

1750։

Ասոնք առաջ աւստրիոյ ցեղին՝ որ ըսել է նեմցէին՝ տակն էին, բայց շատ արտօնութիւններ ունէին, ոմանքալ կայսերական քաղաք էին, ամմէննալ իրենք իրենցմէ կընէին կառավարութիւը, բայց ալպերտ կայսըը ուզեց ամմէննալ իր իշխանութեն տակը առնել, ինչ կառավարիչներ որ հոն կըխրկեր՝ շատ բռնութի կընէին, անոր համար 1307 իրեք նահանգ (էյալէթ) ապստամբեցան. երկիրնին լեռնամէջ տեղէր ըլլալով, իրենք

ուժով, շատ հեղ ծեծկըռվելով Նեմցեին զօրուքը ջարդեցին ։ Ետեւէ ետեւ քալվինները առնոց հետ միացան, ինչվան ժգ՟ նահանգ մէկ եղան. 1513 մէկ հասարակապետութիւն մը ձեւացուցին նոր կերպ՝ նոր ճամփայ մը՝ ըստ որում տասվիրեք նահանգնալ զատ զատ կառավարութիւն ունին, իրարու չեն խառնըվիր, բայց երբոր թշնամիոյ դէմ պաշտպանելու հարկ ըլլայ՝ ամմէնը կըմիանան, ետեւէ ետեւ աղէկ կանոններ սահմանեցին իրենց կառավարութեան համար ։

Մէկ երեւելի հեղինակ մը եղավ Մայլէ անունով, առիկայ գիրք մը հանեց շատ անուանի, որուն մէջը նոր լոյս տալով կառավարութեան համար՝ կըսորվեցընէ հայրենասիրութին ու իրարու սէր քաղաքացւոց ու իշխանաւորաց մէջ. աս գիրքս շատ լուսաւորեց ըզվիցցերինները. անոր համար Պէռնայի (2) մէջ եղած տնտեսական ընկերութիւնը աս գիրքս կանոն սեպելով ազատ ժողովըրդոց համար՝ մայլը հեղինակին տըվավ ան վարձքը՝ որ տարին հեղ մը սովորութիւն ունէր տալու ։ Ինչափ երեւելի եղավ աս գիրքս որ՝ լէհերնալ, Ֆիլէմէնկներնալ, Նոր ամերիկացոց տէրութիննալ մայլը հեղինակին խորհուրդ հարցընել սկսան իրենց կառավարութեան համար ։

Հիմա ըզվիցցերցոց կառավարութիւնը անանկ բան եղավ՝ որուն վըայ ամմէն կենցաղա-

(1) Պէռնա գլխաւոր պաւառ ու քաղաքն է ըզվիցցերիներուն ։

կերթ (բօլիդիքօ) մարդիկ կըզբաղմանան ։ Ըզվիցցերցիք երբոր նեմցեի տակն էին, նեմցէն բռնութի ընելով, անդադար զինուորներ առնելով, քիչվոր մնացերէին ։ իսկ երբոր իրենք իրենց մնային՝ օրէօր անչափ շատցան, որ շատ տէրութի առանցմէ զինուոր կառնէ, թէպէտ և երկիրնին լեռնային է ու անբեր ։ Միլանը որ մէկ բաց երկիր մընէ՝ ու թշնամիներու ոտքի տակ, ըզվիցցեցոց հետ խօսք կապած ունի. զինուոր առնելու համար, անանկ որ ըզվիցցեցիին զինուորները իր առուտուրն են, իրեն ապրանքն են ամմէն իտալիայի տէրութիւններու, նաև Ֆրանսայի, սպանիայի, փօրթուկալի, Ֆիլէմէնկի ևն, ուսկից որ իրեն աւելի շահ կուգայ՝ զինուոր կուտայ ։ Աս բանս է որ կըսեն, իրենց հասարակապետութիւնը միակերպութեան մէջ կըպահէ ու ոտքի վրայ կըկենայ, թէ որ դուրս զինուոր չտար, ըզվիցցերցիք խիստ կըշատնային; դուրս տեղ ելլալու կարօտ կըլլային, նոր երկիրներ առնելու ետևէ կիյնային, որ իրենց ազատութե կործանումը կըբերէր, ինչպէս որ ատեն մը աս պատճառով կործանեցան յունաստանին անչափ հասարակապետութիւնները ։ Բայց հիմա ըզվիցցերցիք աս ճամփան բռնելով, ամենևին նոր երկիր առնելու աչք չունին, իրենք զիրենք հանգիստ խաղաղ կըպահեն, կըհարստընան, մէկու մը տակ չեն իյնար ։

երբոր սա թագաւորին տակը անցաւ՝ մէկ քարերէր կղզի մը եղաւ. սառտէնեան գրեթէ կէս միլիոն բնակիչ ունէր, ուրիշ գաւառները աս տէրութեան՝ նաև լեռնային սաււոյեան մէկ տեղ առնելով ունէին 2 միլիոն ու 7 հարիւր հազար բնակիչ։ Մէկ խելացի վէզիր մը ունէր Օսմէա մառքեզ ըսուած, որ շատ մեծ գլուխ ունէր, իր կառավարելու խելքը՝ մտքին ճարպիկութիւնը՝ մէկ հատիկ էր, երբոր մեռաւ՝ անոր տեղը կարոլոս դրաւ Պօձինօ կոմսը, որ անոր պէս խելացի մարդ մընէր, բայց պատուէր դրաւ իրեն որ՝ զգուշանայ, նոր պարտաւորութեանց ու դաշնադրութեանց մէջ զինքը խօթել մալակոնել չըտայ։

Փորձովս իմացայ կըսէր կարոլոս, որ պինտ անուանի աշխարհակալ թագաւորները շատ վար են քան զան թագաւորները՝ որ խաղաղարար են, արդար, ու մարդասէր. շատ աղէկ բան է մարդուս՝ հանգստութիւն ժողովրդեան ըլլալ՝ քան թէ ահ ժողովրդեան։ Մէկ թագաւոր մը՝ որ մինակ իր անձնական փառքին համար պատերազմ կըսկըսի, ու ծեծի մէջ կըթապըլտըկի, անիկայ մէկ հարուած մընէ մարդկային բնութեան, բայց ան թագաւորը որ կըսիրէ իր ժողովուրդը, պէտք է որ հոգ տանի; որչափ կարելի է վայելցընել տայ անոնց քաղցր պըտուղը խաղաղութեան, թէ և քիչ մը վնաս քաշէ։

Ասանկով կարոլոսին սկզբունքը բոլորովին ներհակ էին ֆետերիքոսի պրուսի թագա-

ւորէն սկզբանցը հետ, բայց գործքով ըրէ-
մնոնցիք աւելի հանգիստ եղան կարոլոսի
սկզբանցը հետեւելով, քան թէ պրուսիները
Փետերիքոսի սկզբանցը հետեւելով: Ասանկ
խաղաղութիւնը աւելի հաստատելու համար՝
սպանիա եղող իր դեսպանին (Քէլ չիրին)
ձեռքովը խօսեցաւ որ մարիամ անդօնիան՝
(որ քոյր էր երկու թագաւորներու, սպա-
նիայի ու նաբօլիի) իր առջինեկ տղէն հետ
պսակէ, որ կըսվէր վիքդօրիօ ամէտէօ.
սա տղան ան ատենը սավօյայի դուքս էր,
ետքը սարտէնեայի թագաւոր նստաւ. ա-
նոնց պսակվիլը եղաւ 1750. ապրիլ 12:

## Ճէնովայէն եւ Ճինովիզներէն Վրայ.

## 1750—1754:

Բաւական տարի մը կար՝ որ Ճինովիզը խիստ
անհանգստութեան մէջ էր Քօռսիքա կղզիին հա-
մար, որ ժղ̃ դարուն մէջը իր տակը անցե-
րէր, բայց հոն գացող Ճինովիզ կառավար-
ները շատ ծանր տուրքեր վրանին դնելով,
Քօռսիքացիք չդիմանալով ապստամբե-
րէին, եւ թէպէտ մէջինները քիչվոր էին,
160 հազար հոգի ըլլալով ամմէն բնակիչ-
ները, բայց միաբան ըլլալով՝ ու քաջ զօ-
րապետ ունենալով՝ շատ յոգնեցուցին Ճի-
նովիզները: Ասոնք Ֆրանսայը օգնութիւն
կանչեցին, անալ զօրք խրկեց Քօռսիքա,
որոնց զօրապետը մառքէզէ Քուռսայի
կըսվէր. ասիկայ Քօռսիքա գալով՝ բանը

րէն Ճինիվիզլին տակը ձգել տայ։ Այս բա-
նով Քօռսիքացւոց սիրտը պղտորեցաւ քաղա-
քայինին վրայ, Ճինիվիզլիներուն հաճոյ չե-
ղաւ, որովհետև շատ համարձակութեան
տըվերէր Քօռսիքացւոց՝ որոնք ապստամբ
կըսեպէին իրենք. Փռանսազներուն հա-
ճոյ չեղաւ Քօռսիքացւոց հպատակութիւնը.
որովհետև Ճինիվիզլիներուն հետ աղէկ չէին.
Քօռսիքայի մէջ եղող Ճինիվիզլիներնալ ան-
ըրվեցան քաղաքայինին հետ, անչափ որ՝
երբոր զօրացը համար խոտ ուզեց անոնցմէ
իր ըստըրկով տանելու՝ Ճինիվիզլիները չիտը-
վին, Քօռսիքայէք տըվին, անկէց հոն ե-
ղող Ճինիվիզլիները ու Փրանսազները իրարու
հետ սկսան ծեծկըվիլ, երկուքնալ մէկմէ-
կու վրայ գանկատ գրեցին փարէզ։
Հրամմն եկաւ քաղաքայինին որ՝ երրորդ
անգամ ընդհանուր ժողով ընէ հինգ հոգի
ընտրէն, իրենց հետ մէկ տեղ երթան դա-
լօն, հոն խօսին Ճինիվիզլին մարդիկներուն
հետ, Քօռսիքային կուիւը լմնցընեն։ Բայց
Փրանսայի Թագաւորը դժվարելով Ճինի-
վիզլիներուն վրայ, կամ ձանձրանալով ան-
չափ նեղութէն, 1753 ետ կանչեց Քօռսի-
քայէն իր զօրքը. աս բանիս վրայ ցաւեցան
թէ՛ Ճինիվիզլիները՝ և թէ Քօռսիքացիները,
երկուքնալ աղաչանք ըրկեցին Թագաւո-
րին՝ որ Փրանսազին զօրքերը Քօռսիքայէն
մէջը թողու, Թագաւորնալ իջնալով ա-
նոնց աղաչանքին՝ առաջարկեց մէկ քանի
կանոններ ընդունելու որպէս զի խաղաղին։
Նոր համար իր երեսփոխանը Շօվլէն

մառքէզը օխար Թեուլթինէր առաջարկեց
իրենց ազգային ժողովքին՝ որ կղզին ընդ-
հանուր կառավարութիւնը կըվերաբերէին,
բայց նոր օրէնք մը չիկային առջի կառա-
վարութիւնը փոխելու համար :

Աս միջոցին մէջ քօռսիքացիք չորս հոգիաւ
խորհեցին կռիմալտիին, որ Ճենովիզցի գլխա-
ցէն հոն կեցած գործակալ էր, ըսելով ամ
մէնուն բերնէն՝ թէ Ճենովիզցին հաստատա-
կամութիւնը կընդունինք իբրև յատուկ
օրինաւոր տէր, միայն կաղաչենք որ՝ Ճե-
նովէզը միջնորդ ըլլայ, Ֆրանսզին զօրքը
քօռսիքային մէջը թող տայ մնալու, որ-
պէս զի հաստատուն ան խաղաղութիւն՝ որ
սկսաւ. ասանկով Ֆրանսզին զօրքը հոն մը-
նաց : Աս բանս ամմէն քօռսիքացոց հաճոյ
չեղաւ, Ալիօլօ կռամանտէ ըսված տեղը առ-
ջինը եղավ չընդունելու աս նոր կանոնաւո-
րութիւը, որովհետև մէջը չէր յիշվէր քօռ-
սիքացոց արտօնութիւնները, որոնց վրայ էր
գլխաւոր կռիւը Ճենովիզներուն հետ. մենք
չենք կրնար ըսին Ճենովիզին բռնաւոր կա-
ռավարութեը տակ նորէն մտնալ, ուրիշ
տեղերալ ասոնց օրինակին նայելով մտիկ
չըրին օլըվէդդօ քահանայի յորդորանքին,
որ իրենց դիրացէն խորհըրված մարդ էր ու
խիստ ճարտասան, մանաւանդ թէ նորէն
զէնք առին, բանը աւելի գէշի գնաց ինչ
որ էր առաջ : Ասոնք աւելի շփոթցուց
Ֆրանսզին պզտիկ նաւատորմիղը (տօնանա-
մամ), որ դարպասլըւսէն դառնալով, քօռ-
սիքա համդիպեցաւ պաշար (զինհրէ) առ-

նելու, կարծելով որ՝ իրենց վրայ ծեծկըռվե-
լու եկեր է, բայց անոնկայ իրեն կերակու-
րը առնելով չինկեցաւ, եղաւ, դօլօնի դին
գնաց։

Ու նոր կանոնաւորութեան Ճենովիզներուն
չէին հաւնէր, քօռսիքացիքալ օրէօր դէմ
կըքօղոքէին, ինչվան իրենց մէկ գլուխը որ
կըյորդորէր ընդունելու, Թիւֆէնկով լու-
պաննեցին, երդուըմ ըրին Թշնամի սեպել
ան մարդը՝ ով որ խօսք բանայ Ճենովիզնե
վրայ, հաշտըվելու վը։ Քուռսոյին գրեց
Թագաւորին որ՝ ասկէց ետքը քօռսիքացի-
ները իրենք իրենց Թողլու է, ինչ որ ըլլա-
լու են ըլլան, կամ Թէ զօրքով հնազանդե-
ցընելու է, բայց Թագաւորէն իր վը հրա-
ման եկաւ որ՝ քուռսոյին բանը դնէն։
Ու մարդս ունէր զարմանալի ճարտասա-
նութի, մէկ վստահութի մը, մէկ անուշու-
թի մը, ասոնց հետ մէկ տեղ ունէր խոհե-
մութի ու քաջութի, բայց Ճենովիզները
նախանձելով՝ ամբաստանեցին որ խիստ
փառասէր մարդ մընէ, երբոր հեռըցաւ
քուռսոյին, քօռսիքայի մէջ սկսաւ կռիւ,
խռովութի, կրակ, արիւնհեղութի, որուն
վրայ որ՝ կասկած կունենային Թէ Ճենովիզ-
ներուն հետ գաղտուկ կըխօսի, առանց
դատաստանի ճամփով քընելու՝ կըկախէին
կըսպաննէին։ Ինկից քուռսոյին ամմէն
կերպով արդարացաւ, իսկ Քուռսի անուն
մէյմը որ՝ իր տեղը եկերէր՝ շատ յոքնե-
ցաւ. նոր առաջարկութիւներ ըրկեց Ճենո-
վա ու Ֆրանսա, որպէս զի մէջը գտնայ

հաշտեցընէ. բայց քաղաքացւոց խանդ մը հա- ճոյ չէր ըլլար։ Գերմանացիներուն հետ թշնա- մանցան, անանց հետ ծեծկըվիլը սկսան. Ձեռ- վըներն ընկած Փրանսաց զինուորները կըմեր- կացընէին, ամանցալ ձեռվըներն կըկըտըր- տէին, անանկ մերկ ձեռք տունեն իրենց Փը- րանսաց ընկերներուն մէջը կըխրկէին, ուր որ Փրանսաց զօրք կըգտնըվէր՝ մինչ կըհալա- ցընէին, քանի նաև կուգար ճէպխանէ ու պաշար բերելու անանց՝ կարգելէին, կը- կանչէին որ՝ զամմէնքըդալ կըջարդենք, թէ որ տեղվանքը թողլու տանէնը՝ մեզի չըյանձ- նէք։ Հրաման եկավ փարեզէն, անոր վրայ Փրանսացները թողուցին քաղաքան, հինգ- տարի հոն կենալէն ետև առանց մէկ շահ մը ընելու.

Նոյն քաղաքացիք մեծ վարկամ ձըգել ար- մէն իրենց վրայ, բայց իրենք իրենց վար- կումը չըճանչցան. ամմէն մարդ աւելի նայեցաւ իր շահը՝ քան թէ հասարակին շահը, անով իրենք իրենց աւելի մինաս տը- վին քան թէ թշնամիները. Փրանսացները զայտածնուն պէս ժողվուլ ըրին կառավարու- թէ կերպ մը գնելու համար ու զիրենք ա- զատելու համար, բայց մէջերնին մեծ կոխ- ելավ մեծ խռովութի։ Ապստամբներու գլուխ մը կար Սաֆֆօռի կամ Սագֆօռի անունով, որ կառավար ու զօրապետ էր, քաջասիրտ ու հայրենասէր, բայց բռնա- ւոր, վրէժխնդիր, ու չափէն դուրս խիստ մարդ, մէկ թեթև կասկածի մը համար ե- րեւելի մարդիկներնալ բանտը կըդնէր ու ե-

տները՝ որոնց վրայ որ կախած ունէր՝ ե-րեւ տալով, մէկալ տնեցոց վրայ ծանր տուրք դրաւ։ Աս բանս կատղեցուց Քօռ-սիքացիները, յայտնի հրապարակեցին որ՝ Քօռսիքային թշնամին է. ամէնքնուն ազդա-րարեցին որ սպաննելու ետեւէ լինան, վարձ խոստանալով գլուխը բերողին, 1500 հո-գիէն աւելի զէնք առին աս բանիս համար. Պաստիա քաղաքը ուր էր Կռիմալտին՝ ցա-մաքի դիհացէն պաշարեցին, թուղթ խրկե-ցին քաղաքը 25 հազար ոսկոյի վճարելու, թէ չէ՝ կըթալլենք ըսին։

Կռիմալտին ալ վարձ խոստացաւ՝ ով որ Քօռսիքացի մը սպաննէ. իսկ ով որ գլխա-ւորներէն սպաննէ, մեծ հազարապետութիւն խոստացաւ, Պաստիա քաղքին մէջը կախա-ղաններ դրաւ, ով որ հրամանիս դէմ գայ կըկախեմ ըսելով։ Քօռսիքացիք Փուռիա-նօ պզտի բերդը առին, անով արգելեցին որ՝ ուտելիք չէր երթար Պաստիա, խիստ նեղութեան մէջ ընկաւ. և որովհետև Կռի-մալտին գրերէր Ճենովիզի տէրութեանը որ զինքը կանչեն, Ճենովիզն ալ աս ատեն Յով-սէփ Տօռիա մառքեզը՝ Քօռսիքա խրկեց. ասիկայ եկաւ, Պաստիայէն պաշարումը հե-ռըցուց, պունդ մը ապստամբներու մըր կոտրեց, մըր գերի բռնեց. Մնացածին հետ անուշութեամբ վարվելով՝ ամմէն տեղէն նուիրակներ կանչեց՝ որ դառնան իրենց առջի տիրոջը տակ։ Ասանկ հանդարտութեամբ անցուցին 1754ին ձմեռը։

# Մալթայի Վրայ.

1750.

Մալթայի կարգը սահմանուեցաւ 1114ին ատենները՝ որ կըսուէին Հիւրընկալք և Ս. Յովհաննու Երուսաղէմացւոց, առաջ Ռոտոս կղզին կընստէին, ետքը անկէ կալ կորսնցուցին, Եւ Կարոլոս կայսրը Ե. ո-րուն Թագաւոր Սիչիլիայի՝ Մալթա կղզին իրենց տըւաւ, չէ թէ պարգևելով՝ հապա միայն նստելու համար, բայց երկիրը իբրև իրեն մէկ կալուած մը պահելով, պարտք դնելով Մալթացոց վրայ որ աս բանիս նշան՝ ամմէն տարի իրեն մէյ մէկ բազէ Թռչուն տան, և եպիսկոպոսին ընտրելու համար Մալթացիք իրեք հոգի ներկայացընեն, սի-չիլիային իշխանութէ կընայ՝ ան իրեքէն մէ-կը եպիսկոպոս ընտրելու: Աս բանիս վրայ մէջերնին վէճ ելաւ որ ետքը պատմենք. Հիմա պատմենք մէկ ապստամբութեան մը վրայ, որ 1750ին ատենները Մալթայի մէջ պիտոր ելլար աս պատճառով: Տաճիկ գե-րիները որոնց մէջն էր նաև Ռոտոսի փա-շան, որուն ալ աւելի ազատութիւն տըւեր-էին, գաղտուկ խօսք դրին պաւպաւըշի ծովասպատակներուն (խուրսաններուն) հետն որ զի զէնք և ուրիշ օգնութ բերեն իրենց, Թէրսանէի շատ մարդիկներուն հետ-ալ խօսք կապեցին որ՝ Մալթային մա-գուը կամ մեծաւորը ըսպաննեն, որ կըսուէր

թիւն չընէր, ազգականութիւն չունենար անանց հետ, որոնց պատճառաւ կռիւ բաց-վի, այլ անանկ մէյմը կտունք՝ որուն ցեղը անյայտ է, չըգիտցուիր. անով խալըսած է ազգականութենէ ան կռիւներէն՝ որ շատ կըյօրինեցընէ եւրոպացիները աս թախտը կամ՝ ան թախտը ժառանգելու համար, ինչպէս որ պիտոր իմանաս աս դարուս պատմութիւնը կարդալով, որ բաց 'ի ու-րիշ կռիւներէն՝ իրեք անգամ մեծ ու զար-հուրելի կռիւներ հանել տըվաւ մէջերնին, ու արիւն թափելու զիրենք աղքատցընե-լու պատճառ եղաւ։

Իսկ օսմանեան թագաւորին զաւկըներուն մէջի կռիւներէն խալըսելու համար Չէնկիզ-ըն՝ օրէնքը հնարված է, անանկ կարգով անանկ կանոնով՝ որ քանի որ աս հնարվե-ցաւ, անկէց ետքը խափանվեցան ան կռիւ-ները՝ որ օսմանեան թագաւորին տղոցը մէջ կըլլար առանձինք յաջորդութեան համար, ու շատ կըյոգնեցընէր զիրենք։ Սոր վրայ կարդա՛ աշխարհագրութեան մէջ ստամպօլին հատորը։

Օսմանեան եկամուտը՝ իրենց երկրին բերքն է։ Ուրիշ եւրոպացւոց թագաւորները վաճառականութիւն ընելով կըվաստըկին, եւ իրենց ձեռագործները աշխարհ ամէն տա-նելով, անկէց ապրանքներ բերել տալով. աստիկայ հոգ կըտանին որ ուրիշ աշխըրքի ձեռագործ իրենց չառնեն, որպէս զի աստի իրենց երկրէն ըստակ դուրս չելլայ։ Օս-մանեան ճամփան աս ճամփուն ներհական

է, վասն զի կարօտ չէ, այլ բուն օսմանցի-
ներ սիրտը ինչպէս որ առանձին կենակցութ̃
մէջը մէկ առատաձեռնութիւն մը ունի, ու-
սանկալ իր տէրութ̃ կառավարութեանը
մէջ մէկ առատաձեռնութիւն մը կըցըցընէ
ուրիշ տէրութեանց հետ. հոգը չէ որ՝ դուրսե-
ցիք իր երկրէն աւելի վաստըկին, եւրոպիա
տանելին վաստըկնելին, այլ ամմէն տէրութ̃
առջինն բաց է օսմանեան երկիրը. ով որ ինչ
ուզէ՝ կրնայ բերել ծախել, իրմէ վաստը-
կիլ: Այսն զի անչափ է իր երկրին բարի-
քը՝ որ քանի շատ ձեռագործ առնէ ուրիշ
տէրութիւններէ, իր բերքին դէմ հատու-
ցում չեն կրնար ընել. հարկ կըլլայ իրենց
ձեռագործներէն զատ նաղտ ըստակալ բե-
րելու. միայն իզմիրէն բեռցուցած բամպա-
կը յիշենք, որ քիչ մը առաջ ամմէն տարի
40 հազար բեռ (պալեա) բամպակ Ֆրէն-
կիստան կըխրկէր, 20 հազար բեռալ բամ-
պըրկէ մանած կըխրկէր. աս բեռները քովի
գեղերէն իզմիր բերելու՝ իզմիրէնալ ծովե-
զերքը տանելու՝ միայն ճամփու խարճ՝ 1786
որ տարին որ մենք իզմիր գտնըվեցանք. շա-
բաթ կըլլար որ 300.500, քեսէ կըխարճէին
վաճառականները, բայց անչափ բամպը-
կին դէմ Ֆրէնկիստան իր ձեռագործները
բերելէն զատ՝ նաւերով նաղտ ըստակալ կը-
խրկէր վճարելու համար: Ինչպէս որ անա-
տօլուին դին իզմիր, ռումէլիին դինալ սե-
լանիկ անչափ բամպակ կըխրկէր տարին:
Հիմա մտածէ՝ օսմանեան երկրէն ելած
նաեւ ուրիշ ապրանքները, ինչպէս է եղը,

իփէկը, մանաւանդ պուրսայի իփէկլին ու տաստունը, որ աշխարհիս մէջ մէկ հատիկ է, մէյմը իր փայլունութեանը համար մէյմալ իր ձգնալուն ու երկընալուն համար։

Օսմանեան տէրութիւնը սաստիկ առատաձեռնութիւն ցըցընելով ուրիշ տէրութեանց հետ՝ ուրիշ բարիք մընալ կուտեննայ, բարիքը օգուտը աս է որ՝ ան տէրութիւնները միշտ իրեն պաշտպան կըկենան, անանկով առանց դաշնակցութի մը ընելու անոնց հետ՝ իբր թէ կատարեալ դաշնակից ըրած կունենայ զիրենք։ Ամէն մէկ եւրոպայի տէրութիւնները ուրիշ տէրութիւններէ վախ կունենան չավըրվելու՝ մանաւանդ իրենց դրացի տէրութիւններէ, աստ ներհակ՝ օսմանեան առատաձեռնութիւը պատճառ կըլլայ որ՝ ուրիշ տէրութիւնները ինքիրեննին ապաւէն ու պաշտպան կըլլան օսմանցիին, վասն զի իրմէ մեծ վաստակ ունին։ Աղէկ կըսեն կենցաղագէտ մարդիկները՝ թէ մէկ տէրութեան ճշմարիտ հարստութիւը՝ իր երկրին բարիքն է, վասն զի կըտեսնանք որ՝ օսմանցին թէպէտ սաստիկ թող կուտայ որ ուրիշ տէրութիւնները իրմէ վաստըկին՝ չէ թէ ինքը ուրիշներէն, բայց սաստիկալ ըլլալով աչափ յաճախ պատերազմէր ընելով մէկի մը պարտք չունի, ներհակ եւրոպայի տէրութեանց, որոնք գրեթէ ամէնքնալ ծանր պարտքի տակ ընկած են ծեծէրուն պատճառով։

Օսմանցուն վրայալ զօրք ժողվելու կամ իր ազգին բազմամարդութեը ու շատնա-

լուծ համար՝ սահմանեցին հող չունենալ, ինչ-
պէս որ եւրոպայի թագաւորութիւններուն կըլլայ
որոնք խիստ հոգ կըտանէին ազգականներին շատ-
ցընելու, որպէս զի կարենան ետեւէ ետեւ
զօրք ժողվել: Նոր համար ինչպէս որ հին
ատեններ հռովմայեցիք, մանաւանդ հիմակուան
ատենը եւրոպայի թագաւորութիւնները զանա-
զան կերպեր կըմտածեն կարգադրութիւններուն
խարճերը թեթեւցընելու, բայց օսմանցին
արդէն առաջուցմէ իր մէջը մտած սովորու-
թիւն ունի, որ կարգադրութիւններուն՝ հարսնիք
ընծօղներուն՝ խարճը քիչ ըլլալէն զատ՝ մա-
նաւանդ հարսնիք ընծօղը կըվաստըկի, չէ
թէ կըխարճէ, որովհետեւ ամմէն եկողը
պէտք է որ ընծայ բերէ նաեւ հերանկերդէն:
Նոյնպէս իրենց հարսնիքը շատ թեթեւ կըլ-
լայ, հարկ չըլլար կանոններ դնել, ինչպէս
որ Ֆրէնկիստանի տէրութիւնները խիստ հոգ
կըտանէին, կանոններ կըդնեն ամուսնութեան
խարճերը թեթեւցընելու, ինչու որ՝ բուն
օսմանեանց հին սովորութիւնը իրենց կանոնն
է՝ որ ամուսնութեան կամ հարսնիքին խարճը
կըթեթեւցընէ:

Ամուսնացելոց համարալ որովհետեւ զատ
զատ տներ նստելու հարկաւորութիւն ունին,
մանաւանդ մէկ կերպ մը ձգերեն որ՝ իրենց մէ-
ջը խիստ քիչ ըստըրկով քիրայ կըվճարեն,
քիչ ըստըրկովալ տուն կըշինեն, անոնցմով.
ան կուխներէն կըխալըսին՝ որ ուրիշ աշ-
խարց մէջ մէկ տեղ նստելէն կելլայ: Նաեւ
որովհետեւ բազմականանալ (խանահաթու-
թի) ունին, ու ամմէն բանի մէջ նոյն ազա-

ցաւ, ինչպէս ժամանակին քաղէք՝ խուռն խափուէին դուրսը ։ Թագաւորին հասկըցուցին պատճառը, անոր համար ան տարին գլուխը կըտրեց Թէ գըզլար աղասիին որ 39 տարուան էր, և Թէ սուլէյմանին գլուխը․ դըռլար աղասիին քովէն անհատնում դրամ ելաւ, ինքը սնած ըլլալով սարանպօլի մէջ, պատմածնին կեօրէ 120 հազար քէսէ նաղդ դրամ ելաւ; իր ճէվահիրներէն և ուրիշ ապրանքներէն զատ ։

Սուլէյմանին խիստ սիրական էր Հայոց ազգին անուանի Նշաղուպ (յակոբ) ամիրային, որուն էնիշտէն էր սուլէյմանը․ անոր ձեռքովը շատ խիստ մեծցաւ, հարստցաւ, խօսքը անցուկ եղաւ, անանկ որ Հայոց ազգին մէջը մէկ հատիկ եղական մարդ մը եղաւ եաղուպը, ինչպէս ան ատեն անանկ խօսքը անցուկ մարդ Հայոց ազգէն չէր եկած սառանպօլի մէջ ։ Նոր աղէկութիւնը ան էր որ՝ ուրիշի բարերարութիւն ընել վարկցընել խիստ կըսիրէր․ իր փառասիրութիւնը ան աղէկ բանի վրայ դըրեր էր որ՝ շատ մարդ վաստըկցընէ, շատ մարդու աղէկութիւն ընէ, անանկով շատ չըրախներ հանած ունէր ։ Ուրբաթ օրերը որովհետև մէզաթ չըլլըվիր չարսուն, ինքը քիրէճ պուռնին կերթար, հոն խիստ կըսիրէր երթալու Թէ տեղին զուարճութեան համար, և Թէ հեռու առանձին տեղ ըլլալուն համար, բայց իրեն հոն երթալը մէկ պինիշ ընել մը կըձեռնար, իր հետի եղօղ նաւակներուն բազմուիլը, չարսուցոց նաւակներուն բազմու-

թիր՝ որ հոն կերթային բանն ծախելու՝ մէկ մեծ հանդէս (տօլայ) մը կերեւցնէին, քիչ րեձիպուռնին կըլլեցընէին, ձեռմահիրի աղրանք բերօղներուն բաղմունքը անչափ կըլլար հոն, որ իբր թէ պեղչեսթէնը հոն կըբացվէր, ձեռմահիրձիներու բանայիր կըլլար. ինքնալ կըսայեր որ՝ եկօղ ձեռմահիրձիներուն հետ մէկ առուտուր մը ընէ, եկօղը պարապ չիհանէ դատարկցընէ. ասանկով ամմէն ուրբաթ մեծ առուտուր կըլլար հոն:

Նոր առատասրտութիւնը իմանալու համար՝ մէկ դիպուած մը պատմենք: Ինչպէս որ սովորութիւն է Ստանպօլ՝ ղուլլուխներուն առջեւի ցեխը (չամուռը) անցվոր բայեներուն ավլել կուտան, կմ՝ անոր տեղը ըստակ կառնեն. օր մը նոր եկած եէնիչէրիին մէկը չիձանչնալով եաղուպին ինչ մեծ մարդըլլալը, ավելը ձեռքը տալով ըստրկի չինայելով բռնադատեց ավլելու. ուրիշ անցվոր հայերէն տեսնալով, իրենք առին ձեռքէն ավելը, անոր ուզածը լմնցուցին: Եաղուպը առանց սրդողելու՝ եէնիչէրիին տեղը անունը հասկընալով, եէնիչէր աղասին առջին կանչել տըվավ. եէնիչէրին ներս մտնալով եաղուպը հոն տեսածին պէս՝ անանկ պատուով եէնիչէր աղասին քովը նստած, յանկարծակի եկավ: Եղբօր կըսպասէր որ մեռնելու պատիժ պիտոր ըսէ, եաղուպը դարձաւ իրեն ըսաւ, ես ձանչցի՞ր թէ ով եմ. երբոր անիկայ կըդողդըղար, եաղուպը եէնիչէր աղասին ըսաւ: Նա

Հնաս եղաւ թէ հայոց ազգին՝ և թէ ուրիշ ազգերու, մեծ փոփոխումն բերաւ, ամենէն ազգի մէջ սուգ թողուց։ Երեք տարի էր քանի որ մեծութեան հասեր էր՝ երեք տարւան մէջ շատ մարդ մեծցուց, թէ որ տասն երեք տարի ևս ապրելու ըլլար՝ իր ձեռքով շատ մարդ պիտոր հարստանային։

Մեծ կրակ մը եղաւ Ստամպօլ 1754 փետրվ. 26 պաստըրմաճիներէն ելլալով վըլանգա երեցաւ, հայոց ազգէն 600 տան չափ մոխիր եղան. օգոստ. 21 մեծ շարժ եղաւ, որ քշեց ինչվան սեպտ. 2. տանեն ատեն երերցընելով, շատ մարդ բաց տեղեր փախան։ Նոյն տարին հիվընդցաւ սուլթան Մահմուտ, երբոր ուրբաթ օրը եկաւ, հարկ եղաւ անանկ հիւանդ սելամլըխ ելլալու, ինչպէս որ օրէն է, դառնալու ատենը չիդիմանալով երբոր ձիէն վար իջնալու եղաւ, հոն մեռաւ դեկտ. 2. 1168 հիճրէթին. 28 սէֆէրին. իր մարմինը թաղվեցաւ վալիտէ ճամիին, որ է Եէնի ճամին։ Սա թագաւորիս մահուան վրայ շատ ցաւեցան չէ թէ միմիայն ստամպօլցիք, հապա նաև օտարները, ինչպէս նաև կայսրուհին Մարիամ Թերեզիային, իրեն խաղաղասէր ու խօսք պահօղ բնութենը համար։ Սուլթան Մահմուտին վերջինները եղան ասոնք։

Սիլէհտար Մէհէմմէտ փաշայ, որ թագաւորին փեսան էր 1730. հիճրէթի 1143. րէպիւլ էվվէլի 17 եղած էր վեզիր. նոյն տարին 13 րէճէպի սուլթան Մահմուտ վերուց անիկայ, Հալէպի փաշայ ըրաւ։

Մուստաֆայ փաշայ, ապստխուռահմանն փա-շային տղան․ 1751 (1165) շապանին 19։
Նոյն օրը մեռաւ տուլղըան մահմուտ։

## Պարսից Վրայ․

1750 — 1753։

Նատիրու գուլի խանը՝ որ կըսուէր նաև Նատըր շահ, 1747ին մեռնելէն ետև՝ շատ խռովութիւններ ելան պարսկաստան Թագաւորելու համար, շատ բռնաւորներ ելան, Թուր 'ի վեր՝ Թուր 'ի վար ընելով իրար կըջարդէին, արիւնլըռուայ կընէին ժողովուրդը․ Մաշաթու մէջ Թագաւոր նըստաւ շահռուհ, որ Նատըր շահին Թոռն էր, ասիկայ քանի հոգի կըգտնար իր ազգականներէն՝ ողջ չէր Թողուր կըսպաննէր․ իսկ ազէրպէճանի կամ ատրպատականի մէջ Թագաւոր նստաւ ատըլշահ, որ Նատըր շահին եղբօրորդին էր․ իր խորհրդին եղբայրն ալ իրեն կողմնակալ (մուհտակըզ) դըրաւ սպահան քաղաքը, նախիջեւան քաղաքին մէջն ալ խան դըրաւ հէյտարը, որ հայերուն շատ նեղութիւն հասուց։ Ատըլը շահուն սպաննեց իբրահիմը որ շահ կըկոչուէր, շահռուհին Թշնամիներն ալ գլուխը բռնեցին, աչքերնէրը փորեցին 1750, կամ ըստ այլոց 1751 մէկ ուրիշը դըրին շահսուլէյմանն անուանով, ըսելով որ Սէֆեան Թագաւորական ցեղէն էր ծնած։ Շահռուհին բարեկամներն ալ սուլէյմանն շա-

հը թռնեցին, աշխէնները հանեցին, կուրցած շահնաւհը նորէն Թագաւոր դրին, բայց պարսից խաներուն շատը չէին ուզեր առկայ ընդունիլ, ամէն մէկը մէյ մէկ խռոնագլուխ տէր եղան, մանաւանդ Ալիմէրտէն խանը լոռաստանին դէն, Հասան խանը մազանդարանին ու Կիլանին դիհերը, Ազատ խանը հայաստանին ու ադրբայճանին դիհերը, ասոնց պատճառաւը շատ պղտողութի ու աւերութեան կըլլար ինչխան ութը տարի :

Ալիմէրտէն խանը իրեն զօրաւորս ունեցաւ լոռաստանցի Քէրիմ խանը, որ շատ կտրիճ մարդ էր, Քէրիզ դաշտին մէջը մէկ մեծ պատերազմ եղաւ, Ալիմէրտէն խանը լոռացիներով Քէրիմ խանին առաջնորդութիւնը յաղթեց պարսից, ինչպէս սպահան հալածեց անոնք, երբոր 1752 սպահան քաղաքնալ առաւ, հրաման տալով իր զօրքին որ՝ իրեք օր ինչպէս ուզեն թալլէն քաղաքը, ասոնք շատ չարիք գործեցին սպահանին մէջ : Ասկէց ետքը Քէրիմ խանը համատան գնաց, որ անոնքալ հնազանդեցընէ, Ալիմէրտէն խանին տակը ձգէ, բայց հոն լսելով Ալիմէրտէն խանին ըրած անիրաւութիւնները, նորէն դարձաւ սպահան եկաւ անոր վրայ վազելով, երբոր Ալիմէրտէն խանը կըփախչէր, զարգաքու ընված տեղը զարնըւելով հալածեց իր զօրքով, ետքը Քէրիմ խանին ազգականները սպաննեցին անիկայ 1753 :

Պարսիկք Թէպէտ առջափ ատէն է միշտ

անհնարին խառնուրդին մէջ են, և պարս-կաստանն ալ Թէպէտ չորս դիհացէն օտար տէրութեանց մէջն է ընկած Հայաստանին պէս, բայց տէրութիւնին ոտքի վրայ է, չփլչիր, վասն զի օտարի դէմ իրենք ի-րենց մէջ խիստ կըմիաբանան, Թող չեն տար օտար տէրութեան ներս վազել: Իրենք մէկ ազգ են, բայց հին պարսիկներ կան, որ ի-րենց հին հաւատքնին բռնած ըլլալով զատ-ված են, հինտիստան գացեր նստերեն. ա-տոնք Փարսի կըսուին, որ ըսել է Պարսիկ, բայց եւրոպացիք Կեավուրք կամ Կէպրիք կըսեն ասոնց: Շատ բազմութիւն են, արեւ ու լուսընկան կըպաշտեն ինչպէս հին պար-սիկները կըպաշտէին, և որովհետև անանկ են դըրեր մտքերնին՝ որ կրակը արեւուն մասն է, անոր պէս լոյս ու ջերմութիւն ունենա-լով, անոր համար կրակն ալ կըպաշտեն: Պարսկաստանին մէկ կողմն ալ ուրիշ մէկ ժողովուրդ մըն ալ կայ, որոնց կեանքը ա-մենեւին հին նահապետներուն կեանքին կըմանի, տարբեր ամենեւին հիմակուան մար-դիկներէն, բոլոր ժողովուրդը իրեւ մէկ տուն մը կըկառավարվի իրենց ծերերէն, ամմէն գեղին մէջինները իրարու հետ բա-ժանորդ (ուլթախ) են, ինչ վաստակ որ կըլլըվի՝ մէկ տեղ կըժողվեն, հաւասար ամ-մէնուն կըբաժնեն իրենց աշխատանքին կե-րէ: Նախու բաներուն գինները որոշված են, բան առնելու ատենը ամենեւին կռիւ մը չըլլըվիր, դատաստանին ալ պրդար ըլ-լալով խաղաղ հանգիստ կեանք մը կըվա-

րեն ։ Ասոնց վրայ մեր ազգին ճամփորդները կըպատմեն, բայց եւրոպացւոց ճամփորդները անդիները գացած չըլլալով, իրենց գրքերուն մէջը չեն յիշուիր ասոնք ։

## Հնդկաստանին վրայ.

1750 ։

Հնդկաստան Մողոլին տէրութիւնը տակ առնող Ժ դարուն ատենները առջինը եղաւ տաճկաց մէջէն մահմուտ, որ մեռաւ 1028ին, իրեն սահմանած մեծ տէրութիւնը բաժնըւեցաւ ԺԲ դարուն մէջը ։ Իսկ 1205ին խուզդուպ ըսված մէյմը հնդկին մէջը մէկ տէրութիւն մը հիմնեց Ղադան կամ Աֆղան անունով, որ քշեց ինչվան 1413. ետքը քիրզէթ կամ չիրզէթ մէյմը առաւ Թախտը, որուն յաջորդները տիրեցին ինչվան 1650, ան ատենը մէկ ավղան մը պէլլուլ անունով իշխեց, բայց որովհետեւ 1525 պապէր անունով մէյմը լէնկթիմուրին ու Ճինկիզխանին ցեղէն իջած տիրեց աս ցեղին վրայ, անոր համար աս Պապէր նահապետէն կըսկըսի մողոլներուն թագաւորներուն կարգը ։ Այս մողոլներուն տէրութիւնը ատեն մը խիստ մեծցաւ հարստացաւ մանաւանդ իրենց օրանկզիպ թագաւորին օրերը ԺԷ դարուն մէջ, միլիոններով եկամուտ ունեցաւ; բայց իրենց երկպառակութիւնը, անխելք կառավարութիւնը, նաեւ երկրին խիստ ընդարձակութիւնը

որ կասկած առնէին թէ իր Հայրենակացը յարեալ չէ, անանկներուն տունմնալ՝ աղ-րանքնալ կըթալլէին, կըկործանէին, կե-րէին. ասկէց շատ հեղ առանց քննելու դատաստանի ճամփով, ան՝ ան՝ կըզըրպար-տէին յափշտակելու համար, ասկէց աւա-զակութիւնալ մէջէրնին անպատիժ կըմնար։ Երրորդ՝ բաօլին մտածելով որ՝ պատե-րազմ առանց ըստորկի չէր կրնար ըլլալ, իսկ քօուսիքացիք չունէին մէկ կապված ե-կամուտ մը, անոր համար 62 հազար լիրէի չափ նոր տուրք մը ձգեց ամմէնուն վրայ, պարտաւորելով որ ամմէննալ իրենց վի-ճակին կեօրէ վճարեն։ Մ՝առիանային՝ ա-լեուիային՝ ու նէպպիօյին եպիսկոպոսները դէմ ելան, ըսելով որ եկեղեցականք ոչ եր-բեք վճարերեն, ազատ են տուրք տալէն, բայց եղքը ինչան, յանձն առին կամաւոր տուրք մը տալու։ Չորրորդ՝ աս վերոյի-շեալ տուրքով՝ նաև ան ըստորկով որ գաղ-տուկ իրեն կուտային աս դիէն ան դիէն մմնաւանդ ինկիլըզեուայէն, մնտուկ մը սահմանելով պատերազմի համար՝ սկսաւ քօուսիքացիները զինուորուէ մէջ կըթել, վասն զի առաջ քօուսիքացիները մէկ քա-ջասրտութի մը միայն ունէին, անով հա-մարձակ կըյարձըկէին, բայց ենթարկութի ու ճիշդ կըթութի զինուորական չունէին։ Ասկէց զատ ճինովլիզի զինուորներուն ի-մաց ըրավ, թէ ով որ ձգէ ճինովլիզին կող-մը՝ իմ քովս գալու ըլլայ, աւելի վճարք կուտամ քան ինչ որ ճինովլիզը կըվճարէ.

և թէ որ Ճինիվիզը եվէլցընէ՝ ես անկէց աւելի կը շատցընեմ․ ատով երկու օգուտ ընել տըվավ իրեն, մէյմը որ՝ Ճինիվիզին զինուորները օրէօր կը պակսէին, վասն զի ըստըկի նայելով բաօլին քովը կուգային, մէյմնալ որ՝ իրեն աղէկ կրթեալ զինուորները կը շատնային ։ Ճինիվիզները աս բանիս վըայ խիստ կատղելով, մեծ վարձք խոստացան՝ ով որ բաօլին գլուխը բերէ ։ Չինգերորդ՝ նոր ժողովք մը ըրավ, ուր տեղ երդում ընել տըվավ ամմէն տանուտէրերուն, որ խիստ կատարեալ կապով կապվին մէջերնին ու ամմէնուն հետ, վասն զի անկէց կըկախվի կըսէր մեր ազատութիւնը՝ ու հասարակաց ապահովութիւնը, ապսպրելով որ՝ ան կասկածաւոր ատեններր մէկը չիկրնայ թուղթ գրել, կամ գաղտուկ խօրաթայ ընել թշնամիներուն հետ, նաև անոնց հետ որ կասկածաւոր են․ թէ հասարակաց բանի համար, և թէ առանձին իր բաներուն համար․ մէկնալ չիկրնայ առւանց զօրապետին հրամանի իր երկրէն դուրս ելլալ։ Վեցերորդ՝ աչքափ տարվան պատերազմի մէջ քուսիքային երկրագործութիւնը խափանվերեր, վարուցան ընելու անհոգ էին եղեր, պաշարի (զահրէի) կարօտութիւնը տիրերեր, ասոր ճարը մտածելով բաօլին հրամեց որ՝ ամմէն երկրի տիրվըտանքը՝ որչափ ցորեն ու ընդեղէն ունին, հաւատարմութե՛ հաշիւը (հիսապը) բերեն իրեն, որ անոր կեօրէ բաժնել տայ․ և թէ որ էվէլնայ, թող տայ դուրս հանե-

կընեն, ու Թագուհիին անհաւատարիմ եղերեր։

## Փրանսայի մէջ եղածները, մինչ ու տասութէնեայի մէջէ եղած խառնակութիւնը.

## 1750—1755։

Լուիզ ԺԵ. Փրանսայի Թագաւորը սա տարի Նոյեմբ. մէջ, զինուորական աշխատանք կանոնութիւն սահմանեց, որ յետագայ տարին 1751 զինուորական դպրատունով բացաւ Փրանսայի մէջ, որն տարվանս մէջ սեպտեմբ. 14. Թագաւորին մեծ թոռին որ տօֆէն կըսվի՝ առջինեկ զաւակը եղաւ պուրկօնի դուքս ըսվելով. իսկ 1753 երկրորդ զաւակ եղաւ՝ որ գրեթէ յանկարծակի մեռաւ։ 1754. օգոստ. 23. նորէն զաւակ եղաւ անոր՝ որ ըսվեցաւ պէռռիի դուքս, ետքը Փրանսայի Թագաւոր եղաւ ԺԶ Լուիզ անունով, սա ան է որ գլխատվեցաւ, ինչպէս որ ետքը պիտոր պատմենք։ Ամերիկա եղած Փրանսայի երկիրներուն մէջ մեծ փոթորիկ մը ու շաժ եղաւ 1752. Ինչուպս, Ճեամմայիքա ըսված կղզիները շատ վնաս քաշեցին, մանաւանդ Սէն Դոմինիկոս կղզին, որուն քաղաքը Սէն Դոմինիկոս անունն, ու Գիշիանս ըսված նաւահանգստին քաղաքը, բոլորովին կործանեցան. 30 հազար մարդ կորսվեցան երեք կղզին մէջը, 10 նաւ երկու խաւփակը, 40 նաւ վաճառականի.

Սավօեային ու Ֆրանսային սահմանակից տեղվանքը 1754էն սկսեալ մէկ քանի հոգւի մը մէկ եղած միաբաններէն, արգելված ապրանքներ կըփախցընէին, որոնց գլուխը կըսվէր Լուիզ Մանտուրին կամ Մանտուրին, մէկ քաջասիրտ յանդուգն երիտասարդ մը. ասոնք քաղաքըներէն մանաւանդ թէ գաւառներէն տուրք կառնէին; ամմէնուն ահուդող էին եղեր. Ֆրանսային եկամուտին վրայ եղօղները հրաման առին որ աս մարդիկները ջնջեն, աս դիս ան դին զօրք խրկեցին բռնելու: Մանտուրինը մայիսի սկիզբները սավօեա գտնըվեցաւ. տեսնալով որ հոնալ զինքը կըփնտռեն, չորս հոգիով մտաւ սավօեային ան բերդը՝ որ կըսվի Ռօքքաֆօռդէ, որ Թարգմանի Սմրաքար. ապահով նստաւ հոն, որովհետև օտարի երկիր ըլլալով Ֆրանսացը չէր կրնար զինքը բռնել. բայց Ֆրանսացին զօրքը քանի տեղ չիդնելով չիմտածելով, առաջ տեղմը մըտան, դէմ կեցող գեղացիներէն 10, 12 հոգի կոտորեցին; մէկալնանք փախուցին. ետքը մտան ռօքքաֆօռդէ բերդը, իր մահձին մէջը բռնելով Մանտուրինը տարին. որ կուէնօպլին դատաստանարանը վաւէնացյի մէջ սպաննել տրվավ:

Նորքոր աս բանս իմացաւ սառտենեային Թագաւորը՝ որուն տակը կըյնայ սավօեա, կտրուկ խօսքերով խնդրեց ԺԵ Լուիզէն Ֆրանսայի Թագաւորէն՝ հաստուցումն տալ իրեն դէմ եղած անպատուութենը որ ըրեցին Ֆրանսացին զօրքը իրեն երկիրը կոխե-

լով։ Ֆրանսացիները՝ սառտէնեայի դեսպանին (էլչին) որ փարէզ էր եկեր, սիրտը առնելու համար՝ քանի հողի որ կային, իրեն յանձնեցին, բայց գլխաւորը երկու հողերով սպաններէին։ Ասչափս հերիք չսեպեց սառտէնեայի թագաւորը կարողլոս մնալու. անոր համար եա կանչեց փարէզէն իր դեսպանը, որ առանց տեսնըվելու Փրանսայի թագաւորին հետ՝ ելլայ գայ. և ուրիշ տերութեան դեսպաններուն որ իր քովը գտուին քաղքին մէջն էին, իր իրաւունքը ազէկ պատճառներով ցըցուց։

Սպանիային թագաւորը մէջ մտաւ որպէս զի մէկ ծեծ մը չիլլացվի մէջերնին. շատ խօսքեր ըլլալէն ետև՝ հոս կապվեցաւ բանը որ՝ Փրանսային թագաւորը յատուկ դեսպան մը խրկէ հանդիսաւոր սառտէնեայի թագաւորին՝ իր պատուոյն հատուցում ընելու համար, ցըցընելով որչափ իրեն դէմ էր իր պաշտօնատէրերուն ըրած անկարգութիւնը, որ զօրք խրկեցին՝ սառտէնեային երկիրը մտան. անկեց ետև բանտարկեալներնալ եա դարձընէ, որչափալ վնաս եղաւ մուխադայէն տիրվըտոցը վճարել տայ, մնացած բաներնալ եա դարձընել տայ. ով որ հրամանն ըրվալ զօրք խրկելու, անիկայ պաշտօնէն ձգէ. զօրաց հազարապետանալ որ առանց հարցընելու իր գնդապետին՝ ուրիշին երկիրը կոխեց, թող վար ձգէ, պատժէ։

Ասոնք ամմէնը գործքով ըրին, ամմէն իտալիայի թագաւորները սառտէնեային թա-

գաւառը գովեցին, որ սաստիկ ընելով լե-ցուց, հաստուցաւմ ըրավ նաև ան նուաս-տութեր ան ցածութեր՝ որ սովօրական դուր-ը կարողաս ա̃ մանուել 1611 քաշերեր ։ Շատ հեղ փորձունք ու խօրաթել գիտ-նալն է՝ որ աւելի բան կըսորվեցնայ, քան թէ մեծութիւնը և ուժը ։

## Փորթուգալլին շարժը, և ուրիշ տեղեր եղած խախտումները.

### 1755 ։

Սա տարի նոյեմբ. 1. օհարսըկէն երկու ժամ առաջ փորթուկալլին լիզպոն քաղքին մէջ մէկ փոթորիկ մը ելավ խարաճելով, դակօ գետին վրայ եղած նաւերը որ շար-վոր էին՝ վտանգի մէջ ընկան ցամաքը զար-նելու. փոթորիկէն ետև մէկ ահագին շարժ մը սկսաւ որ՝ 5 վայրկեան քշեց. դադրե-ցաւ՝ ետքը նորէն շարժիլ սկսաւ. քաղքին պատերը կործանեցան, տներ՝ պալատներ (խօնախներ՝) ժամեր՝ աշտարակներ՝ զան-կակատուններ՝ մահալէններ փլան ։ Մէկ դիպցէն շաժը վնաս կուտար, մէկալ դիպ-ցէն ջուրը, վ̃ զի ծովը վեց ոտքէն աւելի բարձրըցաւ, ծովեզերեայ շէնքերը ջուրի տակ կոխեց ։ Մէկ երրորդ վնասիչ մընալ ելաւ կրակը, վասն զի անանկ ատեն եղավ շարժը, որ ամմէն տուն օճախներին վառած, տնեցիքալ ժամ գացած էին երբոր շարժը շէնքերը փլցուց, տախտըկները կրակին մէ-

կենալով, Հաղորդաւոր տեղ կրնակ հանել տըվավ. ժողովուրդը չգիտէին շանթէ՞ն մի փախչին, ջուրէն մի փախչին, կրակէն մի փախչին. անզգամ անգութ մարդիկնալ սա միջոցին մէջ վաստակ փնտռելով, իրենք ալ նորէն կրակ կը ձգէին սա դին՝ ան դին՝ որ կարենան թալլել, անչափ եղավ որ՝ դատաւորները ամէն տեղ կախաղան դրին, կրակ ձգողները կը բռնէին կը կախէին: Քաղքին վեցերորդ մասը կործանեցաւ, մեռնողներուն համրանքը խիստ շատ կըդնեն, բայց ստոյգ է որ 60 հազար հոգիի չափ կորսուեցան: Մնացած բնակիչքը ամէնը մաղաղուն եղած գեղերը՝ ու դաշտ գետին եզերքը փախան, որ լեռանէն քիչ մը վար ովկիանոս ծովը կը խառնըվի, թագաւորը ա̃ յովսէփ պէլէմ փախաւ, վրանի (չատըրի) տակ նստելով. կարօտ եղող ժողովրդեան ըստակ ու կերակուր բաժնել տալով. շատ կորուստ եղավ ամէն ազգի վաճառականներուն ու սարրաֆներուն, որ անանկ երևելի քաղաքի մէջ շատ ապրանք ու ըստակ ունէին: Հասարակաց աղօթքներ սահմանվեցաւ՝ այս բարկութիւնը դադրեցընելու համար (1). իսկ քննութեան ատեանը (տրիվանը) սա տարի երեւ տըվավ

(1) Գաղա կէլմէզ գուլայ, հաք եաղմայընձայ,
պէլա կէլմէզ գուլայ, գուլ աղմայընձայ:
Ըսել է, փորձանք չիգար մարդուս՝
մինչեւ որ աստուծմէ չիվճռուի.
չարիք չիգար մարդուս՝
մինչեւ որ մարդս չիկանչի:

16 հոգի էրիկ մարդ ու կնիկ մարդ՝ գաղ-տուկ Հրեայ ընտանիքն համար. տասնեկ հա-ւատքի համար հրապարակաւ մարդ էրելը՝ Փորթուկալցիք Աւտօ տա Ֆէ կըսեն, այս-ինքն՝ "Ներգործութիւն հաւատոյ:
Ասանկով աս պատուական քաղաքը Լիզպոնն իբր թէ ոչնչացաւ, մեռելներով աւերակ-ներով լեցուեցաւ. վասն զի ան օրը տօն ա-մենայն սրբոց ըլլալով ու պատարագի ատեն՝ ամենքն ժամ լեցուն էր ժողովրդով, շատ ժամերուն կամարները գմբեթները վար իյ-նալով՝ բազմութիւն ժողովրդեան տակը մնացին. 12 տարի անցնելէն ետեւ ալ երբոր գետինը կըփորէին, անոնց ոսկորները կը-գտնային. մինակ մէկ եկեղեցւոյ աւերա-կէն տակէն հազարաւոր մարդկմախներու գըլ-խուններ կըգտնային. տներուն աւերակներէն ալ մարդ ու ըստակ կըհանէին: Երեսուն տարի անցնելէն ետեւ ալ դեռ փլածներուն աւերակները չէին հատած, շատ տեղերին խո-տեր բուսած. փորելու կըվախնային՝ վասն զի ինչպէս որ ականատեսները մեզ պատ-մեցին՝ Սալամանքը Թունաւոր կենդանիները տակաւին բազմութ[իւ]ն ձագեր հանելով շատ-ցած էին մէջերնին. ասոնք կըրակ տալով չէր ըլլար հատցընել, վասն զի աս կենդա-նին կրակին մէջը ողջ կըմնայ: Ատեն ա-տեն այն տեղվանքներու փորելով շատ դի-պուածներ պատմեցին մեզ զարմանալի:
Աս զարհուրելի շաժը ծաւալեցաւ նաեւ ամենքն Փորթուկալին երկրին մէջ, ինչպէս Ալկառվէ ու Անտալուսիա որ Սպանիոյն

Ֆրանսայի խառնակութիւնք .

1751 :

Աս տարիներս ինչ խռովութիւն որ եղաւ Ֆրանսայի մէջ՝ հաւատքի վրայով եղաւ . մէկ դիհացէն անհաւատութեան քարոզողները կըհանէին , մէկալ դիհացէնալ յանսենեանք կըհանէին , անանկ որ՝ աս տարիներուս Ֆրանսայի քաղաքական պատմութիւնը խառնուած է եկեղեցական պատմութեան հետ . Սուրբ ծխարաններէն մէյմը Պուատէս անունով 1751 գիրք մը հանեց , որուն մէջը գրեթէ հարիւր նախադասութիւն կային անհաւատութեան . երբոր սորպոնին ժողովքին մէջը քննադատուեր տեսաւ , ամէնքնալ դայթակղելով աղաղակ վերցնելով մերժեցին : Ժողովը ցրուեցաւ , հեռեւեալ տարին եպիսկոպոսնալ արքունիքնալ ու քահանայ մէնդնալ դատապարտելով անոր գրուածը պատռուեցին , ու դահճի ձեռքով երեցին . եպիսկոպոսը հերձուածներին վրայէն ամէն եկեղեցական իշխանութիւնը վերուց , աշխարհական իշխանաւորներնալ քանոնը դնել հրամեցին անիկայ , բայց բռնաւորին համախոհները պէտքին փախուցին , Փետերիքոսի պրուսի թագաւորին յանձնեցին . վասն զի Փետերիքոս ասանկ անհաւատներու պաշտպան էր :

Փետերիքոս շատ աղէկուն ըրաւ բռնաւորի , իր վարպետը մեռնելէն ետեւ՝ բռնաւո-

որ իրեն վարպետն ըրաւ. մեծերը ասոր սաստիկ բարեկամութեանը վրայ նախանձելով, ամբաստանեցին Ֆետերիքոսի՝ որ Պռատէսը գաղտուկ Թղթակցութիւն կընէ Փրանսըզ զօրապետներու հետ, և Թէպէտ ամբաստանութիւնը չստուգուեցաւ, բայց պատժըւեցաւ, ետքը Կլօկաւ խրկըւեցաւ, ուր բանտի պէս կըկենար ։ Պռատէսը մէկն էր անոնցմէ՝ որ Հանրագիտական բառարանին վրայ կաշխատէին, որուն անունն դըրին Անսիքլօբէտիա. մէջը անհաւատութեան խօսքեր կըվխտային ։ Գիտենք որ 1754 պըրէզլաւին եպիսկոպոսին յորդորելովը՝ Պռատէս ետ կանչեց իր մոլորութիւնը, անոր համար ժը Պէնետիքտոս քահանայապետը առջի աստիճանը հանել տըւաւ անիկայ Սորպօնին մէջը, բայց Պռատէս Կլօկաւ մեռաւ 1782 ։ Անհաւատութեան խօսքերը ասկէց առաջ մութ խօսքերով կըսերմանէին, ու Պռատէսին ըրածը առջինը եղաւ որ՝ յայտնի խօսքերով քարոզել սկսաւ. ու Թուականն մը եղաւ ան խռովութեան՝ որ անհաւատութեան պատճառովը բռնկեցաւ Փրանսայի մէջ ։

Երկրորդ խռովութիւնը Փրանսայի՝ յանսենեանց պատճառովը եղաւ, շատ առաջ 1713. սեպտեմ. 8. մէկ կոնդակ մը ելած էր Հռոմայէն՝ ուր կըդատապարտէր 101 նախադասութիւն յանսենեանն՝ որ Քէնէլ վարդապետին գրքին մէջէն կըգտնըւէին. անգիրքն էր բարոյական խրատ կամ մտածութիւն Նոր կտակարանին խօսքերուն վրայ.

թուլէր, որ անկախ ըլլալ թէ եկեղեցական և թէ Թագաւորական իշխանութէ. յանսենեանք որովհետև չէին ուզեր հնազանդիլ իրենց բանին մէջ ոչ եկեղեցական և ոչ քաղաքական իշխանութեց, աս բանս անհաւատներուն միտքին դրածին խիստ համաձայն գալով մէկ տեղ միացան, եկան յանսենեանց դին սաստիկ պաշտպանել, և որովհետև Ճիզվիթները խիստ դէմ էին յանսենեանց, անոր համար Փրանսայի բառլամենդներնալ խիստ հակառակ եղան Ճիզվիթներուն: Արդէն առկէնօն կոմսը որ կառավարութէ մէջն էր, ու մինիսթրիմ աշխերտ վօլդէռին, 1765 ին վեր՝ դըրքերէր միտքը առմէջն կրօնաւորները վերցընելու, իրենն յաջորդներնալ նոյն միտքը ունէին, որոնք էին շուազէօլ դուքսը, բուաթյէն, մալըհէրպ, ևն. աստնց օրէրը մէշտ կընայէին որ մէյ մէկ առթիւ (մահմանայով) հալածումը աւելցընեն եկեղեցականաց դէմ:

Պէտրը աս եղաւ որ՝ լուիզ ԺԵ Փրանսայի Թագաւորը թէպէտ աստնց անհաւատութէ միտքը չունէր, բայց ընութէ դաշտուկ մամածակ ըլլալով, ու իր հեշտախտութեցը մէջ ընկղմած ըլլալով, չէր արթըննար անհ աղդարարութէ վրայ՝ որ եկեղեցականք իրէն կըծանուցանէին, նաև ամանք իշխաններէն՝ ինչպէս էր Պէադէն: Աս թագաւորին թուլութինը պատճառ եղաւ որ՝ չարաչար երկպառակութէ ու շփոթութէ մէջ ընկան եկեղեցականները, իշխանները, ժողովուրդը, Թախտը ու հաւատքը, ու չա-

ըներուն կամքը օրէօր առաւել գնայ ։
Մասնկով կարդացողը աղէկ կիմանայ՝ թէ
ինչու համար յանսեններանց բանը՝ որ սոսկ
մէկ հերետիկոսութի՛ մ'ըներ, բայց ուրիշ
շատ հերետիկոսութեանց աւելի բըլըլկոց (խառ-
լապալըխ) ու բաժանմունքներ հանեց,
շատ տարի քշեց, ու մեծ վնասներ բերաւ ։
Պատճառը աս է որ՝ ան հերետիկոսութեն
կ'ուզին հետ ուրիշ քաղաքական կռիւներ-
ալ խառնըվեցան. մէյմը որ՝ բաւլամենտ-
ները կամ Ֆրանսայի շատ մեծերը՝ ար-
դէն կ'ուզէին եկեղեցականաց իշխանութիւր
ամմէն դիացէն վերցընել ջնջել, տեսնալով
որ՝ յանսեններանց բանին մէջ արձակուած տա-
լու չիտալու վրայ՝ ժողովուրդնալ իրենց-
դին է, կըգըրգռէին սաստիկ շինկոց հանել
կուտային, որ եկեղեցականքը ատելի ը-
նեն, անոնց խօսքը քալցընել չիտան ։ Երկ-
րորդ՝ որ թագաւորութիւնալ կ'ուզէին վեր-
ցընել, հասարակապետութի խօթել, յան-
սեններանց պատճառովը թագաւորին կա-
ռավարութիւնալ եկեղեցականաց հետ մէկ-
տեղ կըջանային ատելի ընել ժողովըրդեան,
որ արդէն չիհաւնիլ մը սկսեր էր ։ Նոր հա-
մար յանսեններանք ըսելով շատ գրքերու
մէջ՝ միայն յանսեններանք չեն իմանար, հա-
պա անհաւատներնալ կիմանան, ու որուն
անհաւատ մարդիկներնալ բուն յանսեն-
եանց բանը իրենց գործիք մը առին՝ իրենց
միտքի դրածը առաջ տանելու, որ էր ան-
հաւատութի ու անտէր ըլլալ. անանկով
բանը փոխվեցաւ ։

## Յանսենեանց պառակտումը Բառլամէնդին նորէն Ներբ Իշխէն.

## 1751—1753.

Մէկ քահանայ մը Ս. Ստեփաննոսի եկեղեցւոյն՝ հնազանդելով իր արքեպիսկոպոսին, 1751 չէր տուած յանսենեանց արձակում ու հաղորդութիւն. բառլամէնդը ալ նոր ու փարէզի արքեպիսկոպոսին նորէն դէմ ելաւ: Թագաւորը եկեղեցականաց դին կըպաշտպանէր, բառլամէնդը շատ գանկատներ կըհանէր աս բանին վրայ. և եկեղեցականքն ալ զօրաւոր պատասխան կուտային, առանց հակաճառութեան անցուցին բոլոր 1752 տարին:

Բառլամէնդը աս պատճառաւ կըբերէր որ՝ Միածին կոնդակին համար առանց ճիշդ հնազանդութիւն պահանջելով, ու խոստովանութեան համար թուղթ ուզելով, ազգին մէջը մէկ հերձուած մը կըլինար. բայց չէր մտածեր որ՝ յանսենեանք էին որ ապստամբած էին եկեղեցւոյն ու թագաւորին վճռին դէմ, անոնք էին որ աս հերձուածը հաներ էին. անոնք չըզղջալը՝ հերձուածը չեղաւել էր: Որպէս զի աս հերձուածը վերցընէ՝ կըջանար բառլամէնդը որ երկու դաս մը մէկ տեղ միաբանեցընէ; բայց բռնադատելով ուղղափառները որ յանսենեանց խօսքին մտիկ դնեն. իսկ եկեղեցականք ու թագաւորը կըպնդէին թէ աս միաբանու-

միշտ գժտութիւն ( խըռ-խըռ ) կար. բայց պատճառը սա էր որ՝ մէկ կողմ օրէնք մը չունէր Փրանսա՝ որ երկուքին իշխանութե-ները որոշէ, բառլամէնդին՝ ու Մեծ խորհուրդին՝ թէ ինչպէս ուր կըհասնէր. ան-կեց երկուքնալ իրենց իշխանութիւնը կուզէին ընդարձակել, մէկմէկու վրայ կուզէին իշխել, մէջերնին միշտ թշնամութի կար։ Մեծ խոյց կամ խորհուրդ ըսածնիս՝ սկիզբը խորհուրդ կամ ժողով մ'ըներ թագաւորներուն համար, ուր երթար թագը՝ ատալ հետը մէկ տեղ կերթար, ետքը կամաց կամաց կառավարութի ամենէն բանը փոխուելով ատալ փոխուեցաւ. Է Կարոլոս թագաւորէն ետե ասիկայ եղաւ մէկ դատաւոր մը, դատաւորներուն յարմար ըլլալնին կըքննէր, եկամուտներուն վրայ ալ վէճը կըլուծէր եւն։ Մէկ խորհրդական մը պարոնքի համար կանչըւած ըլլալով դատաւորի տեղին, Մեծ խորհուրդը կամ խոյցը իրեն տեղին կանչեց քըննեց, ու ան դատաւորին վճիռը ոչնչացուց. բառլամէնդնալ աս եղաւ Մեծ խորհուրդին վճիռը ոչնչացուց. թագաւորը ատոր դէմ ելաւ հաստատեց. Նորէն տրտունջնե-րը շատցան, ամենէն բառլամէնդցիք ալ պանալ սկսան, ժողովուրդը բաժնուեցաւ։ Ըսած քանի իշխանները ժողվուեցան, բայց թագաւորը արգելեց ժողովքը, վէճը մնաց անորոշ, ինչպէս որ անորոշ մնացեր էին ուրիշ բաներնալ։ Նախկին փարէզին մէջը օրէօր անանկ կըշատնար իրաւունքի հակառակութիւնը խառնուելութիւնը՝ որ

մարդ չկրնար բաժանուել. ամմէն օր դըր-ուածներ կըլլային Պորտատաղէտ, որ մէկ կողմը՝ մէկալ կողմը՝ կըպարսաւէին կընա-խատէին կծու խօսքերով. ամմէն առանձին մարդիկներուն դատաստանները խափան-ուած կեցած էին. որբերը՝ որբեւայրիները՝ և քանի խեղճեր կային որ՝ կըսպասէին իրենց դատաստանին լմնցընելու՝ արդա-րութիւն ընելու՝ ամմէննալ երեսէ ձգած մնա-ցեր էին, հացի կարօտ զուրկ կեցած էին; արդարուն ընօղները դատաւորները իրա-րու հետ կռուող ըլլալով, մէկմէկու վրայ քէն ունենալով:

Թագաւորը մայիսի 7. զմուրված թղթեր խրկեց 200ի չափ բառլամէնդի մէջի ե-ղօղներուն Մեծ խուցէն զատ, առանց ամմէննալ մէյ մէկ դիւքշեց 24 ժամու մէջ: ասով կըկարծէր Թագաւորը որ Մեծ խու-ցին կամ խորհուրդին մէջի եղօղները իրենք զիրենք վար պիտոր դնեն, բայց մայիսի 9 ատոնք ժողվըվեցան հինգ հոգիէն զատ՝ միաբան վճռեցին որ՝ ինչպէս որ առաջ կեր-թային՝ անանկ երթան. եկեղեցականաց վրայի եղած ամբաստանութիւնը յանե-նեանց բանին համար կընդունէին. քանի մը աւագ երէցալ բանտը դնել վճռեցին: Իրենց սաանկ ընելովը՝ եկեղեցինայ օրէնքը՝ Թագաւորին իշխանութիւնը՝ ոտքի տակ կառ-նէին, բայց իրենք կըհռչակէին որ՝ մենք ե-կեղեցինայ օրէնքը՝ Թագաւորին իշխանութիւնը՝ ու բառլամէնդին ազատութիւնը կուզենք պահել. ան ատենը Թագաւորը Մեծ խուցը

ֆօնդուագ ըռված տեղը խրկեց, որ հոն ընեն իրենց դատաստաննին, ասոր տեղը մէկ նոր դատաստանարան մը դրաւ, Թագաւորական խուց անուանով։

Ինչ որ փարիզի բառլամէնդին վրայ եղաւ, նոյնը եղաւ շատ բառլամէնդներուն վրայ որ ամէն Ֆրանսայի մէջ կային։ Ռօհանին բառլամէնդը անչափ գոռոզցեր էր՝ որ Էվրօյին եպիսկոպոսը բանտը դնել հրամեց, բայց Թագաւորը ոչնչացուց անոր վճիռը։ Անոնց խօսքը ուր որ գնաց, հոնալ իր ըրածները չփոխեց. ամէն դատաստանը ձգեր էր, միայն անոնք կըդատէր՝ որոնք որ առձակում ու սրբուն չէին իտար յանսեննեանց։

Բառլամէնդին ետ կանչըվիլը, անոր ու Թագաւորին մէջ եղած տարաձայնութիւնը, փարիզին արքեպիսկոպոսին քշըվիլը.

1753—1755։

Քշված բառլամէնդը շատ ատեն ընկաւ որ տեղը դառնայ՝ արքունիքը միջնորդ բռնելով. վասն զի Թագաւորական խուցը կամ խորհուրդը որ բառլամէնդին տեղը դրված էր, ուշ դատաստան կըտեսնար. ժողովուրդնալ սորված ըլլալով կուզէր տեսնալ բառլամէնդը իբրև իրեն պաշտպանը. անոր համար սեպտ. 2. Թագաւորը կանչեց, հրամայելով ինչ որ Թագաւորական պատուէր է պահեն, և մասնաւորապէս լռութիւն կըպատուիրէր։ Աս լռու-

Թէև եկեղեցականները կարծեցին որ յանձ-նեանց վրայ էր, իբր թէ չիգրեն չիջա-տագովեն իրենց կարծիքը, ու հրապարա-կաւ չիվիճաբանին, բայց ետքը իմացան որ՝ ատոր ներհակ իրենց վրայ էր պատուերը՝ թէ եկեղեցականք հիւանդներուն բան մը չիհարցընեն մեռնելու կենդանիկին վրայօք, խոստովանանքի համարալ թուղթ չիպա-հանջեն. Թագաւորին քովինները անհաւատ մարդիկ ըլլալով աս պատուէրս դնել տը-վին: Պառլամենդին ետ դառնալը՝ տեղը նստիլը՝ մէկ յաղթանակ մը սեպվեցաւ ան-հաւատներուն, որ ամէն եկեղեցականքը կուզեին ջնջել, խառովութիւնը ալ աւելի շատցաւ:

Աս եկեղեցականներուն աղօրմելութիւնը հերիք չէ, Թագաւորենալ հրաման ելավ նոր տուրք տալու, ինկիլիզին հետ նոր ծեծ բացվելուն պատճառովը. փարէզին բառ-լամենդը չուզեց աս բանիս խայտը ընելու, խնդրեց որ իրեն պատճառները լսէ. Թա-գաւորը ետ մտիկ դնել չեմ ուզեր ըսավ, հապա կուզեմ որ դուք մտիկ ընէք. մէկ օր միջոց ձեզի, հարկաւորապէս կուզեմ որ հնազանդիք: Նոյնը ամենուն չիշարժե-ցան, Թագաւորը բարկացաւ, տեսաւ որ իշխանները Թագաւորական իշխանութեան կու-զեին բանեցընել, կերպը փոխեց:

Սովորութիւն էր Փրանսա երբոր Թագա-ւորը նոր օրէնք մը պիտոր տար, կամ մէկ մեծ հրաման մը հանելու ըլլար ամէնուն, իր հանդիսական հագուստը կըհագնէր,

իր քովը կառնէր բառլամէնդին մէջի եղող-
ները, Թագաւորազուն իշխանները, Թա-
գաւորութեան Լոռտները որ ուրիշ իշխան-
ներ են, թէ եկեղեցականները, և թէ
աշխարհականները, և քանի մեծեր որ կայ-
քին արքունեաց մէջ ու ամմէն երկրին
մէջ, անանկով իր հրամանքը կըպատուի-
րէր։ Հիմա ալ աս հանդէսով նստաւ վերա-
տաղեայի մէջ, ուր է Թագաւորական դար-
պասը ( սէրայը ) փարլըմէն քիչ մը հեռու.
հոն մեծ դիւանադպիրը հրատարակեց Թա-
գաւորին կամքը, ուզելով որ՝ իր հրամանը
տուրք ձգելու վրայ խայտ ըլլըվի, որով
Թագաւորին հրամանը զօրութի առնէ։ Ան
ատենը խօսք տըվին, բայց բառլամէնդը
երբոր իր տեղը դարձաւ՝ անոր դէմը հրա-
տարակեց աս պատճառները բերելով, մէյ-
մը որ՝ իրենց ազատութիւն չտըրվեցաւ ինչ-
պէս որ պէտք էր քննելու. մէյմալ որ՝
Թագաւորին հրամանը քիչ մը խնջեցընելու
կակըղցընելու էր, որ ոչ Թագաւորին շա-
հուն դէմ ըլլայ, և ոչ ուրիշ ամմէն երկրի,
որուն համար երդում ըրած ենք կըսէին
պաշտպանելու։ Աս բաներս ատենօք կընայ-
ին շտկըվիլ, բայց ժողովրդեան մէջի եղած
խռովութիւնը ու տարաձայնութիւնը Միա-
ծին կոնդակին համար՝ աս տուրքին վրայի
եղած շփոթութեանը հետ կըխառնըվէին,
նոր դիպուածներ նորէնոր խռովութիւն
հանել կուտային։

Բառլամէնդին մէկ խորհրդականը իր գե-
դին տունը հիւանդ պառկելով Մէօ Թեմին

մէջ, այն տեղացի քահանան հաղորդութիւն չտուաւ, Միածին կոնդակին դէմ ըլլալուն համար, անանկ անհաղորդ մեռաւ, քահանան ուզեցին բռնել՝ փախաւ։ Այս ստեփաննոսի եկեղեցւոյ աւագ երէցն ալ արձակում ու որբուն չտրվալ մէկ կնկան մը՝ որ չէր ուզէր յանսենեան վարդապետութիւնը ձգել, առ բանս շատ խօրաթաներ հանել տրվալ, բառլամէնդը կըբռնադատէր քահանան որ խորհուրդները տայ, և որովհետև արքեպիսկոպոսն էր որ քահանային հրամերէր չտալ, բառլամէնդը Թագաւորին ամբաստանեց, Թագաւորն ալ արքեպիսկոպոսը կանչեց, ատենասօն վեցիրին ձեռքովը մէկ Թուղթ մը տրվալ զմռուված. այն Թղթովը արքեպիսկոպոսը քշվեցաւ Կոնֆլանս տեղը, ուր էր իր գեղին տունը. հոն տեղս ժամուն ամպիոնը ելլալով քարոզ կուտար արքեպիսկոպոսը որ Միածին կոնդակը պէտք է իբրև կանոն հաւատոյ բռնել. Թէ որ մէկը անոր վրայ տարակուսի, հաւատոյ դէմ ըրած կըլլայ։

Աս եղաւ սկզբնաւորութիւն այն հալածանքին՝ որ բառլամէնդին մէջի եղօղները կուզէին եկեղեցականաց վրայ հանել. սկսան ուրիշ եպիսկոպոսներուն ու աւագ երէցներուն ալ վրայ քննութիւն ընել, բայց անոնք հաստատուն կեցան. շատ եպիսկոպոսներ յորդորանքի Թղթեր հանեցին, որոնց մէջը երևելի եղաւ Պուլօնի եպիսկոպոսը, որ բառլամէնդի մեծին խիստ զօրաւոր Թուղթ մը գրեց պատճառները ցուցնելով, ու

պատրաստ էինք ըսելով առաքելոց պէս ամ-
մէն հալածանքը քաշելու ։ Բաւալամէնգի
դին եղօղները շատ եռանդ ընկան փարե-
ցին արքեպիսկոպոսին միտքը փոխելու,
բայց անիկայ հաստատուն կենալով եկե-
ղեցականաց ժողովքին յանձնեց որոշումը․
աս ժողովքը վճռեց որ՝ խոստովանանքի
համար հարկաւոր է Թուղթ պահանջել,
բայց ինչպէս ըլլալու համար երկու ճամ-
փայ առաջարկեց սրբազան պապին ։

Բաւալամէնգին խարդաւանքը եկեղեցականաց վրայ,
եկեղեցականաց ժողովը․

1756․

Աս միջոցին մէջ աշխարհական դատաս-
տանները բոլորովին զբաղեալ էին եկեղե-
ցականները քննելու՝ պատժելու՝ և քշելու․
Լվչ գաւառին արքեպիսը իրեն ու իր տա-
նըմէկ քորեպիսկոպոսներուն անունովը մէկ
ջատագովական Թուղթ մը գրեց Թագա-
ւորին, զօրաւոր պատճառներով ցըցընե-
լով եկեղեցականաց իրաւունքը, որուն ամ-
մէննալ հաւնեցան ։ Բայց հակառակորդք
օրէօր կեվելցընէին իրենց հակառակութիւնը
եկեղեցականաց դէմ, ու յանսենեան հերե-
տիկոսութիւնը կըջատագովէին, ասոնք ի-
րեք եպիսկոպոս քշեցին իրենց յորդորական
Թղթեր հանելնուն համար․ իսկ Լվչին արք-
եպիսկոպոսին Թուղթը իբրև սուտ ու չին-
ծու Թուղթ հռչակելով բաւալամէնգը դա-

տապարտեց, ու դահճին ձեռքով պատըռատել տըւաւ, անկեց ետքը ժողովրդապետները, աւագ երէցները, քահանաները, մըր քշեցին, մըր փախան։

Բռնակալմէնդը իր դիւանադպիրը խրկեց փարէզի արքեպիսկոպոսին, հարցընելով որ՝ իր ետքի որոշումը գուրցէ. արքեպիսկոպոսը երկան խօսելով բանը հոս վերջացուց որ՝ խաղաղութիւնը ան ատենը կըլլայ, երբոր բռնակալմէնդը չիխառնըվի եկեղեցական նը խորհուրդները տալու չտալու վրայ. աս բանիս մէջ միայն եկեղեցնայ պաշտօնէից կինայ ըսավ խառնըվելու։ Ան ատենը բռնակալմէնդը իր մենծը Թագաւորին խրկեց՝ նորէն ամբաստանելով փարէզին արքեպիսկոպոսին վրայ. Թագաւորը երկու քառտինալ՝ երկու մենծ աշխարհական խրկեց քօնֆլանս տեղը, որ արքեպիսկոպոսը յորդորեն քիչ մը կակըղցընելու իր վարդապետութիւնը. և որովհետև անիկայ չընդունեց, աւելի հեռու տեղ քշեց որ կըսվէր Լակմի, 15 մղոն (միլ) փարէզէն հեռու։

Թագաւորին հրամելովը՝ 20 եպիսկոպոս որ ան ատենը փարէզի մէջ կըգտնըվէին, ժողով ըրին ռօշֆուքօլ քառտինալին քով. հոն 4 ժամ խօսելէն ետև՝ որոշեցին որ եկեղեցականաց ժողովքին յանձնեն թէ՛ նը խորհուրդները մատակարարելու վրայ՝ և թէ լռութեանը վրայ՝ որ Թագաւորը սեպտ. 2. ապսպըրերէր։ Նոյն օրը երկու քառտինալ Լակմի տեղը գացին, փարէզի արքեպիսկոպոսին հանկըցուցին.

արքեպիսկոպոսնալ անոնց հետ համաձայնե-
լով փարէզին ամմէն ժողովրդապետնե-
րը իրեն կանչեց, խրատ տըվավ թէ ինչ-
պէս պէտք էր վարվելու. ան ատենը Թա-
գաւորը նորէն քօնֆլանս դարձուց փարէ-
զին արքեպիսկոպոսը: Բառլամէնդը ու-
զելով հասկընալ արդեօք ինչ պատուէր
դըրավ փարէզին արքեպիսկոպոսը, իրեն
կանչեց ժողովրդապետները. որոնցմէ 25
ժողովրդապետ եկան պատմեցին որ՝ յայտ-
նի յանսէնեան եզօզներուն արգելեց խոր-
հուրդ տալը. իսկ որոնց որ՝ խոստովանա-
հայրերնին յայտնի չէր՝ ապսպրեց խոհե-
մութիւն բանեցընել, բայց իմանալ: Աս
լսելով բառլամէնդը նորէն ամբաստանու-
թիւն ըրավ Թագաւորին՝ արքեպիսկոպո-
սին վըրայ. Թագաւորը դժարցաւ բառլա-
մէնդին դէմ՝ թէ ինչ կըրվայլէր ձեզի քա-
հանայները կանչել զուրցընել տալ ան բա-
նը՝ որ իրենց հոգևոր մեծաւորը ծածուկ
էր ապսպրած. բառլամէնդնալ դժարնա-
լով Թգ̃րին խօսքին վըրայ՝ կարճ ու կծու
խօսքով մը պատասխան տըվավ:

Մայիսի 28, եղավ եկեղեցականաց ժողո-
վը, հոն գտնըվեցան 9 արքեպիսկոպոս, 23
եպիսկոպոս ու 32 աբբայներ, և որովհետև
չիկըցան Թագաւորին ետ կանչել տալ փա-
րէզին արքեպ̃սը իր քշված տեղէն, անոր հա-
մար քառտինալ ռօշֆուքօլը եղավ ժողո-
վին նախագահ. առջի խօսքը ժողովին մէջը
աս եղավ: Արքունիքը կուզէ որ՝ եկեղե-
ցականք ուրիշներուն հետ հաւասար վճա-

րեն ամմէն տուրքը ։ Բայց որովհետև ասոր վրայ խօսված էր մէկ Թագաւորական խորհուրդի մը մէջ, Թագաւորը կամաւոր պարգև մը ուզերէր առջի անգամներէն աւելի, եկեղեցականքալ յանձն առերէին վճարելու. անոր համար ասոր վրայի խօրաթան Թօղուցին, եկեղեցական բաներու վրայ սկսան խորհուրդ ընել. որպէս զի բանը հեշտ (խօլայ) լմննայ, մէկ պզտիկ ժողով մը դրին, ութը հոգի մեծ եպիսկոպոսները ընտրելով, և ութնալ պզտիկ եպիսկոպոսներէն. աս պզտիկ ժողովքին յանձնեցին որ քննեն, ու իրենց կարծիքը մեծ ժողովքին հասկըցընեն Թէ Միածին կանդակին վրայ, և Թէ աշխարհական դատաւորներուն ըրածին վրայ ։ Երբոր մէկ բան մը բազմութեն կէնայ, աղէկ ճամփան ան է որ՝ քանի մը ընտիր հոգիներուն յանձնեն, անով հեշտ (խօլայ) կըլմննայ բանը ։ Աս պզտիկ ժողովը՝ որուն գլխաւորը առլէօին արքեպիսկոպոսն էր, ասոր գլուխ բան որոշեց, տրված մեծ ժողովքին. բայց ասոնց վրայ մէջերնին տարաձայնութիւն ելլալով՝ որոշեցին որ սրբազան պապին յանձնեն ամմէն բան, որ ժողովքին սկսելու առեն Թագաւորին Թուղթ մը գրերէր եկեղեցականները պաշտպանելով ։ Նաև Թագաւորը ժողովքին Թղթին հետ ինքնալ Թուղթ մը խրկերէր սրբազան պապին ։ իրեն յանձնելով ամմէն որոշումը ։

Եկեղեցականաց ժողովքին ու Թագաւորին վճիռները.

1756.

Սրբազան պապին պատասխանը տարիի մը չափ ուշացաւ, բայց Փրանսային մէջը նորէնոր դիպուածներ ըլլալով՝ նորէնոր շփոթութիւնը կըշատնար, օրէօր բանը գէշի կերթար. մն զի պինտ եռքի օրէնսդէտնալ խնչվան գեղերու մէջ կըյանդգնէր, և պիսկոպոսական թղթերնալ վճիռներնալ կըդատապարտէր: Մէկ օռլէանսի կանոնիկոսի մը մեռնելու ատենը հաղորդութի չտրվին յանսէնեան ըլլալուն համար, բայց բուլամէնդը հակառակութե համար անոր վրայ քար դնել տրվավ եկեղեցնայ մէջ, ուղղափառներնալ անքարը եռքը հանեցին կոտրտեցին: Նյքսին արքեպսը թուղթ հանեց Միածին կոնդակին հնազանդելու համար, բայց բռօվանս գաւառին բուլամէնդը պատիժ տրվավ անոր 10 հազար լիրէ վճարելու աղքատաց համար: Փարէզին արքեպիսկոպոսը՝ Սէ մարկեղոս վանքին մայրապետները բանադրեց յանսենեան ըլլալնուն համար, բուլամէնդնալ Պուօյէսին եպիսկոպոսը բռնեց, վէնսան ըսված բերդը խրկեց իրենք քարոզներուն համար. որովհետև իր թեմին եկեղեցականներուն կըքարոզէր թէ՝ հաւատքի բանին մէջ անկախ են աշխարհական իշխանու-

թէ, ուրիշ եպիսկոպոսներն ալ կը յորդորէր որ իր մտքին հետեւին ։ Բանադրանքին միտքը այն էր որ՝ իր տէրութեան տակը առնէ եկեղեցականները, թագաւորութիւնը, նաեւ թագաւորը, իսկ յանսենեանց բանը՝ որ խորհուրդներուն տալը չտալը՝ ինչպէս որ ըսինք մէկ պատրուակ ( մահանայ ) մըն էր իրենց անհաւատութիւնը ու ամբարտաւանութիւնը առաջ տանելու ։

Եկեղեցականաց ժողովը հոկտեմ. ետքը վերջացաւ, որ թագաւորին յանձնեց եկեղեցական իրաւասութիւնը, մեկնեց թագաւորին ապսպրածը, ինչ որ ապսպրեր էր սոտ. 2. ըռուլթէ վրայ. արգելել խնդրեց գէշ գրքերուն տպագրութիւնը, որ ետեւէ ետեւ դուրս կը հանէին. աղաչեց որ՝ քշուած եպիսկոպոսները ետ դարձնէ, մանաւանդ փարիզին արքեպիսկոպոսը ։ Թագաւորին պատասխանը աս բաներուս վրայ խօսքով միայն եղաւ, իսկ գործքով ոչինչ ։ Ժողովքին մէջ շատ վիճմունք ըլլալէն ետեւ՝ վճռեցինալ որ՝ Միածին կոնդակը իբրեւ եկեղեցւոյ վարդապետութի՛ բռնեն. ով որ յայտնի յանսենեան է, անանկները սուրբ խորհուրդներէ զրկեն. ով որ աշխարհական դատաւորներու դիմէ, միջնորդ բռնելու ու խորհուրդները առնելու համար, անով աւելի յանցաւոր սեպվի ։

Բենետիքդոս սրբազան պապը 1756. հոկտ. 16. պատասխան գրեց Փրանսայի եկեղեցականաց թղթին. որուն մէջը կը պատուէրէր արձակում ու սրբութի՛ չտալ ով որ

չէր ընդուներ Միածնին կոնդակը. իսկ ա-
նոնց հետ որ կասկածաւոր էին՝ խոհեմութբ
վարվիլ: Թագաւորին ալ յատուկ պատա-
խան գրեց սրբազան պապը շատ խոհեմու-
թբ. այն թուղթը թագաւորը տպեց, ա-
եպիսկոպոսներուն խրկեց ապսպրելով որ
կանոնի պէս ըլլայ, ինչպէս որ եղավ ընդ-
հանրապէս. բառլամէնդին ալ ապսպրեց որ
փարէզի արքեպիսկոպոսին և ուրիշ եկեղե-
ցականներուն դէմ չիկենան կոնդակին հա-
մար, կամ սբ խորհուրդներէն զրկելնուն
համար: Բայց բառլամէնդը չի հնազանդե-
ցաւ, մանաւանդ թէ արգելեց այն թուղ-
թը կարդալու. թագաւորը չդիմանալով
անոնց յանդգնութեր՝ տարուոյն եօթը ելավ
վէրսայլեայէն ուր էր իր դարպասը (սէ-
րայը,) անձամբ գնաց փարէզ. Ժողովուր-
դը անանկ սեպելով որ՝ թագաւորը իրենց
վրայ տուրք եվելցընելու հետ է, իսկ բառ-
լամէնդը տուրք եվելցընելու դէմ է, աւելի
բառլամէնդին դին էր՝ քան թէ թագաւո-
րին, անոր համար լռութբ ընդունեց զթա-
գաւորը, մէկ ուրախութե նշան մը չցը-
ցուց թագաւորին գալուն վրայ ինչպէս որ
առաջ կընէր:

Թագաւորը որպէս զի ուժ առնէ իր հրա-
մանքը՝ իր թախտը նստած՝ անանկ իրեք
անգամով յայտնեց իր կամքը. առջի անգա-
մուն ապսպրելով որ՝ ինչ օրէնքներ դրեր
էր ինքը՝ ու իրմէ առջի թագաւորը Միա-
ծնին կոնդակին վրայ՝ ամէնն ալ պահվին.
ինչ վէճ որ ըլլայ սբ խորհուրդները տա-

լու չխտալու վրայ, ան դատը (դավան) եկեղեցական դատաւորները թող լսեն կրօքեն, աշխարհական դատաւորները ամենեւին չխառնըվին, միայն նայեն որ անկարգութի մը չըլլայ. Ինչ դատաստաններ որ կտրերեին ինչվան ան ատենը աս բանիս վրայօք, ամմէննալ ոչինչ ըլլան, անցած դացած բաները մոռցըվին: Երբոր աս հրամանս կըկարդացվէր, դատաւորներուն շատին երեսը ավըրված՝ իրենց դժարնալը յայտնի կըցըցընէին: Երկրորդ անգամուն՝ Թագաւորը վերցուց բաւլամէնդի մէջէն ան պաշտօնները՝ որ աւելորդ էին. Նոյնպէս վերցուց չորրորդ ու հինգերորդ խուցը կմ ժողովը: Երրորդ անգամուն՝ բաւլամէնդին իշխանութիւնը պզտիկցուց եկեղեցական բաներու մէջ:

Ամմէն բանէն աւելի ան դէմ եղաւ որ՝ Թագաւորը արգելեց վճռելով թէ ասկէց ետքը մէկ խորհրդական մը 25 տարին չանցցուցած՝ չունենայ իշխանութի բան մը որոշելու, և մէկը չիկրնայ իր կարծիքը գուրցելու բաւլամէնդին ժողովքին մէջ, ինչվան որ 10 տարի հոն կեցած չըլլայ: Աս բանս խիստ խոցեց բաւլամէնդին մէջի եղողները, յայտնապէս սկսան դէմ խօսիլ, մանաւանդ երկու Թագաւորազունք՝ և քանի մը Պառի ըսված իշխանները, որոնք դըրսէնալ յայտնի ցըցուցին իրենց ընդդիմութիւնը, բայց չէր ըլլար խօսքը ետ դարձընել, վասն զի Թագաւորը ոտք էլլալու ատենը սպառնալով մը գուրցեց. Ետեւ-

հանդըպաւ իմ միտքս, մէկ որ դէմ զինք նըզովեմ։ Ըս խօսքերս կերևնար որ պիտոր վախցըննէր ֆրանսըզները, բայց ֆրանսըզներուն քնութիւնը չիկրնար բռնութիւն (զօռ) քաշել. ան օրը մէկ դատաստանարանին զանազան մարդիկները հրաժարեցան իրենց պաշտօնէն. երկու օրէն 15 խորհրդականք մեծ դատաստանարանին հրաժարեցան ետ կեցան, երբը ամէն դատաստանները պարպեցան դադրեցան. վասն զի թէպէտ դատաւորները կընստէին, բայց փաստաբանները չէին ուզեր հոն երևնալ, դատերը (դավաները) պաշտպանել։

## Ֆրանսայի թագաւորին զարնըւիլը.

1757։

Ամէն բանի մէջ նայէ՛ որ սկսելու առենը զսպես կըսէ առածը, որ է մէկ խրատ մը ամէն մարդու հարկաւոր, բայց աւելի կառավարող մարդիկներուն է հարկաւոր։ Այսչափ հոգը որ հիմա ունեցաւ թագաւորը՝ թէ որ առջի բերանը ունենար, շատ կրնէր, բայց այնչափ ուշ շարժեցաւ որ՝ խռովութիւնը ամէն տեղ ծաւալած էր, բռլամէնդըները յանդըգնութիւն մը առեր էին, ժողովրդեան վ՛ր տիրապետերէին։ Դամիէնեանց բանը (մատտէն) անանկ մէկ ալեկոծութեան մը մէջ ձգերեր բոլոր Ֆրանսա մանաւանդ փարէզ քաղաքը, որ ամէն տուն՝ ամէն խանութ՝ ուրիշ բան

չէին խօսեր որ՝ այս բանիս մէջ, կերպ կերպ պարսաւադէտ նախատական գրքեր դուրս կըհանէին եկեղեցականներու և տէրութեան դէմ։ Ժողովուրդը երբոր տեսան որ մէկ քանի հոգի մը առանց արձակման առանց հաղորդութեան մեռան յանսեննեանց վարդապետութիւն չիմերժելնուն համար՝ երկաբաժնըվեցան. ոմանք քահանայներուն ըբաժնները կըջատագովէին, ոմանքալ հոգինին մեղքընալով սաստիկ կըմեղադրէին քահանաները ու եպիսկոպոսները, թէ ինչու՞ այսանկ ծանր պատուէր դրին, անկեց բաւլամէնդին դին կըլլային։ Մէ և նոյն տանը մէջ քանի մը հոգի յանսեննեանց դին ըլլալով՝ քանիմընալ հոգի յանսենեանց դէմ, ամմէն տուն կռիւով լեցուած էր, կռուոյ քաղաք էր եղած, մանաւանդ երբոր կնիկ մարդոց վրայ եղան այս դիպուածները՝ ինչպէս որ վերը պատմեցինք. անչափ շշնկոցը շատցաւ, որ մէկ կրակ մը բռնկեցաւ Փրանսայի մէջ։

Երբոր մէկ բան մը մանաւանդ հաւատքի բանը կնկտոց բերանը կիյնայ՝ ան բանը չիզսպըվիր. այսանկ էր եղած փարէզ. օրէօր կեռար կեփէր այս խօսքերս ժողովուրդին մէջ կնիկներուն աղաղակովը թէ ինչու՞ ան հոգիներուն կորուստը չէն մեղքընար քահանայները ու եպիսկոպոսները, կըթողուն որ առանց արձակման մեռնին կորսըվին. բաւլամէնդնալ իրեն դին ունենալով ժողովուրդը՝ աւելի համարձակութի կըդըրնար։ Այսանկ դիպուածներ խիստ շատ կը-

պատմըվին ան աննման Փրանսային պատմութեան մէջ։ Բայց ի՞նչպէս իրաւ կ'ըլլայ ան հասարակաց խօսքը որ կ'ըսէ։ Ամէն կռիւին ատքը թէ տանը մէջ ըլլայ, և թէ քաղքի մը մէջ ըլլայ, մէկ մեռնիլ մը կամ արիւն մը կը բերէ։ Երբոր ամէն փարէզցիք սսանկ իրարու հետ ընկած էին, քաղքին մէջը օրէօր խաղաղելուն տեղը՝ խռովութիւը կըշատնար, մէկ դիպուած մը եղաւ որ ամէնենալ սասանեցուց։

Մէկ աննշան խենթուկ մարդ մը՝ Ռօպէռդօ Փրանչէսքօ Տամիանս անուն, որ փարէզի միջի շատ տներուն ծառայութիւն ըրած ունէր, աս տրտունջները աս դիս ան դին ամէնուն բերնէն լսելով, գնաց ուր էր դարպասը՝ աս մտքով որ թագաւորը մեռցընէ, աս տրտունջը խելքովը վերջացընէ. հոն սպասեց, յունվարի 5. գիշերվան առջի բերանը երբոր թագաւորը առապան մտնալու եղաւ որ Կուրիանօն տեղը երթայ, ամէնենալ մեծ պլնիշներին հագած ըլլալով ցուրտը սաստիկ ըլլալուն համար՝ սսալ անանկ հագած պահապաններուն մէջ մտաւ. Թագաւորին տղան հոն կեցած ըլլալով առաջ անիկայ հրեց, ատքը Թագաւորին մօտիկցաւ. սուր դանակ մը հետը ունենալով զարկաւ, դանակը տեղը դրաւ շափխանալ գլուխը։ Թագաւորը ԺԵ Լուիզ առջի բերանը անանկ կարծեց որ՝ մէկը իրեն բռունց (եումրուխ) մը զարկաւ, բայց ձեռքը տարածին պէս արիւնոտեցաւ, իմացաւ իր զարնըվիլը. մէկէն դարձաւ աս

անձանօթ մարդը տեսաւ, շափխան գլուխը դրած սովորութեանը դէմ, աչվըները անկած, ձեռքովը բռնեց կանչեց, ատ էր որ խոպ զարկաւ, բայց մեաս մի տաք, տղեա վրայալ զգուշացնէք որ իր հետն էր. աս ըսելով մահիճը (տէօշէկը) տանիլ տըվաւ զինքը, ու ձէռառահ կանչեց։
Ասկեց շատ վախցան կասկածելով մէյմը որ դամնակը թիւնաւոր (զէհիրլի) չըլլայ, մէյմըմալ որ քանի մը հոգի միաբանած չըլլան ամմէն թագաւորին ցեղը ջարդելու համար. և թէպէտ տեսան որ խոցը թեթև է, բայց փարէզցիք որովհետև ան ատենը թագաւորնին խիստ կըսիրէին, շատ ցաւեցան. ամմէն ժողովուրդ թէպէտ մէկ ծայրէն մէկալ ծայրը շուտով կանցնի, բայց մանաւանդ Փրանսզին ժողովուրդին խիստ յատուկ է ասոր բանս։ Ան ատենը աղջի խռովութիւնը կակղցաւ. Երբոր աս մարդս բռնեցին խօսեցընել տըվին, աղջի բերանը ինչեր զինքը խենթ ձևացուց. արիւն առնել ուզեց ըսելով՝ թէ որ ինծմէն արիւն առնէին, ես աս չարութիւնս չէի ընէր. իմ միտքս թագաւորը մեռցընել չէր ըսաւ, թէ որ ուզէի՝ ես կրնայի սպաննել, բայց խոցել միայն ուզեցի որ՝ որպէս զի ած իր սիրտը շարժէ, բաները աղջի կացութիւնը բերէ, արքեպիսկոպոսը ետ կանչէ։ Երբոր 1757 մարտի 28 մեռցընելու պիտոր տանէին, ուրիշներուն յորդորելովը ասիկայ թուղթ մը գրեց թագաւորին. մէջը կըսէ որ ամմէն խռովութեան պատճառը փարէզին արքեպիսկո-

ճառն է, որ Հիւանդներուն Թող չիտար խոստովանիլ սրբութիւն առնել. Թէ որ քու ժողովրդեանդ բարին չինայիս ու Թագաւոր, որպէս զի մեռնելու ատեննին ալ խորհուրդները առնեն, գիտցիր որ՝ քու կեանքդ ալ՝ տղիդ կեանքն ալ, ու ամէն քու տունդ ալ վտանգի մէջ են. շատ նեղութիւն պիտոր գան քու տանդ վրայ ու բոլոր Թագաւորութենդ վրայ :

Աս մարդուս պատիժ տըվին ալ ձեռքը ծծմբով (քիւքիւրտով) եփելով Սուէյ Հրապարակին մէջ. տաքցուցած երկըԹներով (քելփէԹիններով) մարմինը փեԹԹելով, ողջ ողջ ձիու կապելով քաշկըռտելով կտոր կտոր ըրին, կտորները կրակը ձգեցին. իրեն հայրը՝ կնիկը՝ ու մէկ աղջիկը՝ Թէպէտ անմեղ էին, Ֆրանսայէն դուրս քշեցին, կախել սպառնալով Թէ որ նորէն փարէզ դառնալու ըլլան. իրեն ամէն ազգականներուն նաև պինտ հեռուիններուն՝ մականունին (լաղապնին) փոխել տըվին. տունը ուր որ կընստէր՝ հիմանց (Թէմէլէն) քակեցին. հոն մէկ նախատական գրուած մը դրին :

Աս վրէժխնդրուԹիւը որ դատաւորները ըրին, քիչ մը ատեն խաղաղցուց, բայց նոյն դատաւորներն էին՝ որ մէկալ դիւացեն անանկ ճամփայ մը բռներէին որ՝ Թագաւորը անով պիտոր ջնջէին, անոր համար իրենքալ աս պատիժս կարդիւնաւորէին. ինչպէս որ աս պատմուԹիւնները կարդալով աղէկ պիտոր իմանաս, Թէ ինչպէս կամաց.

կամաց Ֆրանսացիներուն մենծերը. իրենց մօքի դրամնին առաջ տարին, որ էր Թա- գաւորնին վերցընել սպաննել, ինչպէս որ պիտոր պատմենք :

Աւստրիայոյ օգնութիւն խնդրելը Ֆրանսայէն . Ֆրանսային զօրք խրկելը, Մահոնայի առնելը .

1756—1757 :

Ինկիլիզները տեսան որ քօռսիքացիները ասանկ երկան ատեն կրնան դէմ դնել ի- րենց, մանաւանդ որ ըստըկի դիւացէնալ կրաւեանային որ կարօտութիւն չեն քաշեր, հապա ամէնէնունալ ատենին կեօրէ առատ կըվճարեն, ծովուն դիւացէնալ իրենց ան- դադար ձէպախանէ կուգար, անտարակոյս մտքերնին դրին՝ որ Ինկիլիզը ասոնց ձեռք բռնած էր : Ու որովհետեւ 1756 Ինկիլիզին ու Ֆրանսային մէջ կռիւ բացուելով ամերի- կայի վրայօք, Ֆրանսացը մինօրքա կղզին առեր էր Ինկիլիզի ձեռքէն (որ վարը պատ- մենք), վախնալ սկսաւ Ճինովէզը չըլլայ թէ քօռսիքացիք Ինկիլիզին տակը անցնին, Ինկիլիզնալ որովհետեւ ձերմակ ծովին մէ- ջը մինօրքան կորսնցուցեր էր, չըլլայ թէ անոր տեղը քօռսիքան առնելու աչք ունե- նայ . ասոնք մտածելով Ճինովէզը՝ սկսաւ Ֆրանսայի տէրութեան աղաչել՝ որ իրեն օգ- նէ, քօռսիքացիները զսպէ :

Աս կասկածս Ֆրանսային սրտին մէջն ալ մտաւ . եւ որովհետեւ չէր ուզեր որ Ինկիլէ-

զը Ճերմակ ծովին մէջը, նորէն տեղ ունե-
նայ իրեն, անոր համար 1756 դաշնադրու-
թի̃ մը ընելով Ճինիվիզին հետ, 3 հազար
մարդ խրկեց քօուսիքա. թէ որ փս պատ-
ճառ չունենար, ոչ երբէք զօրք կըխրկէր:
Սրբօր քօուսիքա եկաւ Ֆրանսզը, կենցա-
ղակիրթ մօքով ( բօլիդիքայով ) անանկ
ճամփայ մը բռնեց, որ Ճինիվիզին դի-
բան մը չըրաւ, հապա իբր մէկ դիտօղ
( սէյիրճի ) մը հոն կեցաւ, անտարբեր աչ-
քով նայելով ինչ որ կընեն Ճինիվիզինները
ու քօուսիքացիները. ասով հարկադրեց
ապստամբ քօուսիքացիները՝ որ ետևէ չըլ-
նան ինկիլիզին տակը անցնելու, չըլլայ թէ
ան ատենը Ֆրանսըզներուն թուրին տակը
կոտրտուին: Ճինիվիզնալ ուրիշ օգուտ
մը չունեցաւ՝ բայց եթէ աս որ, քօուսի-
քան ապահով եղաւ ինկիլիզին տակը անց-
նելու:

Քօուսիքացիք իրենց մէկ կունակ մը ունե-
նալու համար՝ աս տարվանս մէջ ուզեցին
որ՝ պրուշին թագաւորը իրենց վրայ թա-
գաւոր պսակել տան, բայց պրուշը չուզե-
լով անանկ. հեռու տեղի մը հետ կապակ-
ցութի̃ ունենալ՝ յանձն չառաւ: Իսկ թէօ-
դորոս նէվհօֆ պարօնը որ շատ առաջուց
զինքը քօուսիքայի թագաւոր ըսել տըվեր
էր, ու լօնտռա բռնըված բանտը մեռեր էր
իր պարտքերուն համար, աս տարի 1756.
դեկտ. 2. հոն մեռաւ:

Մառիօ մաղուան՝ բաօլին թշնամին՝ իր
վրայ Ճինիվիզի մառէշալ անուն առնելով՝

քիչ մը տեղվանք աւերէր քօուսիքայի մէջ, և իրեն գիրի եղօղներով աս դիս ան դին աւ պատակութի (չարխա) կընէր, շատ վնաս կըհասցընէր բաօլի դին եղօղներուն, բայց որովհետև իր զօրքը ցրուած կըպահէր, սալիչեզգի զօրապետը մէկ հնարքով մը պատերազմի մէջ բերելով ասիկայ 1757, սպանվեցաւ. ինքնալ ու իրեն դին եղօղներնալ մանչինաձձիօ տեղին քով: Աս Թշնամիէն խալըսելէն ետև ըրավ բաօլին շատ բարեկարգութիւները՝ որ վերը պատմեցինք. բայց ձինովիզին դէմ մէկ երևելի բան մը չըկըրցաւ ընել: Այս Թէպէտ ինկիլիզի նաւատորմիղ (տօնամնմա) մը յանկարծ երևցաւ քօուսիքային քով, բայց քօուսիքացիք որչափ որ ետևէ ինկան որպէս զի իրենց դիէն պատերազմին, անոնք ամենուին չըխառնըրվեցան աս բանին մէջ:

Ատիճէ գետին պատռուիլը.

1757:

Աս տարի ամըռվան մէջ ատիճէ գետը խիստ լեցվելով, օգոստոսի ետքի գիշերը պատռելով, վէռօնա քաղքին իրեք մասը ջուրին տակը կոխեց. մէջի եղած խեղճերը ջուրին ձայնէն արթընցան, զիրենք ջուրին մէջը գտան, կուզէին փախչիլ, չէին կրնար, իրար օգնութին կըկանչէին. ոմանք ջուրին մէջը կըմնային, ոմանք կըտարակուսէին ուր Թողուն իրենց տղաքը. ամմէն դիւցէնա

ողբ ու լաց կը լսուէր ։ Շատ մեծ շէնքեր, ջաղացքներ, կամուրջներ քակուեցան. շատ նաւակներ լեցուն ապրանքներով ընկղմե-ցան, կամ ուրիշ տեղվանք տարին ջուրե-րը. ասոնք կամուրջներուն զարնուելով կանգ կառնէին կարգելուէին, բայց մէկ կա-մուրջիմընալ զարնուելով երկու կամարը քակեցին. քովի աշտարակնալ խախտեցին, որ մօտիկ էր փլչելու. մէջը երկու կնիկ կային՝ որ տղաքնին գրկերնին առած՝ բար-ձրը պատուհանէն վար կրկանչէին օգնութի կը խնդրէին. վարը կեցողները բազմութի ժողվրված ամմէնուալ կուլային ասոնց խեղ-ճէն. բայց մէկը չէր կրնար անանկ բարձր տեղ ելլալ անոնք ազատել։

Նորբոր ասանկ յուսահատված կեցած ամ-մէնուալ մղիկ մղիկ կուգային, մէկ չէկար-ծած գեղացի մը բարթուղիմէոս ռուպելէ անունով մէկ հնարքով մը չուան մը ձգեց աշտարակին ան պատուհանը ուր որ կեցած էին ան խեղճերը, ան չուանը անոնք կրցան վերէն բռնել, բարթուղիմէոսնալ ուրիշ չուաններով շինված ներտիվէն մը ան չուա-նին կապեց որ վեր քաշեցին. աս ներտիվէ-նին վրայէն ան գեղացին վեր ելավ, աշ-տարակին մէջը մտաւ առանց վախնալու. առաջ երկու պզտիկ տղաքը թանձր բա-նի մը մէջ փաթթելով վար իջեցուց. հոն կեցողները ան տղաքը առին խանդա-ղուցին. Ետքը երկու իրենց մօրերնուն աչ-քերնին կապեց, որ վար իջնալու ատենը ջուրին ահագին վազելը չտեսնան չվախ-

նան , չուանովմընալ բարձրէն բռնեց , ինչվան որ անանքալ վար ինջան , ամմէն ժողովուրդը արմացած զարմացած աստնքալ վար առին , մէկ ձանով միաբերան սկսան գովել աս մարդուս բարի սիրտը , քաջութիւնը , ու ճարպիկութիւնը . բայց աս գեղացի ըսածնիս բաց 'ի քաջութէ՝ մէկ զարմանալի վեհանձնութիւնմընալ ցըցուց , որ է աս ։ Հոն կեցողներուն շատը աս գեղացիին քաջութիւնը տեսնալով , վրան սէր կապելով ողորմելով սկսան ըստակ տալ , պարգեւներ ընել , աս գեղացին անով աղքատ՝ բայց սրտով շատ հարուստ , մէկէ մը մէկ ըստակ չառնելով՝ քրիստոնէական սէրն էր որ , ըսավ , ինծի յանձն առնել տըվավ մահը , բայց դուք աս ողորմելիներուն հասէք , ասոնց տըվէք որ վտանգներէ խալըսեցան ու բան մը չունին ։ Ինչ խեղճ կարծըված մարդիկներուն քով ինչ մեծ առաքինութիւններ աղէկութիւններ կըգտնըվին , որ մեծ մարդիկներուն քովը կան չիկան ։

Ծնք. Բենետիկտոսի սրբազան քահանայապետին մահը , ու նոր քահանայապետ ընտրըւիլը .

1758 ։

Ս տարի սրբազան քահանայապետը ժդ. պենետիկտոս մականուամբ Լամպէրդինի՝ ծանրըցած ըլլալով ծերու հիւանդութեամբ մեռաւ մայիսի 3. 83 տարվան ու կէս. 17

տարի, 8 ամիս աթոռը նստած ըլլալով։ Իւ-րեն անուշ բնութիւնը ու զուարճախօսութիւնը՝ որ իր կեանքին մէջը ունէր, մինչեւ իր մահը պահեց. տեսնալով որ՝ քովինները կուլան, կըսէր՝ մի լաք ան ծերը որ իր պակսութիւնը շատ հեղ ձեզի ձանձրութիւն տըվերէ. ես ձեզ կըթողում այն ձեռքը՝ որ ամմէն տիրոջմէն աղէկ է, ու չիմեռնիր. ես կերթամ նստելու ան մոռցըված տեղը որ ինծի կըվայլէ։ Իր ազգականները քովը չիկանչեց, երբոր մէկը յիշեցուց որ՝ իր ազգականներուն բարերարութիւն մը ընէ, պատասխան տըվավ, ես անոնք միշտ սիրեցի, բայց ես չունիմ բան մը՝ բայց եթէ եկեղեցւոյ հանդերձը որ չիբաժնըվիր, որչափ որ պէտք է ապրելու՝ իրենք ունին։

Սս քահանայապետս իր կատարելութեանցը համար եղավ երեւելի մարդիկներէն մէկը՝ որ երբեմն երբեմն աշխըրքիս մէջ կերեւնան. խիստ արթուն էր իր կառավարութեանը վրայ, ամմէն տարի մէյ մէկ կոնդակ կըհանէր կամ անկարգութիւնները շտկելու համար, եւ կամ նոր բարեկարգութիւն խօթելու համար. կառավարչին վարպետութիւնը ան է որ՝ ամէնին կեօրէ կառավարէ, պենետիքդոս իմանալով որ՝ աս ամէններս խըստութիւնը ամէնուն ձեռք չիտար, իր կառավարութիւնը խելքով աւելի անուշութեան բանեցընելով կընէր քան թէ խստութիւն։ Շատ հեղ մըս մինակ առանց մարդու մը դուրս կելլար, ոտքով ժուռ կուգար կըպըտըտէր հռոմ ամմէնուն առջին, ամէն մի ժա-

ունէր, որ ամմէնուն հաճոյ կըլլար իրեն կենակցութիւնը. անոր համար մօնֆօքօն Երևելք կարդացողը ասոր երիտասարդութե ատենը հետը տեսնըվելով ըսավ։ Լա-ղէոպինը երկու հոգի ունի, մէկը գիտունին համար, մէկալը ընկերութեն համար։ Շատ մեծեր՝ որոնց մէջը նաև նաբօլիի թագաւորը հռոմ եկան պենետիքդոսին հետ տեսնըվելու։ Ոչ թէ միայն ինքը սէր ունէր ուսման վրայ, այլ նաև իր հօտին վրայ հոգ կըտանէր որ աղէկ ուսում սորվին. անոր համար ամմէն գաւառներուն վանքերու մէջ յատուկ մարդիկներ դրած ունէր պտըտելու նայելու համար, որ ինչ կերպ ունին սորվեցընելու, որդեօք հեշտ (խօլայ) ու օգտակար կերպ, թէ դժուարին. վասն զի կըսէր որ՝ գերմանիայի ու սպանիայի մէջ խիստ ծառայաքար կընեն ուսումը. իսկ լեհաստան, մաճառստան, նաև իտալիային շատ տեղերը՝ ան դիւի ծայրը դպրոցական ոճով կընեն, անով ա̃ծաբանութիւնը թերատ կիսատ կըմնայ, չունենար տեղեկութի վարդապետական ա̃ծաբանութե՞ նըց հարց։ Ն̃ ատենը իմացաւ որ քարոզչութիւը ցամաք էր մնացած, կանոնագիտութիւը անհոգ թողուցած, շատ մը եպիսկոպոսներուն պատուէր խրկեց որ՝ ուսմունքը նորոգեն, եկեղեցական եկամուտներուն վրայ անոնք միայն հանեն, որոնք որ առաքինի են և ուսումնական, դատարկ չթողուն. ամենևին եկեղեցականքը։ Այրօնաւորներնալ որքաքան պատւին միտքը հասկըցածնին պես՝ որ

իրենց ուսումը կը փնտռուէ, սիրտ առնելու աւելի հոգ տանելու՝ աւելի առաջ երթալու, փիլիսոփայութիւնը աղէկ կարգի մը մէջ խոթելով, աւելորդ խնդիրները խորթ կարծիքները դուրս ձգելով, հրապարակական վիճաբանութիւնը աւելի շտկելով։

Մեքենալ անչափ մեծ կառավարութեն բեռ վրան ունենալով ամենեւին պարապ չէր կենար. կամ կը գրէր, կամ ուսումնական մարդկանց հետ կը կենակցէր ու կը վիճաբանէր. երբոր պօլոնիայի վրայ եպիսկոպոս էր՝ ան տեղացի երեւելի կարդացողներուն հետ իժիր կը տեսնուէր կը խօսակցէր, ինչպէս որ էին Մանֆռէտի, պէքքարի, կալէացցի, ծաննօդդի. իսկ հռոմայու քահանայապետութեն տանը՝ քառտինալ բասսիօնէին հետ կը տեսնուէր, կը խօսակցէր, ասիկայ անչափ տեղեկութիւն ունեցող մարդ էր կըսէին, որ իր տանը մարդիկները ասոր գլուխը մէկ մեծ գրքատունի մը կը լմանցընէին։ Ուսումնական մարդիկնալ խիստ կը պատուէր կը մեծարէր, անոնց մէկը եղաւ քօնտամին ֆրանսային երեւելի աստղաբաշխը որ հռոմ եկաւ, շատերուն թուղթ գրելով սիրտ կուտար կը յորդորէր։ Սօռպօնայինալ որ փարէզի մէջ երեւելի ուծաքաններուն ժողով է, իրեն գիրքը ու պատկերը խրկեց. պօլոնիայի ճեմարանին ալ պարգև խրկեց ու իր պատկերը։

Իրեն մէկ խելացութիւնալ ան էր որ՝ պաշտօններու վրայ աղէկ յարմար մարդիկները կը հանէր ընտրելով. իրեն դիւանադպիր

ընտրեց մանդուացի քաղաքին սիլվիօ վա-
լենդի կօնծակա․ որ խիստ խելացի ու յար-
մար մարդ ըլլալով, առաջուցմէ կըտեսնար
կիմանար մէկ բանը, ու ինչպէս որ պէտք
էր անանկ կըդարձընէր․ շատ կառավարու-
թեն բանը ասոր ձեռքը թողուցերէր լամ-
պէռդինը, որ ըլլալով գիտուն, բան հաս-
կըցօղ, ու ամմէն կարդացօղներուն բարե-
րարօղ, սրբազան պապին յորդորելովը շատ
առաջ տարաւ գիտութիւնները։ Սաբիենցա
(իմաստութիւ) ըսված տեղը երկու նոր
աթոռ հաստատեց դաս տալու, մէկը փորձ-
առու բնաբանութեն որուն վարպետ դրաւ
անուանի ժաքիէ կրօնաւորը, մէկալըն ալ
բնալուծութեն (քիմիքայի)։ Իսկ ազատա-
կան արուեստները առաջ տանելու համար՝
ձեմարաններ և ժողովներ հաստատեց նկար-
չութեն ու ճարտարպետութեն։

Նա սրբազան պապը եղավ որ՝ պօլօնիա
քաղաքին մէջօրեայն գտնալ ու նշանել տըր-
ւավ․ բայց իրեն աւելի արդիւնաւոր գոր-
ծը ան եղավ որ՝ վերոյիշեալ վալէնդիին
յորդորելովը՝ 1750 յանձնեց պօսքօվիք
ճիզվիթին ամմէն հռոմայու երկրին աստի-
ճաններուն չափը հանելու, ու աշխարհա-
ցոյցը շինելու։ Պօսքօվիք որ աշխըրհիս
մէջ գտնըվօղ ուսումնականներու (մաթէ-
մաթիքօներու) գլուխ էր՝ իրեն ընկեր ա-
ռավ մայրէ կամ մէր ճիզվիթը, որ ա-
նանկ բանի աւելի վարպետ էր․ ասոնք հոկ-
տեմբ․ առջի օրը ճամփայ ելան հռոմայու
խարճով․ իրեք տարի անհնարին աշխա-

տելով միջօրէական աստիճանները չափե-ցին, հռոմայու երկրին աշխարհացոյցը շը-կեցին ։ Նանց սաանկ ուսումնական ճամ-փորդութենով շատ լոյս տուաւ երկրաչա-փութեր, աշխարհագրութեր, աստղաբաշ-խութիւնը, նաև բնաբանութիւնը․ որուն վրայ վերոյիշեալ քօնտամէն Փրանսզ աստ-ղաբաշխը շատ զարմանալով գովասանքներ զրուցեց ։

Ճարտասանութեան դիւացընալ անանկ կա-տարելութիւն ունէր Պենետիքդոս՝ որ երբոր քառատինակներու ժողով կըլլար իր դար-պասին մէջը՝ որ Արձնջետբոնեան կըսուի, հոն գուրցած իր ամմէն մէկ խօսվածքը՝ մէյ մէկ գերազանց գործ կըսեպվէր Ճարտասանու-կան ։ Պենետիքդոս հոգ տարաւ նաև պըղ-տիկ տղոց առջի կըթութիւնը տալու․ նոր կարգ մը դրաւ աս բանիս համար, բայց ու-մանք գործ դնօղները անհոգ եղան ։ Նանկ կով թէ հռոմայու երկրին մէջը՝ և թէ պա-լօնիա իր ծնած քաղաքը՝ շատ օգտակար մեծագործութիւններ ըրաւ գիտութեան ու ար-ուեստի դիւացեն․ եկեղեցին պաշտպանեց, որ իր օրը շատ նեղուէ մէջն էր ընկած ։ Իրեն վրայ շատ գովասանք տըվօղներ ե-ղան, բայց ամմենէն կատարեալը եղավ ապ գովասանքը՝ որ իր արձանին տակը գրված է լօնտռայի ձեմարանին մէջ ։ "Պենետիք-
"դոս թէպէտ բացարձակ իշխան էր, բայց
"իբրև վենետիկի դուքս մը իշխեց [1]․ Նոր

---

(1) Ըսել է որ՝ պզտիկ կըցըլըներ զինքը, ինչպէս ոչ վենետիկին դուքսը կամ տօժը պզտիկ էր ։

„ լոյս տըլնալ քահանայապետական Թագին
„ իր առաքինութիւնը, սիրելի ուղղափառ-
„ ներուն առջին, վարկուած ունեցող (իս-
„ տիպարը) բողոքականներուն առջին,
„ խոնարհ իր շահը չինայող. իշխան առանց
„ ուրիշ իշխաններ ունենալու (1), պապ ա-
„ ռանց մեծցընելու իր ազգականները, կար-
„ դացող առանց հպարտանալու, Թեպետև
„ քանքարաւոր էր ու խելացի, ածարան
„ առանց խստութեն, Թշնամի ոգւոյ հակա-
„ ռակութեն։ Մէկ ինկիլեզ վէպիրի մը ու-
„ դի՝ (2) որ մէկէ մը երեսպաշտութեն ըրած
„ չունի, մէկ հռոմէական քահանայէ մը
„ գովասանք մը զուրցած չունի, բողոքա-
„ կանգներուն ազատ երկրին մէջը սա գո-
„ վասանքս իրեն վրայ կըղուրցէ ինչ որ ճըշ-
„ մարտութիւնը իրեն տուն տըվավ, ու քա-
„ հանայապետներուն մէջը աւելի բարե-
„ գոյնը արգիւնաւորեցաւ„։

Շատ գրուածներ ունի պենետիքդոս, որ ամենքը մէկ տեղ ժողված՝ 1767 վենետիկի տպածին կէօրէ 16 մեծ հատոր եղան. առջի օխտը հատորները՝ սրբերը կանոնի մէջ անցընելու վրայ են, որոնց մէջը իրեն հարուստ խելքը ու հմտութիւնը կերենայ, մէկալ ինը հատորները՝ պապարագի,

(1) Ըսել կուզէ որ՝ ուրիշներուն ձեռքը չէր Թաղուցած, կառավարութեն անհոգ չէր, ինքը անձամբ կընայեր։

(2) Աս գովասանքս գրողը Վալբոլը ըսված ինկիլ-տերայի վէպիրին տղան էր։

տօներու, ժողովքներու, կոնդակներու և թղթերու վրայ են. իրենց գործակից ունեցաւ Կանկանելլին, որ ետքը հռոմայու աթոռը նստաւ. Միքելինը դոմինիկեան կրօնաւորը, քառտինալ Պեռտիլը բառնաբեան, որ խիստ անուանի էր իր հմտութեը համար. Սգեվէտօ Ճիղվիթնալ սպանիացին, որ իրենց աշխատանքը շատ թեթևցուց։ Թէ ինչպէս կուրախանար գործակից ընկերներ ունենալուն համար, ինքնալ կըգրէ Կալլը կանոնիկոսին՝ որ ետքը քառտինալ եղաւ։

Աս բարեյիշատակ քահանայապետը մեռնելէն ետև, շուտ մը քառտինալներու ժողով եղաւ նոր պապ ընտրելու համար, որ մայիսի 15էն ինչվան յուլիսի 6 քշեց՝ 51 օր. ան ժողովով ընտրվեցաւ քառտինալ կարոլոս Ռէցցօնիքօ վենետիկցի սեպուհ (ռիճալ), բառտուայի եպիսկոպոս. ասիկայ որովհետև ժը կղեմէս պապէն առերէր քառտինալութիը, անոր յիշատակ՝ ինքնալ ժդ Կղեմէս անունն ուզեց ունենալ։ Երբոր առոր ընտրըվելուն լուրը (խապարը) եկավ վենետիկի տէրութե, ան ատենը իրենց մէնծերը ան ժողովին մէջն էին որ կըսվէր Փոտէկատի, իրենց տօժնալ այսինքն գլխաւոր պէյը ան ատենը Ֆռանչէսքօ լօռէտանն էր, ուրախանալնէրնէն շուտ մը ժողովը արձըկեցին. ամենքը սեպուհ ռէցցօնիքօին տունը գացին շնորհաւորելու. շատ հանդէսներ ըրին, ռէցցօնիքօին տանը պատիւ տըվին՝ Սպեա Մը մարկոսի անուանելով. որբազան պապին

եղբայրնալ գործակալ մը Մարկոսի ըրին, որ իրենց մէջը տօժէն ետեւ աս էր մեծ իշխանութիւն :

Նոր նստող սրբազան պապին առջի հոգը աս եղաւ որ՝ Վենետիկի ու Հռոմայու մէջ բան մնցերէր իր նախորդին ատենը՝ ան բանը շտկէ. վասն զի Վենետիկի տէրութիւնը մէկ հրաման մը հաներէր օխտը բանի վրայօք, որով կարգելէր ներողութենց՝ տնօրինամանց՝ ու եկամտից համար Հռոմ դիմելը, հիմա ինքը աս հրամանը վերցընել տըվաւ : Իրեն մէկ հոգնալ աս եղաւ որ աղքատներուն համար, պաշարնէրը ( զահրէնէրը ) Հռոմայու մէջ շատցընէ, ճիլ որ կրնար օգնութիւն ընել՝ խօսք տըվաւ որ հատուցում ընէ. իրեն ազգականները Հռոմ կանչեց, մեծ պաշտօններու վրայ հանեց : Սանճաւուի Թագուհիին ( որ էր Մարիամ Թերէզինան ) ու իր յաջորդներուն յատուկ կոնդակով մը Առաքելական մականուն տըվաւ : Բայց որովհետեւ քաղաքնալ դօռուծիանին խռովը կըկառավարվէր որ Փիուէնցացի սերպուհ էր, անուշութեան հետ խստութինմընալ մինաւ կառավարութեանը մէջ :

## Շվէտին դէմ պատերազմութիւնները, ու անկարգութիւնները.

1756—1766.

Ինչպէս որ վերը ըսինք, Մոսկովին արքունիքը չէր ուզեր որ Շվէտը միապետական կառավարութիւն ունենայ, հապա ազնուապետական ըլլայ, Աննայ ու Կատարինէին մեռնելէն ետև միշտ կուզէր կջանար որ՝ Շվէտին ազնուականները իրենք երկու բաժնուած պահէ, որոնց մէկ մասը Գդակ կըսվէր, մէկալը Շափքայ, և առաջինը արքունեացը դէմ պահէ ու հակառակօղ, անանկ որ՝ ան ատենակալները որ Մոսկովէն ըստակ կառնէին՝ ինչ շահաւոր ու պատուաւոր պաշտօն կար, ամէնն ալ իրենց ձեռքը առնէին, քիչ քիչ նաև Թագաւորին իշխանութիւնը իրենց յափշտակէին, այնչափ որ՝ նաև իր տանը տնտեսութեան մէջ կը խառնուէին, ինչվան չափ դնել իր սեղանին գինի խմելուն վրայ, իր խոստովանահայրը որոշելուն վրայ: Ասանկ ըսված կողմը՝ որ Եղիսաբեթ Թագուհիին դեսպանն (Էլչին) էր ըստոքօլմ Շվէտի արքայանիստ քաղքին մէջը, բուռ ոսկի կըցանէր, բուռ ընծայներ կուտար մանաւանդ Լօվէնհիելմ կոմսուհւոյն, որ Գդակ ըսված դլին մեծ համարում ունէր, որպէս զի աս ներքին հակառակութիւնը միշտ բուռնկցընէ ոտքի վրայ պահէ: Ասոնցմէն ետև Օսդերման դեսպան-

նը խիստ աւելի շատցուց աս հակառակու-թիւը, ամէնէն շմէտ ազգը մէկ թմրութէ մը մէջ ձգեց. և կրնար ըսուիլ որ՝ օտղերման կըթագաւորեր շվէտին մէջը մէկ բռնաւոր կերպով մը. անիկայ յոյս կուտար իրենց որ՝ շվէտին կառավարութիւնը վենետիկին պէս մէկ հասարակապետութի մը պիտոր դարձընեն միակալի թագուհւոյն պաշտպա-նութեը տակ. որ մէկ նոր բան մը չէր, վասն զի 50 տարի առաջալ ենկիլըզին դեսպանը ըսաւ շառադուեց մտածերեր աս բանս :

Երբոր 1756 ժողով եղաւ շվէտի մէջ, Շափդայ ըսփօրնէրը թագաւորական իշ-խանութիը խիստ ոտքի տակ առին. ինչ-վան յանդգնեցան անարգանք տալ թագա-ւորազուն անձինքներու. ինչ արտունութի-նէր որ մնացերեր թագաւորին վրայ՝ սնանե-ցին քիչցուցին. պաշտօնատէրերուն մէջ միայն վարի պաշտօնները կրնար թագաւո-րը դնել, իսկ վերի պաշտօններուն համար՝ իրենք իրեք հոգի կընտրկայացընէին թա-գաւորին. ան իրեքէն մէկը կընտրէր թա-գաւորը: Ասկէ հերիք չէ՝ շվէտին առեանը մէկ տպարան մը տահմանեց թագաւորին ա-նունովը՝ որպէս զի ինչ հրաման որ իրենք հանեն՝ և թագաւորը չուզենայ ստորա-գրել, ան տպարանին մէջ տըպված եղածին պէս՝ թագաւորական հրամանին ուժը ու-նենայ :

Ասանկ սխմըված ըլլալով թագաւորը՝ իշ-խանները կանչեց, մէկիկ մէկիկ առջևնին դըրավ զօրաւոր խօսքերով ինչ անիրաւութի

որ կընէին, թէ իր իրաւունքին վրայ՝ և թէ իր անձին վրայ. ըսելով որ՝ աւելի հաճոյ է ինծի եա կենալ ձգել թագաւորութիւնը, քան թէ աս կերպով թագաւոր ըլլալ: Աս խօսքերը շատ ընելուն տեղը՝ աւելի խստացուցին սրտերնին. Թագաւորին առջին դաստիարակը Պէսսինա կոմսը՝ հրաժարեցեր իր դաստիարակութ՟է, հիմա նոր դաստիարակ ընտրելու իր զաւկին համար՝ թող չտրուվին որ Թագաւորը ընտրէ. Ինչպէս Թագուհիին ձէվահիրներուն սկսան խառնուիլ. քանի մը մարդ խրկեցին որ երթան տեսնան, ըստոյգ տեղեկութիւն առնեան թէ Թագաւորական ձէվահիրներուն վրայ՝ որ Թագուհիին ձեռքն է, և թէ ան ձէվահիրներուն՝ որ կարգըլվելու պատճառաւ Պէռլին պրուշին մեծ քաղաքը խրկըլվեցան. բայց Թագուհին որ պրուշի Թագաւորին Բ Փէտերիքոսի քոյրն էր, ասանկ գինքը ցածցուցած տեսնալով, արիութ՟ պատասխանեց եկողներուն: Որովհետև իս անհաւատարիմ կըսեպէք, ես ինծմէն կըզատեմ իմ ձէվահիրներս, և անոնք որ Պէռլին խրկըլվեցան կարգըլվելու պատճառով ինծի տրվեյան. իսկ մնացած Թագաւորական ձէվահիրները կուտամ շվէտի իշխաններուն, անհնարին է որ՝ ես անոնք ասկէց ետքը գործ ածեմ: Տեսնալով Ա ատիղայ ըսվօղները որ Թագուհին չուզէր իրենց խոնարհիլ, սաստիկ պատասխանելով մը ելան գացին. ապառնալով որ գինքը բանտի մը մէջ կըդընեն:

Շատ մարդ ժողովուրդին մէջէն ու ոմանք իշխաններէն՝ չէին հաւնէր ամենուն թագաւորագոյն անձանց ասանկ անարգըվիլը որ օրէօր կեվելնար, իրեք գլխաւոր իշխաններ խօսք դրին Շափղայ ըսվօղներուն բռնաւորութիւնը զսպել, ապահով ըլլալով որ ժողովուրդը իրենց դին է. զօրաց մէջէնալ շատնալ իրենց դին վաստըկած ըլլալով, ապստամբութիւն մը մտածեցին հանելու գիշերանց յունիսի 22. բայց ինչ բան որ շատվորով կըլլայ՝ գաղտուկ մնալ հազիւ կըլլայ, ասանկալ եղաւ հիմա. մէկ տասնապետ մը օրով առաջ գնաց մատնեց. իրեք իշխաններէն՝ մէկը կըցաւ փախչիլ, մէկալ երկուքը շատ հոգիներով բռնըվեցան. Շափղայ ըսվօղները ասոնք մեռուցին, ապրանքնին առին. հոկտ. 20. ժողովքնին արձըկըվեցաւ, որ գրեթէ տարի մը քշեց։

Օխտը տարվան պրուշին պատերազմին մէջ որ ինչպէս ետքը ունինք պատմելու՝ 1756 սկսաւ, 1763 լմնցաւ, շվէտին թագաւորը՝ թագուհին՝ ու ազգնալ՝ չէին ուզէր որ իրենքալ խառնըվին, բայց Շափղայ ըսվօղները՝ որ իշխաններուն մէջնալ ատենակալաց մէջնալ կային, Ֆրանսային դին ըլլալով բոլորովին, պրուշին դէմ ծեծ բանալ տըվին. երբոր մօսկովի վրայ նոր թագաւոր նստաւ Գ. պետրոս, պրուշին հետ հաշտութիւն ըրաւ, անով շվէտը խիստ վտանգի մէջ ընկաւ, մինակ մնացած ըլլալով կըվախնար չըլլայ թէ պրուշը շվէտին

երկիրը կոխէ . բայց Շվետի Թագուհին մէջ մտնալով աղէկ հաշտութ մը ըրավ իր եղբօրը Պրուսի Թագաւորին հետ Շվետին համար . երբոր Շվետին իշխանները իրենց շնորհակալութիւն ընելու եկան, Թագուհին այսչափ միայն խօսքով իրենց երեսը դարկաւ : Այս ապերախտութիւնը մեր կրնար ըլլալ շվետին թագաւորութեան, թէ որ հիմա բանը դրված ըլլար Ռուսիոյ :

Բայց Շափքայ ըսվօղները ան դիւր ծայրը բանեցընելով իրենց բռնաւորութիւնը, անանկ եղաւ որ Գտակ ըսվօղները առաջ անցան . ժողովուրդը կըյուսար որ՝ ասոնց յառաջանալովը խաղաղէ Թագաւորութիւնը, բայց ուր որ հեռ ու նախանձ կայ, հոն ամէն բանը անկարգ կըլլայ, ասոնքալ որ առաջ արքունեաց դին կերեւային, վեր ելածներին պէս՝ Շափքայ ըսվօղներուն պէս արքունեաց դէմ սկսան ըլլալ, ուրիշ բան չէին մտածեր՝ բայց եթէ իրենց դիւր եղօղներուն աղէկութիւն ընել, ու Շափքայ ըսվօղներէն վրէժ առնել, միայն թէ անոնցպէս արիւն ընել չէին սիրեր . ան ատենը բանը փոխվեցաւ, Շափքայ ըսվօղները Թագաւորին դին սկսան՝ ըլլալ . աս փոփոխութեանս վրայ ամէն ժողովուրդը զարմացաւ :

Այն ժողովին մէջը ( որ 1766 . հոկտ . 15 . արձըկվեցաւ , ) որոշվեցաւ որ Թագաւորին տղան կուստաւոս կարգըլի սօֆիա մագդաղենա իշխանուհւոյն հետ՝ որ տանիմարքայի Թագաւորին քոյրն էր :

Փորձառական վերերէն ճանաչմանը ու ճանաչո-
ղութիւնը, երէն վարքը. Սովորին թէ եղած ան-
հարգանութիւնները :

Բանի որ փորձառականին մեղքերը քաղա-
վայհօն կը բօմպալը եղաւ, փորձառականին տէրութիւնը միշտ ալեկոծութեան մը մէջ ընկաւ. չորս տարվընէ վեր մէկ աշու դոզատեղ մընէր եղած ու մարդուս ձեռքէն՝ որ կըսվէր սեբաստիանոս յավնէփ Բուավալհեան, կոմս օեիրասի, ու մարքեզ Բօմպալի. աս մարդս որավհետև խիստ անուանի եղաւ իր բռնաւորութեան համար, իրեն վրայ հոս ծանօթութիւն մը տանք ինչ մարդ ըլլալը :

Բօրկայ ծնաւ 1699 մէկ խեղճ աղքատ սեպուհէ (ազնուական) մը, որ Սուռ գեղին մէջը կըբնակէր քօիմպրա վիճակին մէջ, և կըսվէր մանուէլ քառավալհեան. իր մէկ ազգականի մը միջնորդութեամբ արքունիքը մտաւ; և իր կնկանը միջնորդութեամբ լօնտռա դեսպան (էլչի) խրկըվեցաւ արտաքոյ կարգի. անկէց վիեննա դեսպան գնաց, երբոր իր կնիկը մեռաւ՝ վիեննայի մէջ կարգըվեցաւ Տաուն կոմսուհւոյն հետ, որ մօտիկ ազգական էր երևելի տաուն մառէշալին, և կըսվէր մարիաննա աւստրիական. յոհաննէս Ե. փորձառական թագաւորը չիհաւնելով ասոր՝ ետ կանչեց դեսպանութենէ, բայց նութիւնը իմանալով առանց պաշտօնի թո-

ղուց ։ Ա՛րբոր է յոհաննէս Թագաւորը մեռաւ ; ու յովսէփ իր որդին Թագաւոր նըստաւ , ան ատենը աս քառավալհօն երկու հոգիի մինիստրութը մենծաւութը ձեռքը ձգեց , ինչպէս վէզիր եղաւ . մէյմը իր կնիկը խրատ տրելէն ըլլալով Թագուհիին , Թագուհիին միջնորդութիւնը ձեռք առաւ , մէյմնալ Թագաւորին խոստովանահօրը միջնորդութիւնը՝ որ էր Մօռէիրա հիզվիթը . անկայ այնչափ կրօնիրեր Թագաւորը՝ որ զինքը բոլորովին աս հիզվիթին հաւատացերեր , պզտիկ բան մըն ալ չէր ըներ՝ չէր որոշեր՝ ինչպէս որ իր խոստովանահօրը չիհարցըներ , որովհետեւ մօռէիրա հիզվիթնալ հօր պէս հոգ կըցըցըներ Թագաւորին կեանքին ու իշխանութեանը վրայ ։

Աս տեսնալով քառավալհօ խորամանկը՝ մուքը դըրաւ որ աս հիզվիթը զինքը կըմնայ մեծցընել , հետը խրատ պատուով հնազանդութը կերթար ամէն բանի մէջ , անչափ ըրաւ որ՝ հիզվիթնալ խաբվելով ատոր կեղծաւորութէն , սէր ձգեց վրան , Թագաւորին առջին շատ գովել սկսաւ զանիկայ . յովսէփ Թագաւորը որովհետեւ չէր ունեցած Թագաւորական կրթութիւն , իր հայրը գործքի մէջ խօթած չըլլալով զինքը , փորձ չունէր , բան մը չէյտեր , խեղճ դիւրահաւատ մէյմը ըլլալով՝ անչափ խաբվեցաւ աս մարդուն հետը կապվեցաւ , որ կամաց կամաց զինքը վէզիր ընելով՝ մէկ քայլ մը չէր ըներ՝ առանց հարցընելու քառավալհօին ։ Անանկ եղաւ որ՝ անկեց ետեւ քառ-

վաղճօն սկսաւ տիրել Թագաւորին վրայ, իր չարութենով Թագաւորին վախկոտութիւնը փոքրոգութիւնը օրէօր կըգըրգռէր կըշատցընէր ։

Անանկ կըպատմէր Թագաւորին որ՝ փորթուկացիք չեն ուզեր զքեզ, մանչ զաւակ չունենալուդ համար․ ասոր դէմ քու պետրոս եղբայրդ կըսիրեն, կըսէր, իրեն անուշ վարմունքին համար․ բոլոր արքունիքնալ անիկայ կուզեն կըպատուեն, յոյսերնին անոր վրայ են դրեր ժառանգ ճանչնալնուն համար․ ասանկով Թագաւորին սիրտը մէկ գէշ կասկած մը մտաւ իր եղբօրը վրայ․ ով որ անոր հետ բարեկամութիւն կընէր, խեռ աչքով կընայէր․ Ինչ խօսք կըլլար՝ Թագաւորին եղբօրը վրայ, քառավաղճօն չարի տանելով կըհասկըցընէր Թագաւորին, ամմէն պզտիկ բանի մէջ վախ ձգել կուտար անոր սիրտը, ուրիշ բան չէր խօսէր իրեն՝ բայց եթէ Թագաւորին կեանքին վրայ որոգայթ կըբանեցընեն, ապստամբութիւն պիտոր հանեն, մեռցընեն ։ Շատ հեղ առանձին կամացուկ ականջնիվար աս խօսքս կըփչէր ։ " Ո՛վ Թա-
" գաւոր յիշէ մտածէ՝ մէկ ազգի մը վրայ
" կըԹագաւորես որ փոփոխամիտ է․ ազ-
" նուականքը (ախճալնէրը) շատ կարողու-
" Թի ունին․ անոնց մէջը ոմանք որ Թագա-
" ւորական ցեղէն հետ ազգականութի ու-
" նին՝ կըվախցընեն, օր մը ինչ որ կուզեն՝
" կընան ընել, յիշէ՝ ատոնք էին որ Է ալ-
" փոնսոս Թագաւորը Թախտէն վար առին․

„Ի պետրոսը Թագաւոր դրբին. Նայելու է՞
„ չըլլայ Թէ ան բաները Հիմնձուկալ նո-
„ րէն ըլլայ, վախցեք կազաշեմ„ : Նմանկ
Թիւնաւոր ( դէհիբլի ) խօսքեր միշտ փչե-
լով Թագաւորին սրտին մէջը ամենուն
վրայ վախ ու կասկած ձգել տուաւ. անկեց
ետքը բոլորովին ասոր. ապաւինեցաւ. միա-
քը դնելով որ՝ ուրիշ մէկ հաւատարիմ մը
չունիմ, բայց միայն աս Սեբաստիանոս Յով-
սէփ Գուավալհօն, Սէլօ, Բոմպալին մառ-
քեզը. ասանկ ուզեց որ ըսէ ժողովրդեան
առջին՝ որ խիստ կընային պատասխանատուանե-
րը : Ժողովուրդը մանաւանդ ըլլալով չի-
ճանչցաւ որ՝ ամենէն Թշնամի իրեն աս
մարդս էր. բայց ետքի դիպուածները որ
ետևէ ետև պիտոր պատմենք, ցըցընեն
պիտոր՝ որչափ գէշ բան է մէկ կառավարիչ
մարդու՝ ինչպէս որ Թագաւորն է, Թողուլ
որ ուրիշը զինքը կառավարէ. վասն զի ան
կեց ետքը Թագաւոր յովսէփը չեղաւ, հա-
պա աս քառվալհօն կամ բօմպալը բնուԹէ
տիրական, վրէժխնդիր, անգութ, փառա-
սէր, կեղծաւոր ու անիրաւ:

Երբոր քառվալհօն Թագաւորին սիրտը ա-
սանկ իրեն քաշեց, ջանաց իրեն քաշելու
նաև ուրիշ ամենէն իշխանաւորաց իշխանու-
Թիւնը, մանաւանդ Թէ ուզեց ամենէն իշ-
խաններուն ցեղը հատցընելու, որպէս զի
ինքը ըլլայ տէր բացարձակ, իր սատանայու-
Թեամբը առաջ աւազակներու և գողերու
վրայ սկսաւ իր անգութ սիրտը ցըցընել,
որ վերոյիշեալ շարժէն ետև խիստ շատցեր

էին. մինչ Եւրոպէն փոխադրականն (պու-
լաշըլի) հիւանդութիւն ու սով (խըլթլըխ)
շատցերէր, մինկէց աղքատները խիստ նե-
ղութեան մէջ էին, չիյտէին ինչ ընեն որ ապ-
րուստ գտնան։ Իր բարբարոսութիւնը ա-
ւելի ցըցուց՝ երբոր ապսպրեց որ Լիզպոնին
քովերը 100 կախաղան տնկըվին, որոնց
վըրայ քանի մը օրվան մէջ 350 հոգի կախ-
վեցան։ Բայց սաստիկ պատիժը՝ միշտ չի-
վերջացըներ սաստիկ չարութիւնը։ Յու-
սահատված աղքատները նոր չարութիւն
սկսան ընել, ուրիշներնալ կատղելով պատ-
ժողներուն դէմ. սկսան թուրքաշել, խըշ-
լաններուն կըրակ տալ՝ մանաւանդ ան խըշ-
լային որ արքունեացը (սէրային) քովն էր։
Լիզպոնին մէջը անչափ շատցերէր ողոր-
մելութիւն, անկարգութիւն, ու շփոթու-
թիւն, որ սառաֆըները և ուրիշ հարուստ-
ները ցորեկվան ատենալ զինուոր կեցուցին
իրենց տներուն առջին. իշխանները խեղճ
աղքատներուն օգնութի տալու ապրուստ
հասցընելու տեղը՝ ուտելիքները թողու-
ցերէին հարուստներուն ու մատրապազնե-
րուն ձեռքը. ասանք ան աստիճան ագա-
հութեան հասան որ՝ երբոր ցորեն կամ ու-
րիշ պաշար (զահրէ) բերող նաւ մը կու-
գար Լիզպոնին առջին՝ դակօ գետին մէ-
ջը երկաթ կըձգեր, ծածուկ արգելք կը-
խըրկէին որ՝ բեռներնին չիկըրնան ցամաքը
պարպել։ Ասոր բանս իմանալով ժողովուրդը
աւելի աղքըտցան, աւելի գողութեան հետ
ընկան. իշխանաւորներնալ աւելի խստա-

նալով ապաստանեցին գիշերը քաղաքին դատաւո-ւորներուն ( խօլերուն ), որ կէս գիշերէն ետև փողոցը ( սօխաքը ) գտնըւողը բըռ-նեն, առանց քննելու անմիջապէս կախեն ։ Այս թանովալ շատ անմեղներ մեռան, որ հարկաւորութիւն համար դուրս կելլային, ասանկով լիզպոնցիք օրէօր խեղճութեան մէջ կիյնային, տեսնալով որ հիմա մէկը՝ հի-մա մէկալը ափրիկէ կըքըշէին ․ իսկ ան պաշտօնները որ մեծ էին ու շահ կըբերե-ին՝ քառվալհօին մարդոցը կըբաժնէին ։

## Օէօտօ թաղչին առաջառմէռութիւնը քառվալհօին պաշտօնառովը ։

Այս խորամանկ անգութ քառվալհօն մէկ նոր դատաստան մը սահմանեց, որ քննէ նայէ ով դէշ խօսած ըլլայ կառավարողին դէմ, կա՛մ կառավարողին մարդոց վնաս հասցընել ուզած ըլլայ, ով որ ասանկ մարդը ան դա-տաստանին ձեռքը մատնէ, ու վկայութե-նով ցըցընէ, ան մատնողին 23 հազար խա-չանիշ (որ մէկ կէրպ ոսկի մըն է), վճարել խոստացաւ ։ Այս հրամանը ամմէննալ վախի մէջ ձգեց, հայր՝ մայր՝ զաւակ՝ ազգական՝ մէկմէկու վրայ կասկած կերթային, իրարմէ վախ կունենային, չըլլայ թէ մատնըվին, անեցոց հանգստութիւը տակնուվրայ եղաւ ։ Այս քառվալհօն կամ բօմպալը օրէնք մը նալ հանեց թէ ով որ դէմ դնէ թագաւորին նաև պղտիկ կարգադրութեանը, ան մար-դը իբրև վնասակար թագաւորութեն պատ-

ժըլի . այս օրէնքը ետքը տարածեց նաև ամէն պաշտօնատարներուն վրայ, ըսելով որ՝ անոնք ալ Թագաւորին հրամանին գործագիրքն են, ով որ անոնց կարգադրութեանը դէմ դնէ՝ Թագաւորին դէմ կը դնէ :

Ինչափ եղաւ այս մարդուս բռնաւորութիւնը՝ որ ()բօռդօ քաղաքին մէջը յայտնի ապըստամբութիւն հանել տըւաւ . այս քաղքիս մէջ ինքը մէկ բաժանորդութիւն ( քօմբանիա ) մը սահմանեց գինիի վրայ, որպէս զի ան քաղքին ու իրեն սահմանին մէջը ինքը մինակ ըլլայ գինիին առուտուրը . քաղքըցիք ալ բռնադատեց որ՝ ուրախութեամբ տօն ընեն այս բանիս համար, իբր թէ մէկ մեծ օգտակար բան մը կը սահմանուէր իրենց քաղքին մէջ, թէպէտ և այս բաժանորդութիւնն էր որ պիտոր աւրէր չորցնէր իրենց ամէն առուտուրը . վասն զի որչափ գինի ծախօղ կար՝ պէտք էր որ այս բաժանորդութեան ( քօմբանիային ) ծախէ անանկ ցած գնով որ իրենք կորուսէին : Եւ որովհետեւ ինքը քառավալհօն այս բաժանորդութեան պաշտպան էր կեցած, ամէն մէկ տակառէն ( փչիէն ) իրեք վերոյիշեալ խաչանիշ ըստակը կառնէր . անանկ որ տարին որովհետեւ 40 հազար փչի կըքշվէր, անոր համար 120 հազար խաչանիշ իրեն եկամուտ կուգար անկից . բայց աստանկ մուխադա ընելով գինին՝ շատ վաճառականներ ընկան աղքատցան . վասն զի իրենցմէ աժան գնով կառնէին, ուրիշներուն սուղ գնով կըծախէին :

զի դրսէն եկող պանդխտացիները՝ նոր դարձող բարակվացիները չավրեն, հրամանագիր ( Ֆերման ) հանել տրվին՝ որ Ճիզվիթներուն քարոզած տեղերը մէկ սպանիացիմը ոտք չկոխէ, ներս չմտնայ. աշխարհական կառավարիչներէն ալ չխառնուրվին ան երկիրներուն վրայ. միայն մէջինեները մարդ գլուխ մէյ մէկ բան վճարեն սպանիայի թագաւորին։ Աս պատուէրս եղավ ամմէնէն խելացի պատուէր, վասն զի ինչ աղէկ կրթութիւն տաս մէկի մը՝ թէ որ դուրսէն մէկ օտար մը ան կրթութիւը չունեցող ներս մտնայ, ամմէնը կավրէ։

Ճիզվիթները 1580 մոտան աս աշխարհ, ու անհնարին աշխատանքով լեռներու անտառներու մէջ ընկնելով քալելով երկայնութէ շատ մարդ դարձուցին, միանգամայն մարդկութիւն սորվեցուցին, իրենց թագաւոր ճանչցընել տալով սպանիայի թագաւորը. և ան ցիրուցան բարբարոս մարդիկները մէկ տեղ ժողվելով, իրեք գետոց քով քաղաքներ՝ գեղեր շինելով նստեցուցին, ուր նորահաւատ ժողովուրդը շատնալով 300 հազարէն աւելի եղան. գետերուն անուններն են Պարակվա, Պարանա, Ուրակվա։ Ամմէն գեղ քարոզիչներէն զատ՝ երկերկու Ճիզվիթ կընստէին, որոնք իբրև հայր կըկառավարէին իրենց զավկըները որ լեռներու մէջ գտան, արեան դատաստան տեսնալու համար՝ աշխարհական դատաւոր կըդնէին՝ ամմէն տարի փոխելով։ Ասոնց վրայ ընդհանրական կըմնաս կարգել ա-

մերիկայի հատորը աշխարհագրութ. Թղթ. 590։

Նաւակով Չինգվինները քիչ քիչ մէկ ժողովուրդ մը մէկ նոր ազգ մը հանեցին աշխարհիս վրայ՝ որ հիմա չիգտնըվիր, անանկ բարոյական օրէնք մը ու բարեկարգութի խօթեցին մէջերնին, անանկ մէկ կրթութ մը ու աղէկ կառավարութ սորվեցուցին ; որ թագաւորները իրենց ահովը չեն կրնար մտցընել, միայն հին ատենը Յունէ ըսված դարուն մէջը կըկարդացվի ։ Նանց հիմը (թէմէլը) եղավ պարզմտութի՝ եղբայրսիրութի, մեկմէկու վրայ խիստ սրտցաւ խիստ կապված ըլլալով գրեթէ ամմէն բան հասարակաց էր կրօնաւորներու պէս՝ կամ առաքելոց ատենուն քրիստոնէից պէս, յատուկ մարդիկ գրված կային, որոնց թէ որ կարօտեալ մը իր պիտանաւորութիւնը բանար զուրցեր, խկոյն կըլեցընեին. թէ որ մէկի մը գլուխը բան մը գար պատահեր ; շուտ մը քովինները վրայ կըհասնեին կըհոգային. թէ որ մէկի մը բան ձախորդ երթար ; ըսնելու ըլլար, ամմէնուն կընային որ՝ համնէին վեր վերցընեին ։ Եւ որովհետեւ մեծ քաղքըցիներուն մեծ նեղութիւնը անկից կելլայ որ՝ մէջերնին ամմէնը մէկ աստիճանի չեն, մէջերնին շատ տարբեր կացութիւն գտնըվելով խիստ հարուստ, միջակ, ու աղքատ, իրարու վրայ փորձութի կուգայ, միջակը ուզելով խիստ հարուստին համնիլ, աղքատը միջակին, անկից կշտանալ՝ բաւականութիւն ունենալ չիմնար ա-

բուն պատճառները վերցընելու համար՝ շատ բաներին գինը կարգըված էր. ծախողները աւելի գին չէին կրնար ուզել, առնողներն ալ չէին կրնար վար իջեցընել, անանկով մէկ պզտիկ տղայ մըն ալ համարձակ կըրթար բան կառնէր, մէկը չէր կրնար խաբել, խըժըլթուք աղաղակ չէր ըլլար։ Մ՝ա-րապազրութիւն մանաւանդ ուտելու բաներու վրայ չիկար, և ոչ մուխտաղա, կամ պէտաէթ, անանկով ամէն բանը մանաւանդ ուտելիքը աժան կըմնար, ինչ որ ալ ուտելիքի դիւղացէն հարկաւոր բան կար, կրնային որ ամենուին չիպակսի, դրսէն եկած ապրանքներուն մաքսերը (կէօմրիւքը) չէին աւելցըներ։ Ինչափ կանոնաւորեալ էր իրենց առուտուրը՝ որ հարկ չէր ըլլար իրարմէ փոխ ըստակ առնել, անկեց շատ կռիւներ պակսած էին։

Ուրիշ տեղ կըլլայ որ հասարակաց ծանրութիւնները հոգալ ուզելով՝ ժողովրդեան վրայ տուրք կըձգեն, ըստակ կըժողվեն, որպէս զի ան խարճերուն հասնին, բայց առանկ ժողվըված ըստակը վերակացուները կուտեն, տէրութէ գործը չիկատարվիր, նորէնոր հարկ կըլլայ ժողվել, ժողովուրդը անհնարին կըտանջըվի։ Ըս անկարգութիւը աղէկ դիտելով ձիգլիթները՝ տուրք ժողվելու ծանրութիւնը վերցուցըրէին ժողովուրդին վրայէն, այլ ինչ որ հասարակաց համար գործք պէտքը կըլլար բարակվայի տէրութէնը մէջ՝ ժողովրդեան վրայ բաժնըված էր։ Զօրք պահելու համար թոշակ

ժողովուրդնալ աղէկ կը հնազանդէին․ ուր որ աս երկու բանս մէկ տեղ կը միանայ, աղէկ գիտնալ հրամայել և աղէկ հնազանդիլ, հոն ամէն բան աղէկ կերթայ։

Ճիզվիթներուն մենծ հոգը եղաւ բարակվացող տղոցը վրայ, որովհետև պզտիկուց կրթութիւնը աղէկ կը տպաւորվի անոնց սիրտը, բայց մարդուն պզտիկութիւնը կնկտոց ձեռքը մենծնալով առջի սկզբունքը կնկտոց կրթութիւն է՝ որ կամ աղէկ կամ գէշ՝ տղոցը արեանը մէջ կը թափանցէ, անոր համար տղայ մը իրեք չորս տարվան եղածին պէս՝ կարգաւորեալներէն որ՝ կրթըված կնիկներուն քովը կը խրկէին, գիշեր ցորեկ անոնք կը հոգային, հոգալուն հետ նաև բարի կրթութեան սկզբունքը կը տպաւորէին Ճիզվիթներէն սորվըված։ Այսանկ մեծցած տղաքը տարիքնին հասնելէն ետև երբոր Ճիզվիթներուն դպրատունը կը մտնային, իրաւ է որ ավըրված չէին ըլլար, ուզածնին պէս կը կրթէին, և իբր թէ նոր մարդ կը ստեղծէին։ Տղաքը իրենց ծնողացը պատիւը կուտային, ծնօղքներնալ չէին տանջըվէր իրենց զաւկըներէն, բայց թէ որ մէկը քուռ ըլլար՝ չիշտկըվելու ըլլար՝ որ քիչ պատահած կըլլայ, անանկը մէկալ տղոցը մէջ չէին պահէր, ուրիշ տեղ որոշած կար՝ հոն կը խրկէին։ Տղոցը ատենը հասածին պէս կը կարգէին զատ զատ բնակարան նստեցընելով, ամուսնութեան կապը քակվելու վրայ ամենևին մէկ կռիւ մը չէր լսված մէջերնին։ Այսպէս որ տասնև կրթըված

տղաքը մեծցան, անկից ետև եկօղ տղոցը պէտքը չէր ըլլար բռնադատել իրենց տըված խրատները բռնելու, այլ իրարու օրինակովը կըտարուէին, տղան հօրմէն օրինակ առնելով բնական կըլլար իրենց կանոնով շարժիլ, ատենով աղօթքնին ընել, արուեստնին բանեցընել, ատենով զբօսանք ընել, ուսում սորվիլ ևն. Ամէննալ ատենօքը, չափովը, կանոնովը: Ծառայներուն ալ պզտիկուց անանկ կըթութիւն կուտային որ՝ տիրվըտանքը չէին տանջըվէր. Ծառայներուն քով չկար ծուլութի, գողութիւն, խաբին, ասանկ բաներէ խիստ կըվախնային, թէ որ մէկը ծռէր, իրենց քահանային մէկ խրատը ծեծէն շատ աւելի կըշտկէր:

Դանք որ իրարու հետ տեսնըվելու համար որով կըլլայ մարդկային ընկերութիւնը, անանկ ժողովներ սահմաներէին, որ երբոր մէկտեղվէին, մէկմէկէ մխիթարութիւն կառնէին, կըշինվէին: Իրարու սիրտ խացել, կսկծցընել, ծաղր ընել, առասպել անառակ խօսքերով անագ ( չախա ) ընել, մարդ բամբասել, աս բաներս ամէնուն հեռու էր անոնց խօսակցութէ, և թէ որ մէկը անանկ խօրաթայներէն ետ չկենար՝ մէջերնին բերել չէին իտար: Ասանկով իրենց կենակցութիւնը՝ տեսնըվիլը՝ մեղքի առիթ ( սէպէպ ) չէր ըլլար, այլ զուարճութիւն կըլլար, սիրտերնին կըբացվէր, և միանգամայն աղէկ բանի յօժարութի կըբերէր: Ասըկով թուղթ խաղա-

լը որ տուն կը փչըննէ՝ ամենուն արգել-ված էր։

Նոյն կիրակի օրը՝ էր մէկ օր մը բոլորովին օգտակար ու հոգեւոր զուարճութեան, բայց 'ի քարոզներէն ու քրիստոնէական խրատ տուեցընելէն՝ ինչպէս որ ուրիշ քրիստոնէ-ից երկիրները կ'ըլլան, հացէն ետև ժողով-ներ կ'ըլլային առանձին տուներուն մէջ, ուր ատենը վազելով կ'երթային։ Տեղ մը կը-ժողվէին երաժիշտներ, ու տամբուր շի-նողներ, ան ժողովին մէջը ով որ բան մը շինած ունէր տամբուրով, քնարներով (չալ-ղըներով) կերգէր կըցըցընէր ամենուն առջին, վարձք կամ պատիւ մը կառնէր, անկէց մէկ սէր մը կը մտնար տղոցը մէջ բան առաջ տանելու, իրենց ուսմունքը ցուցընե-լու։ Տեղ տեղ ժողով կ'ըլլըվէր պատմու-թեց վրայ, 'որ գրքէն կամ ուրիշ քաղաքա-կան պատմութիւններէն բան կըպատմէին, հարցմունք կ'ընէին, կըվիճէին, կըմեկնէ-ին, գիտցողներուն վարձք կուտային, ամ-մէն լսողները բան կըսորվէին, և միանգա-մայն կըզուարճանային։ Տեղ տեղալ 'որ գրոց՝ կամ ուրիշ հոգեւոր պատմութիւննե-րու խաղ ձևացընել կուտային տղոց։ Ա-սանկով տղոց փառասիրութիւնը օգտակար բաներու վրայ կըվազէր. ուրիշէն աւելի խելացի երևնալ, աւելի աղէկ գործքեր հանել, անով փառք վաստըկելու, չէ թէ հա-գուստ կապուստով, շռայլութիւն ընելով. անչափաւ զբօսանք կըգտնային կիրակի օ-րերը աս դին ան դին, որ չէին կընար հա-

նիլ ամէնը տեսնալու, զբօսանքին հետևալ բան կըսորվէին .

Վերջապէս ինչ աղէկ բան որ կըգտնըվի մէկ ազգի մը մէջ՝ այն ամէնն աղէկութիւնը մտուցերէին Ճիզվիթները , ու տակէ տակ պիտոր մտցընէին բարակվացոց մէջը , և ինչ պակասութի որ կըգտնըվի ուրիշ ազգաց մէջ՝ այն պակասութեան ախտերը ամենևին վերցընելով օրէօր պիտոր շտկէին . Մանաւանդ սաստիկ կըթըրված մարդիկներուն զաւկըներուն վրայ յոյս ունէին , որոնց բնական ունակութիւն կըլլար՝ ինչ որ ուրիշներուն կըթութի սորվեցուցած էին . Մէկ տեղ կուգային Ճիզվիթները՝ խորհուրդ կընէին , ով որ մէկ աղէկութ մը լսէրէր ազգաց վրայ , իրարու կըդուրցէին . ինչ աղէկ կանոնները որ տըվերէին հին ու նոր խելացի օրէնսդէտները՝ կըկարդային , կընայէին որ իրենց նոր ազգին մէջը կամաց կամաց մտցընեն այն կանոնները , այն խրատները , որոնց մէկին էր կղեմէս աղեքսանդրացիին տըված խրատները Դաստիարակ (Պէտակոկոս) ըսված գրքին մէջը :

Կանոնով ինչպէս պէտք է մէկ քաղքի մը աղէկ կառավարելու՝ որ մէջինները խաղաղութ մէջ մնան , համդիստ ապրին , մէկմէկէ զըկողութ՝ անիրաւութ՝ բռնութ չիքաշեն , արդարութ չուզենան , հեշտ ( խօլայ ) գտնան կերակուրնին , ապրուստնին , տուներնին , կարգըլվիլը ծանր չըլլայ , ամուսնական ընկերութիւը միշտ խաղաղ մնայ , քաղաքական ընկերութիւնը . համդիստ ապրի ,

դատաւորները արդար ըլլան, քաղաքացինե-
րը իրարու մխիթարութիւն ըլլան, նեղիչ
չըլլան, ծնողքները պատուըլին, որդիքները
անհոգ չիմնան, ծառաները հնազանդին,
ամմէն կարգ մարդկանց իրեն կարգը՝ ի-
րեն աստիճանը չափը պահէ, ան կերպով
կըկառավարուէին ըման ոսկի դարուն մար-
դիկներուն պէս, որոնք առջի ատենները
հայաստանին մէջ իբր մէկ ազգ մը՝ մէկ
տուն մը՝ կըկենցաղավարէին հանդստու-
թբ̄ երբոր նոյ նահապետը ու իր տղաքը
ողջ էին, որ եւտքը աշտարակ շինելու սէրը
ցրուեց աւրեց անոնք ։ Ասանկ եղան բա-
րակվացիք, որոնց վրայ զարմանալով կըխօ-
սին երեւելի հեղինակները Մուսաղօսի,
Մոնդէսքիւ, Ռօնտամէնը, ու Մայ-
նալ ։

Ինչ որ բարակվացիք մնացած ըլլային, հի-
մա իրաւցընէ մէկ ազգ մը պիտոր ըլլային
չիգոտնըված, հանգիստ, ուրախ, առողջ,
բարեկարգ, նաև հարուստ, որոնց վրայ
ամմէն ազգաց կատարելութիւնը ժողվը-
ված պիտոր ըլլար, իսկ պակասութիւններն
դուրս հանած ։ Բայց աս աշխարհիս մէջ
պէտք է որ աբելը՝ իր եղբօրմէն կայենէն
մեռնի երթայ, կայէնը ողջ մնայ, քաղաքը-
ները անիկայ շինէ, չէ թէ աբելը ։ Հիմա
թէ ինչպէս մէկ ոչինչ մարդու մը խօսք ան-
չափ խելացի մարդիկներուն անչափ տար-
վան աշխատանքը բոլորովին ոչնչացուց, աս
չիգըտնըվելու ազգը ընկեց, պիտոր լսեք
զարմանաս ։

## Պորթուգալցոց ճիզ խառնակութիւնը, և իրենց աքսո-րուիլը.

### 1752—1759։

Նոր աշխարհի Ռիօ Ժանէյրօ ըսված քաղաքը՝ որ Պրասիլու գլխաւոր քաղաքը եղավ, մէկ փորթուկալցի սեպուհ (ռի-ճալ) մը կար Կօմէզ Ֆէռէիրա անունով. ասիկայ անուանի մարդ մ՚ըներ եղած հա-րաւային ամերիկայի մէջ իր մնացածին երևակայութեցը համար, և իր ճառատող (լաֆազան) ճռաոմաքանութէը համար, անանեկ մէկ խօսելու կերպ մը ունէր, որ ինչ զըրախօսութի ըլլար, ինչ պարապ ան-շահ մտածութիւն, խաբէական ձեռնար-կութենով, կերպ կերպ պատճառներ թա-փելով դիմացինին սիրտը կըշահեր, զինքը ազգասէր հայրենասէր ցըցընելով։ Ասիկայ 1747 իր կերպերովը սկսաւ ան գաւառին կառավարին միտքը խօթել ըսելով որ՝ Պա-րակվային մէջը խիստ հարուստ ոսկիի հան-քեր (մատէններ) կըգտնըվին. ասոր ա-պացոյցը (իսպաթը) աս է որ ըսավ ճիզ-վիթները արգելել տըվլին եւրոպացւոց հան-մոնալ, պատճառը աս է որ՝ իրենք մի-նակ ծածուկ քանեցընել տան ան հանքե-րը, մարդ չիմանայ իրենց անհատնում գան-ձը որ ան հանքերէն կըհանեն, գիտես ա՞ր-դեօք որ տարին ինչ կըվաստըկին, ես մէկ հնարքով մը խնացերեմ, որ ամմէն տարի

3 միլիոն ոսկի խաչանիշ ըստակ կըխըրկեն անկեց Եւրոպա, իրենց վանքերը կըխօ-թեն, խեղճ թագաւորութիւնը քանի մը տեղեակ չէ ։ Աս չարաճճին սկսաւ անոր կերպերնալ ցըցընել, թէ ինչ ընեն որ՝ քա-րակվան փորթուկալին տէրութենը ձեռքը անցընեն ։ Փորթուկալը ըսաւ մէկ հարուստ երկիր մը ունի, որ կըսվի Պաղթական կամ Կղզի Նը խորհրդոյ ։ աս երկիրը իր գաւառովը սպանիային տանք ըսավ, անոր տեղը քարակվան առնենք ։ Թէ ինչ շահ պի-տոր ըլլար ասկեց փորթուկալի տէրութենը՝ մէկիկ մէկիկ աչքին առջին բերաւ աս շա-տախօսը, անանկ որ՝ Կառավարօղ փաշան մայլելով իր խօսքերէն, միտքը դնելով որ թագաւորին առջին մեծ անուն կունենայ ասանկ շահաւոր վաստակ ցըցընելով, կրեց վերոյիշեալ փորթուկալի վէզիրին Քառվալ-հօին, ըսելով թէ որ աս բանս ըլլայ, շուտ մը մէկ ոսկի գետ մը պիտոր վազել ըսկսի իր ձեռքը ։ Աշխըրքիս մէջ որչափ մեծ խռովութիւններ մեծ մեծ չարիքներ ե-ղերեն, ասանկ ստախօս ճարտասաններէն եղերեն, որոնց պէտքը չէ ճարտասան ը-սել, այլ Դարդասան, Լաֆազան, որ խօսքեր-նուն մէջը չկըտես ինչ կայ՝ որ կըկախար-դեն, սուտը իրաւի տեղ՝ գէշը աղէկի տեղ՝ գունաւորելովմը կըփոխեն կըխա-բեն ։ բայց աւելի մեղադրելու անոնք կըլ-լան որ՝ ասանկներուն մտիկ կըդնեն առանց քննելու ։

«Քառվալհօ կամ Բօմպալ վէզիրը՝ որով-

հետեւ արծաթասէր մարդ մընէր ։ ոսկիին ձայնը առածին պէս՝ սիրտը վեր վեր ընկաւ, շուտ մը առաջարկեց սպանիային աս փոփոխութիւնս ընելու. սպանիան սիրով ընդունեց աս առաջարկութիւնը, ինչու որ՝ աս փոխփոխելովը փորթուկալին կուտար մէկ երկիր մը իրեն համար անօգուտ անքեր, ինքը փորթուկալէն կառնէր մէկ քաղաք մը՝ որ իր երկիրներուն պատճառովը շահաւոր էր. ու ասով փորթուկալներուն կըզգոցեր առաւտուր ընելու ճամփան հարաւային ամերիկայի ներսի դիէրուն հետ ։ Առջի բերանը խօսք դրին որ՝ բարակվան փորթուկալին տակը անցնի, բայց մէջի ժողովուրդը իր տեղը մնայ ։ Ան է որ աս բանս պահէին, այնչափ խռովութիւն չէր ըլլար, բայց փորթուկալի տէրութիւնը բարակվան առնելէն ետեւ 1752 հրամեց որ՝ իրենց վարուցան եղած երկրէն ելլան, ուրիշ երկիր երթան որ բանեցուցած չէր ։ Ամերիկացիք որ՝ ամմէնէն աւելի յարեալ էն իրենց երկրին վր̃, չուզեցին ելլալ՝ ըսելով. ինչ պատճառով սպանիացիք ու փորթուկալցիք կուզեն մեր երկիրներէն դուրս հանել մեզ, որ մեր քրտինքով վարուցան ըրեր ենք, որ իրենցմէ չենք առնեցած՝ հապա մեր առջիններէն. թէ որ քրիստոնեայ եղերենք, սպանիային հարկատու եղերենք, աս թէութ̃ եղերենք որ՝ մեր երկրին մէջը թողու մեզ, ու մեր թշնամիներէն մեզ պաշտպանէ ։ Ասանկ դէմ դրին բարակվացիք 1753. փետրվարի մէջ, փորթուկալցիք

սեպեցին որ՝ աս դէմ դնելը Ճիզվիթներէն է, անոնք են պատճառ. անուշութիւն բանեցընելուն տեղը սկսան խստութիւն բանեցընել, սպանիան ու փօրթուկալը մէկ տեղ 8000 զօրք խրկեցին, բայց բան մը չկրցան ընել, սպանիացոց զօրքը չմիացաւ փօրթուկալի զօրացը հետ. ասոնց ձի՝ ապրուստ պակսեցաւ, մէջերնին հիւանդութիւն ջարդ ընկաւ։ Պարակվայցոցմէ քիչ մարդ կոտորվեցաւ. 1754 տարիին մէջ լռութիւն խաղաղութիւն եղաւ աս բանիս վրայ։

Բայց քառավալհօն անունը կատաղելով երդվընցաւ որ՝ Ճիզվիթին կարգը վերցընէ ընդէ, ինչպէս որ վարը պիտոր պատմենք. ետքը պրասիլ խրկեց իր աղբարը որ կըսվէր Ֆրանչիսքօս քսավէրիոս քառավալհօ ու մէնտօզա, իրեն իշխանութէ անուն տալով Ընդհանուր հրամանատար ( գաբիդան ), ու Կառավար մեծ բառայի ու մարանեոնի. իր դիւացէն երեսփոխան ( մուրախխաս ) ընելով, որպէս զի անհնազանդները հնազանդեցընէ։ Երբոր ասիկայ բազմութեամբ զօրաց վրանին վազեց, պարակվացիք յաղթըվելով եւրոպացոց շատութէ, չկրնալով դէմ դնել, թողուցին իրենց տեղը, անտառներու մէջը փախան։ Ան փօրթուկալները չորս դիւացէն պաշարեցին, պարակվացիք կաղաղակէին կըսէին որ՝ ինչ կըսէք մտիկ կըդնենք, բայց ոչ լացերնին և ոչ աղաղակնին մտիկ դրին. 30 հազարէն աւելի երիկ մարդ՝ կնիկ մարդ, մեծ ու պըզտիկ, ամէնը ջարդեցին 1759. հոկտեմ.

10. անգամ զինուորները պզտիկ երեխայ-
ները մօրերնուն գրկէն կըքաշէին կրակը
կըձգէին, կամ շներուն և ուրիշ գազան-
ներուն առջին կընետէին կերակուր ըլլա-
լու.

Այս գործողութիւնը որ քար կտրած սիրտեր-
նալ կըլլացընէ, իրենք իբր մէկ մենծ յաղ-
թութիւն մը ըրած Ձիգվիթներուն զօրքին
վրայ կըպարծէին. և իբր թէ իրենց թշնա-
մի ազգը Ձիգվիթը եղած ըլլար՝ այնպէս
Ձիգվիթներուն վրայ սկսան հնհրնալ, աղ-
քայ կըձոել. անանկ որ բանը փոխվեցաւ,
բարակվացոց վրայէն դուրս ելավ, բօթը
Ձիգվիթներուն վրայ դարձաւ ընկաւ. Փո-
խանակ շնորհակալ ըլլալու՝ որ աս վայրե-
նիները լեռներէն ժողվելով մարդ ու նոր
ազգ մը ըրին; նոր քաղքընէր շինել տա-
լով սպանիայի թագաւորին հարկատու ը-
րին՝ որ իրենք պիտոր վայելէին, մէկ սա-
տանայական հակառակութիւն մը մտուցին
սրտերնին մէջը Ձիգվիթներուն դէմ. սկսան
սուտ մուտ ձաներով ժողովուրդը հաւտա-
ցընել, թէ Ձիգվիթները ինքիրենին բա-
րակվայի մէջ մէկ նոր թագաւորութիւն մը
հաներէին. անոնց զօրապետ մէկ Ձիգվիթ
եղբայր մընէր, որ զինքը կըկոչէր. Նիկողա-
ոս Ա. Թագաւոր Բարակվայի, Ազգը Մամլուքնե-
րու. Աս որ վարքնալ 1758 Փրրանսըզերէն
հանեցին, ժէ գլուխ պատմութիւն, գրե-
լով թէ. "Նիկողոս Ռուպինի Փուխուցի
» եր. սառակօյցա երթալով Ձիգվիթի եղ-
» բար եղավ, ամերիկա գնաց, 5 հազար զօ-

ո րուց վրայ գըլուխ եղաւ, անմիջամբ Պարակ-
„վայոց Թագաւոր եղաւ, ու մէմալուքնէ-
„րու կայսր „ ։ Հոս վարքը կըլմնցընէ ։
Բայց ինչ զարմանք, որ այս Թիւրքիս պատ-
մութիւնը ամերիկայի մէջ ելլալուն տեղը՝
եւրոպայի մէջ ելաւ. ան ատենը ամմէնման
հաւատացուցին իբրեւ սուտ, բայց ետքը ի-
մացան որ շինծու պատմութիւն մ'ընէ եղեր;
Նիկողոս Թագաւորնալ սուտ է եղեր, ո-
րուն վրայ տես ամերիկայի հատորը. Թղթ.
594. իր անունով կոխված ըստակնալ Թէհնա-
միներուն գիւտ (իձատ), որ եւրոպայի
մէջ աս դին ան դին ծաւալեցին, որուն
վրայ կըտեսնըվէր աս սուտ Թագաւորին
պատկերը, բոլորտիքը լատիներէն գրված
տառանկ. Նիկողայոս Ա. Փոխարքայի ։ Պարակվայոց
Թագաւոր. Ճիզվիթներու Գլուխ ։ Ինչ աւե-
լի յայտնի նշան սուտութեան. Նիկողոս Թագա-
ւորը ամերիկայի մէջն է ըսին, իր ըստակը
(սիքքէն) եւրոպայի մէջ կըպըտըտէր. Նի-
կողոս Թագաւորը ամերիկայի մէջ փնտռե-
ցին չգտան, իր վարքը եւրոպայի մէջ տե-
սան, եւ ոչ ամերիկայի մէջ ։ Բայց իրաւ
Թագաւոր Պարակվայոց՝ էր իրենց անմե-
ղութիւնը ու արդար կառավարութիւնը՝
որ կըլլար դըրսէն ներս մարդ չխօթելով։
Ճիզվիթները իրենց խօսքերը զօրաւոր ը-
նելու համար՝ մէկ մեծ գիրք մը դուրս
հանեցին, իբր գիրք իրենց ըրած քննութեր
բովանդակութի, մէջը Թագաւորուէ դէմ
բաներ լեցուն, ծածուկ տեղեկութի կու-
տայ Ճիզվիթներուն գաղտուկ խորհուրդ ։

ներուն մէջ. սա գրքիս օրինակը ուրիշ տե-
րութիւններուան խրկեցին մանաւանդ Հռոմ,
որ սրբազան պապը ու քարտինալները իմա-
նան Ճիզվիթներուն չարութիւնը։ Ի՛ս սա-
տերուն հաւատալը երկան ատեն չքշեց.
բարեպաշտայի վրայ Նոր կառավար եկաւ գե-
վալլըս (1) անունով, ասիկայ հաւատարիմ
արդար մարդ ըլլալով, գլխաւորներուն ը-
րած անիրաւութիւնը իր աչքովը տեսնա-
լով, աղէկ ստոյգ տեղեկութիւն տրվաւ
սպանիայի. ան ատենը դահճի (Ճելլատի)
ձեռքով երեցին Ճիզվիթներուն դէմ գրած
գիրքը՝ որ քառավալհօն սպանիա տըպել տը-
վերեր, ու թագաւորական վճիռներով ար-
դարացուցին Ճիզվիթները։ Նոքը երբոր
Գ. կարօլոս սպանիայի թագաւոր եղաւ, ան
երկիրներուն փոխելուն համար դաշինքը
որ փօրթուկալի հետ ըրեր էին՝ վերցուց։
Ո՛նաց որ քառավալհօն սա բանս պատճառ
բռնելով՝ ան քարոզչութիւնը որ Ճիզվիթ-
ները իրենց քրտինքով ու արիւնով ամերի-
կայի մէջ սահմաներեկին՝ վերցընել տըրվաւ,
պատճառ եղաւ որ՝ ան անմեղ ժողովուր-
դը՝ որ պօղոս առաքեալին ըրածին պէս՝
քարոզչաց քրտինքը իբրև գկոյս մի՛նը յան-
դիման կեցուցերէին քնի, օձի պէս ավըեց
ապականեց քնի միամտութէ։ Երբոր Նո-
րահաւատ բարեպաշտացիք ու պրասիլեացիք
տեսան որ իրենց հովիւներէն զրկըված

---

(1) Ոմանք կըկոչեն Վաղալըս։

մնացին, դարձան գացին իրենց անտառնե-
րը ու լեռները քաշվեցան. քանի հեղ որ ուրիշ քահանաներ խրկեցին ետեւնին՝ շատ մը չեղաւ, քահանաներէն ալ մէկը չեղաւ որ՝ վեց ամսի չափ մէջերնին նստի։ Մէկ սոտասաց շաղակրատ (լաֆազան) մը խօսք հերիք եղաւ ասչափ բազմութիւնը կորսնցընել։

Փորթուգալը իր դարպասէն (սէրայէն) դուրս կըհանէ Ճիզվիթները, քարոզութենէ ու խոստովանութենէ կարգելէ.

1757—1758.

Պորթուգալցօ կամբօմպալ վէզիրը ան մնացածին ասկէն ամերիկայի մէջ չիգտնալով, բոլորովին պարապ ելլալով իր բարկութիւնը թափեց Ճիզվիթներու վր̃. հերիք չեղաւ բարագվացոց նոր ազգը ամբողջ կորսնցընել, ան ազգին ծնօղն ալ ուզեց ջնջել, որ է Ճիզվիթը։ Ինչպէս որ ըսինք՝ Թագաւորին հաւանութիւն առեր էր որ Ճիզվիթները արգելէ, ասկէց ետքը քարոզչութիւն չերթան ոչ ամերիկա, և ոչ ուրիշ տեղեր, հիմա ուզեց որ նաև Եւրոպայի մէջէնալ վերցընէ. Թագաւորին խելքը խօթեց ըսելով որ՝ վարի աշխարհ եղած Ճիզվիթներուն յանդգնութիւնը՝ վերի աշխարհ եղօղ Ճիզվիթներուն մեղմութ̃է է, ըլլալով խոստովանահայր Թագաւորի ու ամմէն Թագաւորական տան՝ ուզածնին կընեն.

գինը՝ գիտնալով որ բանը աւելի գէշի կեր-
թայ թէ որ հրաման չիտայ, հրամայեց քառ-
տինալին, բայց հետնալ ուրիշ թարեւագիր
մը գրեց անոր, ուր ազէկ կըցըցընէ թէ
ան գրքին մէջի գրածները զըպարտու-
թիւն էին։

Սալտայնա քառտինալը 1758. մայիսի եօթերը հանդիսով գնաց Ճիզվիթին վանքը, ամենեւին քննութիւն չըրավ, մանաւանդ թէ խիստ սիրով խօսելով ըսաւ, Սանկարօ էմ ճարբէնարգաուն, չէ նէ. դուր։ Բայց մէյ մընալ տեսան որ յունիսի 14 լիզպոնքաղաքին մէջը քառտինալին հրամանը դուրս ելավ մայիսի 15 գրված, ուր կըսէ. "Կի-
„տեմ ստոյգ որ ամէն Ճիզվիթներուն
„վանքերուն մէջը վաճառականութի կը-
„նեն, որ կանոններէն արգելված է, ու
„անվայել քահանայներուն, դայթակղու-
„թիւն տըվող, եւն, անոր համար կըհրա-
„մեմ ամէնուն որ իրեք օրվան մէջ ինծի
„բերեն ցըցընեն ամէն թօղթաները, ա-
„պրանքները, իրենց տեփթերներովը ու
„աս առուտուրի վրայօք կըգտնըվին„։

Ասանկ մեծ ամբաստանութիւն մը առանց մէկ քննութիւն մը ընելու՝ ստոյգ հրատարակել, ամէնը իմացան որ՝ քառվալհօին բռնապատելուն էր. աս քառվալհօն եաքը լիզպօնի պատրիարքին հրամեց թագաւորին անունավը՝ որ Ճիզվիթները արգելէ քարոզութէ ու խոստովանութէ իբրեւ թագաւորէն ապստամբ, իբրեւ խաբող ժողովուրդեան. պատրիարքը որ կըվախեր յու-

ունէր մանուէլ Մչալեան՝ դժուարութիւն ցըցուց այս բանս ընելու. պատասխանեց քառավալհօն՝ թէ որ չի կատարես, Թագաւորը պիտոր բարկացընես, ու պատճառ պիտոր ըլլաս Ճիզվիթներուն ալ աւելի պատիժ քաշելու տալու : Պատրիարգը քանի մը տողով այս արգելմունքը ակամայ հանեց; բայց այնչափ ցաւ ունեցաւ, ու այնչափ վրդովմունք սրտին մէջը իր խղճէն՝ որ ելաւ գեղ գնաց, հոն ամիս մը պառկեցաւ, մեռաւ. իր տեղը պատրիարգ եղաւ վերը յիշեալ քառտինալ Սալտայնան :

Նոյն փորթուկալին Թագաւորը ա̃ յովսէփ անզգեակ չէր ամենևին այս բաներուս, թէ որ երբեմն առոր՝ երբեմն անոր կըհարցընէր Ճիզվիթներուն պակսիլը, կամ պատասխան չէին իտար վախերընէն՝ որ քառվալհօն զիրենք մշտնջենաւոր բանտը կդընէ, կամ իրենն կրօնաւորներ կըցըցընէին Պրեադին ըսվածներ, որոնց հագուստը նման ըլլալով Ճիզվիթ կըսեպէր, մէկալ Ճիզվիթները իրենց մեծաւորը դուրս խըրկեց ըսելով կըխաբէին :

Վերոյիշեալ Ճիզվիթներուն ըրած վաճառականութիւնը այս էր որ՝ ամերիկա կամ ասիա եղած Ճիզվիթ քարոզիչները՝ դպրատուներ երկիրներ ունէին, անկեց ելած բերքերը իրենց օգտելէն ետև կեւելնային, հոն ալ ուրիշ բաներ պէտքը կըլլային՝ որ չէին գտնըվէր, անոր համար ամերիկայի ամմէն Ճիզվիթին քարոզունն գաւառները մէջ մէկ գործակալ ունէին լիզպոն քաղքին մէջը,

իրենց բերքերուն աւելցածը անոնց կըխըրկէին, վասն զի ամերիկային մէջը չէին կըրնար ծախվիլ, շատ մարդու քով գտնըվելուն համար առնօղ չիկար. ան գործակալներնալ ան բերքերը ծախել տալով, իրենց պէտք ըլլալու բաները եւրոպայէն կառնէին, ինչպէս են կտաւ, չուխայ, երկաթ, գիրք եւն, հոն եղած Ճիզվիթներուն կըխըրկէին. իրենց գործածութեան համար՝ չէ թէ ծախելու համար. աս ջըզվիթ վաճառականութիւն, չէին արգելէր ոչ քաղաքական և ոչ եկեղեցական օրէնք: Ասոր համար ոչ երբէք քննութիւն ըրին, թէ արդեօք իրաւ վաճառականութիւն կընէին թէ չէ, հապա իրենց ուզածին պէս վճռեցին. եւնէն եկող պարսաւագիր մարդիկներնալ Լօռ-պէռդի եւն, որոնց միտքը վար զարնել է, վաճառականութեան անուն դնելով հռչակեցին:

Փորթուկալի Թագաւորին դէմ եղած դաւադրութիւնը, ու դատաւորներէն ըրած խորամանկութիւնը ու բռնաւորութիւնը.

1758—1759:

Փորթուկալին Թագաւորը Ժ յավէն՝ աս տարիներս մէկ անզգայ մարդ մընէր եղած, վասն զի քառավալօ բօմպալ իր վէզիրը՝ ամէն արուեստ բանեցուցերէր որ կառավարութեան մէջ խառնել չտայ զինքը. և որպէս զի ամենևին ապահով ըլլայ, կը-

նայէր որ անկարգ հեշտութեանց մէջ Թագաւո-րը ընկղմել տայ. Ինչպէս որ ատեն ատեն Փրանսային պաշտօնատէրերը իրենց Թա-գաւորներուն ըրին, ասանկ ալ աս չարաճճի մարդը իր Թագաւորին սիրտը Ջանաց որ իր ընկերոջմէն Թագուհիէն պաղեցընել տայ, սէրը ուրիշներուն վրայ ձգել տայ: Իրեն նման մէկ չարաճճիմընալ գտաւ Յով-սէփ Տէքսէիրա անունով, որ իշ ազգանե-րէն մէկն էր, սակայն բոլորովին քաւալա-հօլին կամքը կատարելով, Թագաւորին խիստ սիրական ընկեր ու բարեկամ եղաւ. որուն Թագաւորը իր ամէն ծածուկը կըբանար կըզլուրցէր. Տէքսէիրան ալ Թագաւորին կառաջնորդէր, իրեն հետ գաղտուկ կա-նէր կըտանէր իր անկարգութիւնները ը-նելու:

Թագաւորին դարպասին (սէրային) հա-զարապետը (քեախեան) էր Ավէրիօյի դուքսը, ատոր ընկերոջը ու աղջկանը հետ անկարգ սէր ունէր Թագաւորը, օր մը աս ավէրիօն բարկացած ըլլալով Տէքսէիրայ-ին վրայ, միտքը դրաւ վրէժ առնել իրմէ, մանաւանդ գիտէրալ որ Թագաւորը իր տունը բերող տանօղը աս Տէքսէիրան էր, գիշեր ցորեկ ետեւէն կըպըտըտէր իր վրէժը հանելու անկից: Թագաւորին Թշնամի էին նաեւ Տավօռա մառքէզը նոյնպէս անկարգ սիրուն համար՝ որ Թագաւորը ունէր իր կնկանը հետ, ասանկ ալ Թշնամի էին կնկա-նը ծնողքը: Ուրիշ բան մընալ կայ գիտ-նալու, որպէս զի աղէկ հասկըցվի ան զար-

հուրերը աղեկտուր դիպուածները, որ ան-կէց հետեւեցան։ Վերոյիշեալ Դաւօռային տունը յաճախ կը ժողվէին Լիզպօնին մէջ ե-ղած խիստ երեւելի իշխանները՝ իրարու հետ տեսնըվելու խօսակցելու համար, Քառավալհօն հոն եղօղ մէկ աղջիկը ուզեց իր տղին կին առնել, բայց իրենք խիստ մենծ իշխաններէն ըլլալով ու հին ցեղ, իսկ Քառավալհօն նոր իշխան, չուզեցին իրենց տղին աղջիկ տալու, մանաւանդ թէ քա-մահրելով մը իրեն պատասխան տըվին։ Բայց աղէկ կըսէ առակաց խօսքը. Նա-ւապետը պզտիկ հովերուն ատենն ալ պէտք է որ արթուն կենայ, վասն զի չիկարծած փոթորիկը շատ հեղ պզտիկ հովերէն կել-լայ։ Ասանկ ալ եղաւ հիմա որ պատմենք. Յովսէփ Թագաւորը աս ատենները սուգի մէջ էր, ինչու որ իր քոյրը Վառվառէ ա-նունով որ Սպանիայի Թագուհին էր՝ օգոս-տոսի 27 մեռած էր. անոր համար խիստ ծածուկ գիշերանց դուրս կելլար, գաղտուկ կերթար իր անկարգութիւնները ընելու, որ միայնակ Քառավալհօն ու մէկ սենեկապետը գիտէին, իր ընկերը Թագուհին ալ չգիտէր, կարծէր որ խորհուրդ ընելու համար կեր-թայ։ Ասանկ ըլլալով 1587. սեպտ. 3. (1) Թագաւորը գիշերանց Դէքսէիրային հետ գաղտուկ գնաց Դաւօռային տունը իր ան-

---

(1) Ոմանք պատմագիրք կըդնեն դեկտ. 3. որ յայտ-նի սխալ կերեւայ.

կարգութիւնը ընելու համար, երբոր դառ-
նալու եղաւ առապային վրայ՝ յանկարծ
իրեք ձիաւոր վազեցին, խռատապինա աչար-
պեցին. Երբոր քովինը կանչեց որ՝ Թագա-
ւորը առապային մէջն է, շուտմը փախան
անյայտ եղան. Թագաւորը խոցվեցաւ իրեն
ձախ թեւին վրայ ինչպէս որ ըսին, հոն Ան-
ճէյա մառքէզին տունը մտուցին, ուր իրեն
խոցը պատեցին, անկէց պէլէմ կամ պէթ-
լէմ տարին, որ Թագաւորին զուարճալի
պալատն (սէրայն) էր. Ինքը չէր ուզեր
հոն երթալ, բայց իր իշխանները շատ յոր-
դորեցին հոն երթալու: Ասանկով Թագա-
ւորը հոն քաշված կեցաւ ինչվան սեպտեմ-
բերին կէսը. ոչ մարդու կերեւնար, եւ ոչ
մարդ կընդունէր, բայց միայն իր ընկերը
Թագուհին, իր վէզիրը քառվալհօն, ու
մէկ ճէռռահ մը:

Միայն թէ մէկ ստոյգ բան մը երեւան չե-
լաւ, ոմանք ըսին որ աւէյրօ դուքսը իր
վրէժը առնելու համար դէքսէյրաէն՝ իր
ծառաներէն մէկ քանին խրկեց աս բանս
ընելու, որոնց մէկին համար ըսին որ՝ ինքը
աւէյրօ դուքսն էր. Իրաւ է որ՝ առապան
որուն վրայ Թիւֆէնկ պարպեցին՝ դէքսէ-
յրային առապան էր, իրաւ ալ է որ՝ զար-
նօղները լաւ ծնին պէս թէ Թագաւորը մէջն
է, ձգեցին փախան: Իսկ ոմանք ըսին որ՝
ինքը քառվալհօն էր՝ որ Թիւֆէնկ պարպեց
Թագաւորին նստած առապային վրայ, որ-
պէս զի Թագաւորը վախցընէ, իրեն ձեռքը
ձգէ իշխանութիւնը նոր դատաստան գնե-

լու կործելու ուզածին պէս ։ Եղան ոմանք ալ որ Թագաւորին խոցուիլն ալ բոլորովին սուտ հանեցին ։

Ավէրրօն սիրտը եփելէն կուգար ամմէն օր կըհարցնէր Թագաւորին առողջութեանը վրայ, Քառվալհօ խորամանկը Ավէրրօյին ալ ուրիշ ամմէն դուքսի եղողներուն ալ մէկ տարակուսական տեղեկութիւն մը կուտար Թագաւորին ողջութեը համար, զարնըւելուն համարալ՝ Թագուհիին վրայ կասկած ձգել կուտար, ձան հանելով թէ Թագուհին իր նախանձելէն կարելի է որ աս բանս ընել տըված ։ Ավէրրօն տեսնալով որ իրեք ամիս անցաւ, մէկ ձան ձուն մը չելալ Թագաւորը զարնողներուն վրայ, հանգիստ գեղը գնաց, կարծելով որ ամմէն բան գոցվեցաւ մարեցաւ. բայց դեկտ. 13. Քառվալհօն յանկարծ բազմութիւն զօրաց ղըրկեց, վերոյիշեալ դավօռային տունը պաշարեց, մէջի գտնըվող երեւելի մարդիկներու բազմութիւնը բռնեց, մութ բանտերու մէջ դրավ. անոնց մէջն էին Ավէրրօ դուքսը, ու դավօռա մառքեզին ընտանիքը, ինչվան անմեղ տղաքները ու աղջիկները պատժեց. յայտնի ցըցընելով որ՝ Ավէրրօին ու դավօռային տունը կուզէր ջնջել. մէկ մառդին անունով պատանի մը՝ չէրթուզ ըսված կրօնաւորներուն վանքը դնելով, մէկ խուցի մը մէջ գոցել տըվալ. երկու հասած կարգըլվելու աղջիկ՝ Թերէզիանա ըսված մարապետներուն վանքը դրաւ. պատուիրելով իրենց մեծաւորին որ՝ շատ

մը մարդասպանի հագուստ հագցընել անոնց․ ասոնց հետ բռնըվեցաւ նաև ռիվլիէռա կոմսը։

Անոնք և ուրիշ բազմութիւն ազնուական ըն-տանիք՝ քաղաքըցի ըլլայ՝ էրիկ մարդ, կնիկ մարդ, ծեր, տղայ, կրօնաւոր, քահանայ, մութ բանտերու մէջ խօթելէն ետև՝ քառվալհօն ուզեց ինքիրմէ տեսնալ՝ ասոնց դատաստանը, վ՛ն զի ան դատաւորները՝ որ ինքը ամմէն դատաստանէն ընտրեց ժողովեց դատնք դատելու համար՝ ըսին իրեն որ՝ ասոնց վճիռը տալու համար՝ պէտք էին ապացոյց գտնալ ու վկայութիւններ, որպէս զի ճշմարտութիւնը հաստատվի։ Արիւնարբու բռնաւորը խստութիւն մը ասոնց պատասխանն տըվավ, թէ վկայութիւնները իմ ձեռքս են, բայց ան պատճառներուն համար որ թագաւորին յայտնի են՝ պէտք է որ ծածուկ պահեմ․ դուք միայն վճռեցէք ինչ պատիժ որ կըվայլէ տալու աս պարտաւորներուն։ Դատաւորները տեսնալով ասոր անանկ զրուցելէն, վախերնէն իրենց վճիռը տըվին․ միայն յոհաննէս ալվարէզ՝ ասոնց մէջէն իր վճիռը չտըվավ, մանաւանդ թէ յայտնի դանկատեցաւ մէկալնոնց երեսնին տալով իրենց վախկոտութիւնը․ անոր համար քառվալհօն երկու պատի մէջ հիւսել տըվավ զանիկայ, ուր անօթութենէ մեռաւ։

Ասանկ կերպով դատաստանը կտրելէն ետև՝ էլէօնօռա մարքէզա դավօռա տիկինը՝ որ բռնըվածներէն մէկն էր, ու վանքը

մը մէջ դրված էր, հանեցին թանտը տա-
րին, յայտնելով իրեն որ պիտոր մեռցը-
նեն, առանց խօսք մը լսելու դատաւորնե-
րէն, մեկալներն ամմէնը տանջանքը դրին
որ խոստովանին։ Մկրտիչ դուքսը տան-
ջանքին չդիմանալով խոստովանեցաւ որ
ինքն էր յանցաւոր, մեկալներն ամմէն-
նալ իրեն ըրածին ընկեր էին, ավելցուց
ըսելու որ՝ իրեք ձիգվիթալ խորհուրդ տը-
վին թագաւորը մեռցընելու, առանք են
Մաթօս, Եղէքսանդր, մանաւանդ Գաւ-
բրիէլ Մալակրիտա. երբոր մեռցընելու
տարին ավէրիօ դուքսը, ան առենը նա
կանչեց աս ամմէն ըրածները որ առաջ
զուրցեց, բայց բանի տեղ չխնայեցին։
Քննութիւնը եղավ ամբրվան մը մէջ՝ որ
երևան հանեցին. ասիկայ մենծ գրքի մը
չափ կար, մէջը ասանկ կըսէ։ „ Յայտնի
„ եղավ որ թագաւորը սպաննելու խօսք
„ դնող մարդիկ կան եղեր, որոնց գլխա-
„ ւորներն են Մկրտիչ դուքսը, Պաւլօս
„ մարքէզը հայրն ու տղան, ու իր կնիկը;
„ առանց դըրդող եղերէն իրեք ձիգվիթ,
„ Մալակրիտա, Մաթոս, ու Եղէքսանդր,
„ և ուրիշներ „։ Ետքը վճիռնալ կըդրէ
մէջը։

Ասանկով 1759. յունվարի 13. պելէմ
հրապարակին (մէյտանին) մէջ՝ դակօ գե-
տին առջին բարձրաւանդակ տեղ մը շի-
նեցին, չորս դին ձիաւոր ու ոտանաւոր
(եաեան) զօրք կեցուցին, դքսին սենեկա-
պետը (խաֆտանճին) մէկ ծայրը կապե-

ցին որ ողջ ողջ եռեն, իսկ մնացեալ դա-
վօռան որ էլէօնօռա կրակէր, խեղճ գի-
շերվան լաթերով բռնած բերին, ամմէնուն
առաջ ասոր խաթունին գլուխը կտրեցին,
վասն զի քառավարհօն իմացաւ որ՝ Թագու-
հին ու պրասիլու իշխանուհին աղաչանք ը-
նելու հետ էին Թագաւորին որ՝ անոնկայ
խալսցընեն, ինչպէս որ իրաւցընէ Թագա-
ւորէն հրաման եկաւ խալսցընելու, բայց
ան ատենը մէկ քառորդ (չէյրեկ) մընէր
անցած քանի որ գլխատվերէր։ Յօվսէփ
դավօռային տղան՝ 21 տարվան՝ երկրթէ
դաւադամով կտորտելով թևերը ու ձիվէ-
րը սպաննեցին, սաանկ ըրին ուրիշ երկու
հոգիիալ՝ որոնց մէկն էր լուսինձի դավօռայ-
ին մէկալ տղան. ետքը սպաննեցին ծեր
Փռանչէսքօ դավօռան, որուն իբր գթալու
համար պինտ առաջ կուրծքին զարկին։
Մերջինը եղաւ ամէնու դուքսը՝ որ գիշեր-
վան հաղուստովը բռնըված բերին պատ-
ժելու տեղը։ Ասոնք մեռցընելէն ետև
ամմէն դիակները (լէշերը), գործիքները,
ու բարձրաւանդակնալ երեցին, հետնալ
Փէռուռուա մէյմը ողջ ողջ երեցին, ամմէ-
նուն մոխիրը հովին տըվին, ու ջուրը ձգե-
ձին։ Տեսնօղները ամմէննալ տոսկումը մէջ
ընկան, լացօղներ շատ եղան անմեղ հա-
մարելով ասոնք ընդհանրապէս, բայց ա-
սանկ ցաւ ցըցընօղներուն շատին միտս հա-
սաւ, ոմանք ազատուլթիւննին կորսնցու-
ցին, ոմանք կեանքերնին։

Պռաավալհօն դատաստաններու մէջ իր ա-

ւած մարդիկները դրաւ, որոնք կուրօրէն իր ըսածը կընէին, թէեւ անիրաւ ըլլար ։ Քննութեան ատեան մը կար՝ որուն դատաւոր թագաւորին եղբայրն էր, քառավալհօն վերցուց անիկայ, իր եղբայրը հոն դրաւ, և իրեն ազգականները ։ ուրիշ պաշտօններու վրայ ալ իրեն մարդիկներէն հանեց, ինչպէս դեսպաններ ալ իր մարդիկները կընէր, անանկով թագաւորութեան ամէն բանը չորս դին իրեն ձեռքին տակն էր առած ։ Իրեն մենծ ուժը եղաւ մէկ զարհուրելի ատեան մը որ ինքը հնարեց անուն դնելով Սղաւխառութեան ատեան, աս ատեանին վճռովը ով որ ուզէր կըկորսէր կըպատժէր առանց քննելու ։ Աս ատեանին հրամանովը շատ մարդ բռնել տրւաւ, մութ բանտերու մէջ դրաւ, որոնց երկանքը ու լայնքը 5 ոտք էր, որ ետեւէ ետեւ կըշինէին գետնի տակ թաց տեղեր, ուր յուլիանոս ըսուած տեղը՝ և ուրիշ տեղեր, ուր մնացին ինչպէս յովսէփ թագաւորին մահը ։ Ուրիշ երկու հազար հոգիէն ալ աւելի երեսնին դիմակ ( մասխարա ) անցուցած անանկ ափրիկէին ու պրասիլու բերդերը խրկեցին ։ Ինչ ըսենք, ինչպէս թագաւորին եղբայրները աս մարդէն քառավալհօէն վախ կըքաշէին ։

Ասանկով մէկ ոչինչ ծիծաղական դիպուած մը՝ կամ շինծու սուտ մը՝ թէ թագաւորը կուզեն մեռցընել, բերան զարհուրելի դիպուածներ մարդիկ սպաննելու . կամ թէ յայտնի ըսենք, մէկ մարդու մը վրէժխնդ-

գրութեն նախանձու կերպը, ընկերակ Հոգեւոած Հաղորդաւոր մարդու:

## Փօրթուգալը աքսորւելը ու Փօրթուգալի ԳԼԻ եղած Ճիզվիթներու Հեռացուելը:

## 1759:

Երբոր Թագաւորէն Հրաման եղաւ որ վարի աշխարհ Ամերիկա եղած Ճիզվիթներուն արգելվի քարոզչութիւնը, ու խոստովանութիւնը, ինչպէս որ վերը զուրցեցինք, ան ատենը քարտինալը Հրամեց պօղուլլիօն եպիսկոպոսին՝ որ բարա ու մարանիօնի եղած Ճիզվիթներուն այցելութիւն երթայ: Ասիկայ խիստ բարեկամ ըլլալով քառավալՀօին՝ գնաց բարա, ամմէն Ճիզվիթները արգելեց քարոզելէն ու խոստովանութիւն լսելէն, մարանիօնի եպիսկոպոսինալ յանձնեց որ իր թեմին մէջն ալ անանկ ընէ, բայց որովհետեւ անիկայ խղճմտանքը ըրաւ չուզեց՚ի գործ դնել, ինքը անձամբ գնաց արգելեց Ճիզվիթները, հրչակեց ալ որ՝ Ճիզվիթները սուտ վարդապետութիւն սերմանող են, թշնամի են Թագաւորին ու Թագաւորութե: Իսկ պրասիլլին արքեպիսկոպոսը պօղելլիօ մադդօս անունով անձամբ գնաց այցելութիւն ընելու Ճիզվիթներուն՝, և ինչպէս իր պարտքն էր՝ քննեց ամմէն գրքերնին, թղթերնին, տեֆթէրնին, և չիգտնալով մէկ շօշօրդ մը ան զրպարտութիւններուն՝ որ կըհրչակէին, արդարա-

ցուց անանք, ու չուզեց ամենեւին արգելել։ Պ. Առուտինալը լսելով մէկ յանդիմանական թուղթ մը գրեց ասոր, ծաղր ընելով թէ միայն քու թեմիդ մէջի Ճիզվիթներն ասչափ անմեղ գտար, որոնք ուրիշները ամէն տեղ յանցաւոր կըգտնային։

Իսկ երբոր Թագաւորին զարնըվելովը բազմութիւն բանտը դրվեցան, ան ատենը Քառավալհօն ամէն Ճիզվիթներուն վանքը զինուորներով պաշարել տըվաւ, ու ամէն հաղորդակցութիւն դրսիններուն հետ արգելեց. Մօրէիրա Ճիզվիթը որ Թագաւորին խոստովանահայրն էր՝ ու Քառավալհօն առաջ բերողը մեծութեան հասցընողը, ինչպէս որ վերը պատմեցինք, առաջ խոստովանահայրութենէ հանեց, ետքը մէկ խուրունկ բանտի մը մէջ դնել տըվաւ, ինչու որ Ճիզվիթները ջատագովերեր Թագաւորին առջին. ատով Մօրէիրան իր հանած չրաղէն իր պատիժը գտաւ։ Մօրէիրային հետ բռնել տըվաւ նաև Ճիզվիթներուն գաւառապետը, ընդհանուր գործակալը, պրասիլու իշխանուհւոյն խոստովանահայրը, օլիվէյրա, և անուանի քարոզիչը Մալակրիտան, ուրիշներ ալ 10 հոգի բռնեցին. 1759. յունվ. 11. ան դատաստանին բանտը դրին, որուն գլխաւորը ինքը Քառավալհօն էր։

Ասիկայ շատ կուզէր որ՝ մէկալ աշխարհականներուն հետ Ճիզվիթներն ալ մեռցընէ, բայց յովսէփ Թագաւորը վախցաւ հաւանութիւն տալու. առանց մէկ հրաման մը

փախելու․ որքաղաքն․ պատըէն, ուստի հարկ եղաւ հաստատ գրելու․ բայց քառավայհն կաս-կածելով հրաման առնելու մէջ, և յուզելով սպասել, քիչ մը անցնելէն ետև ուրիշ Թուղթ մըն ալ գրել տըւաւ Թագաւորին բերնէն սաստկ։ « Միւսս գրեր եմ իմ եր-
» կիրներէս դուրս քշել Ճիզվիթները, քան
» որուն իրենց առջի կացութիւնէն փոխ-
» ւերեն․ վարդապետութիւն մնալ անոնց
» որ խիստ վտանգաւոր է հանդարտութեան Թա-
» գաւորութեան »։ Այս գրելէն ետև ՚ի գործ դնել սկսաւ իր կամքը, ապսպրեց որ ամենաջանքով բերեն Ճիզվիթները, ու տան-ջանքով պահեն բանտին մէջը․ անանկով մնաց բանտերու մէջ դըրին ասոնք անօթի ծարաւ․ իսկ ամերիկայէն՝ ափրիկէէն՝ ա-սիայէն բերելու ատենը՝ ամէն անգթութի բանեցուցին Ճիզվիթներուն վրայ, տաք ատեն արևու մէջ Ճամփայ ընել կուտային կըքաղցընէին․ հիւանդներուն ալ ինչ որ պէտ-քը կըլլար հոգևոր մարմնաւոր պիտոյք՝ չէին իտար, այլ մանաւանդ նախատինք ու քամահրանք կուտային, վախցընելու հա-մար իժիր կըսպառնային որ ափրիկէին ծովեզերքը ձեզ կըձգենք, ուր անապատ տեղերը՝ ազորեան անքեր կղզիներու մէջ կըխեղդունք։ Ժողովուրդը շատ կըխղճար կուլար ասոնց քաշածներուն վրայ, բայց ով որ Ճիզվիթներուն մէկ գութ մը կըցը-ցընէր՝ Թշնամի կըլլար քառավայհին․ պետ-րոս Թագաւորազուն իշխանը ասոնց ողոր-մութիւն կըխնդրէր, բայց շատ հեղ կարգե-

ընելին կամ կառնելին ․ Փորթուկալի շատ եպիսկոպոսները Քառավալհօին հետեւելով Ճիզվիթներուն դէմ թղթեր հանեցին, որոնց մէջը անանկ եպիսկոպոսներու կային, որ՝ առաջ Ճիզվիթներուն վրայ շատ վստահութիւն ունէին ; աս եղաւ աւելի վիշտ Ճիզվիթներուն ։

Իրաւ է որ ամերիկայի մէջ անանկ եպիսկոպոսներու եղան՝ որ յայտնի ջատագովեցին Ճիզվիթներուն անմեղութիւնը, բայց ամէնքն ալ պատժըվեցան ․ Քառավալհօն պալատին արքեպիսկոպոսը վար ձգեց աթոռէն, իսկ ամերիկային ան տեղը՝ որ կըսվի պայա կամ պարոյը ամենայն ՚սրց՝ Քառավալհօն մարդիկ խրկեց որ Ճիզվիթները անկէց վերցընեն ջնջեն, ապսպրելով որ հաւտացընեն ամենուն որ թէ Ճիզվիթներնալ միաբանած էին թագաւորը մեռցընելու ․ ասոնց մէկը յանձն չառաւ աս անիրաւութիւնը ընելու ․ Ճշմարտութիւնը ուզելով ջատագովել, Ճիզվիթներուն ցըցուց Քառավալհօին գրած թուղթը ․ աս բանիս համար Քառավալհօն ՚մը կատարինէ կղզին քշեց անիկայ, ու հոն բերդը դնել տըվաւ ։

Ասանք լսելով եւրոպային եպիսկոպոսները, 180 արքեպիսկոպոս ու եպիսկոպոս, նաեւ ալ աւելի, շատ քառտինալներ զանազան ազգերէն, ու իրեք եկեղեցական կայսրընտիրք՝ աղաչանք գրեցին ժգ̃ կղեմէս պապին՝ որ Ճիզվիթներուն պաշտպան կենայ ։ Անիկայալ պաշտպանել սկսաւ, բայց դատը

(տօմարն) իր վրայ դարձաւ, վասն զի Քառ-վալհօն անանկ բաներ ըրած որ՝ յայտնի ցուցուց թէ իր միտքը ամէն եկեղեցականաց դէմ է, և մանաւանդ Հռոմայու դէմ, ինչպէս որ վարը ուզենք պատմելու։ Վեր-ջապէս 1759. սեպտ. 3. (1) գիշերանց ինք-նին բերել տուաւ ամէն Ճիզվիթ ինչչափ որ կային Փօրթուկալու երկրին մէջ, հան տօպրա վենետիկի նաւերու մէջ դնելով ամէնն ալ, չիվիտա վէքեա խրկեցին, որ Հռոմայու նաւահանգիստն է, անոնց հո-գալու անոնց ուտելը ու ապրուստը։

Հռոմայու հետ եղած Փօրթուգալին խռովութիւնը.

1760։

Փօրթուկալին վեզիրը Քառվալհօն Պօմ-պալ ամէն եկեղեցականաց դէմ ըլլալով, միշտ առիթ (մահանայ) կըփնտռէր որ Հռոմայէն կտրուի, չէր ուզեր որ իրմէ զատ մէկը իշխէ, աշխարհական ըլլայ՝ եկեղեցա-կան ըլլայ. անոր համար կերպեր կը բանեցը-նէր, մենծ մենծ խնդիրքներ կընէր Հռոմայ-էն՝ որ անիկայ չէ ըսէ, չէ ըսելովը՝ առիթ գտնայ բոլորովին կտրուելու, բայց սրբա-զան պապին խոհեմութիւնը ու համբերութիւնը առիթ մը չըտրուաւ. ան ատենը ինքը Քառ-վալհօն ասանկ առիթ մը հնարեց Հռոմայ-

(1) Ոմանք կըդնեն սեպտեմ. 13.

ուն հետ ամփոփուելու․ Պետրոս Թագաւո-
րագրունը 1760, յունիսի 6. (1) Հարմնիք
ըրավ, պըրատիլու իշխանութենէն առնավ մա-
ըխամ Ֆրանչեսքա անունով, որ առջինեկ
դուստր էր Թագաւորին, ու ժառանգ Թա-
գաւորութե. աս Հարմնիքս քառավալհօն ա-
ռաջուցմէ Թղթով իմացուց դեսպաններուն
(էլ չինէրուն) մենծի պզտիկի՝ հրաւիրելով,
միայն հռոմայու Նուիրակին չիմացուց, որ
սրբազան պապին դեսպանն է ։ Նուիրակը՝
որ էր քառատինալ աքչիայօլին՝ գնաց քառ-
վալհօին քաղաքավարութեամբ մը գանգ-
տեցաւ աս բանիս վրայօք, անիկայ պատաս-
խան տըվավ որ՝ Թուղթ խրկել մէկալ դես-
պաններուն պէտք էր՝ որ իմանան իրենց
կարգը, իրենց ընելիքը, որը առաջ պիտոր
մտնայ, որը ետքը, բայց հռոմայուն Նուի-
րակը յատուկ պատուաւոր անձ ըլլալով,
չէր հարկ կարգ գնել անոր ․ Բայց գոնէ
(ըսավ Նուիրակը) ասանկ մեծ հարմնիք
ըլլալուն համար՝ պէտքը չէ՞ր որ ինծիալ
մէկ Թուղթ մը գար իմացընելու ։ Աս խօս-
քիս պատասխան չուներնալով տալու քառ-
վալհօն ըսաւ, ես ատոնք կըհասկըցընեմ
Թագաւորին, իր միտքը ինչ էնէ կըծանու-
ցանեմ․ բայց խաբեց՝ բան մը չիծանուց ։
Նուիրակը՝ որ շատ հեղ քաշէրէր քառավալ-
հօին անարգանքները, ու խոհեմութեամբ
սուտ խուլ ըլլալով ձայն չէր հանած, աս

(1) Ոմանք կըդնեն յուլիսի 6 ։

մարդիկ մէկ միտս մը հասցընեն իրեն, ա-
սանկ ըրինք ։

Սրբազան պապը լսածին պէս՝ աս քանիս պատմութիւնը ամմէն դեսպաններուն գրեց բաժնեց, Թղթերունաւ գանկատ գրեց . երբոր փորթուկալին դեսպանը Սրմատա-տնուն իրեն ներկայանալ ուզեց՝ ներս չառաւ չընդունեց . դեսպաննալ տաքնալով պատերազմ հրատարակեց փորթուկալին ու հռոմայու մէջ, ամմէն փորթուկալցող որ հռոմայու հողին մէջը կըգտնըվէին, ապսպրեց որ ելլան երթան . ամմէն դեսպաններուն մէկ յայտարար թուղթ մը տըվաւ, որով արդարացընել կըջանար փորթուկալին տէրութիւնը, ինքնալ սենա քաղաքը գնաց քաշվեցաւ, երկու տէրութեանց մէջ հաղորդակցութիւնը կտրըվեցաւ ։

Ան ատենը հռոմ կըկառավարէր Տոռուբ-ճիանի քառտինալը՝ որ դիւանադպիր էր տէրութեան, ու ճարտարամիտ, շատգէտ, կառավարելու յարմար մարդ, Թէպէտ հռոմայու պատուոյն խիստ նախանձախնդիր ըլլալով տէրուէնց դեսպանները չէին ուզէր ասոր հետ խօրաթելու ան ատենվան գործառնութեանց (մասլահաթներու) վրայ, հիմաալ քառվալյօն կամ բօմպալը մէկէն պիտոր թողվէր աս դօռուբճիանին, բայց որովհետեւ փորթուկալցիք իր մոգովը չէին, անոր համար մէկ շըջաբերական թուղթ մը հանեց փորթուկալին տէրութեանը դիւացէն զինքը արդարացընելու համար ասանկ ըսելով ։ " Հռոմայուն նուիրակը մէկ ծա-

„ ծուկ ապստամբական ու յանդգնական
„ ճամփայ մը բռներէր, պինտ ետքը հա-
„ սարակաց ուրախութեան դէմ իր դառ-
„ պասը գոց պահէց առանց լուսաւորե-
„ լու, անանկ որ ժողովուրդը շատ ա-
„ նարգանք պիտոր ընէր, թէ որ մեր տէ-
„ րութիւնը շուտով չիհասնէր չիխալըսցը-
„ նէր „: Նոյն թղթին մէջը կըգրէր նաեւ Ճիզ-
վիթները քշելուն համար, թէ ինչպէս իրա-
ւունք ունէր փօրթուկալին տէրութիւնը
անոնք քշելու, գանկատելով որ " Թէպէտ
„ փօրթուկալին թագաւորը իր որդիական
„ պարտքը պահելու համար՝ գրեց սրբազան
„ պապին Ճիզվիթներուն քշվելու հարկա-
„ ւորութիւնը, որովհետեւ հպատակնե-
„ րէն շատը կապստամբեցընէին, եւ թա-
„ գաւորին դէմ իբր թէ կըպատերազմէին
„ գաղտուկ ու յայտնի, բայց Հռոմ աս
„ գանկատներուն ականջ կախելուն տեղը՝
„ մանաւանդ թէ զանոնք պատժելուն տե-
„ ղը՝ ցաւակցելով թըքրիմը վրայ՝ որ կուզէ-
„ ին մեռցընելու, պատասխան գրեց մեզի
„ փօրթուկալի տէրութենը, թէ մեր չարա-
„ գործ մարդիկները կըհալածէին մէկ միա-
„ բանութի մը Ճիզվիթի կրօնաւորներու,
„ որ պատուոյ արժանի էին՝ ու եկեղեցւոյ
„ արդիւնաւոր, որոնց աշխատանքը աս է
„ որ՝ բարեպաշտութիւն, խոնարհութիւն,
„ ու եղբայրսիրութիւն սորվեցընեն ժողո-
„ վրդեան: Պօռռուիձիանի քառոտնեալին
„ միտքնալ անչափ պաշարվերեր որ՝ մեր
„ փօրթուկալին վճիռը Ճիզվիթներուն

,, դէմ դըրըվածը՝ արգելել տըվաւ Հռոմայ-
,, ու երկըրին մէջը կարդալու, իբր թէ
,, բարբարոս երկրի մը մէջ էր գրված ; ուր
,, որ չեն ճանչնար արդարութիւն, կամ
,, թէ անխորհուրդ ( քէֆիրնէ ) շինված էր
,, և ոչ կանոնով ։ Հռոմ սաանկ ընելովը՝
,, փօրթուկալի թէ՞րրին պատուոյն դպաւ,
,, անանկ ցըցընելով աշխարհքին՝ որ թագա-
,, ւորը իբր թէ մէկ անօրէն բռնաւոր մը-
,, նէ ,, ։

Աս խօսքերս երկան բարակ գրված է հոն, որուն Հռոմայ երկընկեկ պատասխան տը-վաւ սաանկ ։ " Իմ Նուիրակս ունէր իրա-
,, ւունք քաշված կենալ, և յայտնի ուրա-
,, խութի մը չիցըցընել հարսնիքին համար,
,, որովհետև փօրթուկալու դիւանադպիրը
,, թղթով ծանուցերէր թագաւորին միտքը
,, դեսպաններու, նաև պզտիկ պաշտօնա-
,, տէրներու, և միայն Հռոմայու Նուիրակին
,, չէր ծանուցած, ուզելով իրեն անարգանք
,, մը հասցընել, ինչպէս շատ առաջուն ու-
,, րիշ բաներու մէջ քամահրանք կըցըցընէր,
,, թէպէտ ինքը Նուիրակը խաղաղութիւն
,, պահելու համար. խոհեմութ՞ մը չիմանալ
,, կերևցընէր. աս բանիս վրայ Նուիրակը
,, իր գանկատը ըրաւ, բայց մէկ պատաս-
,, խան մը չառաւ ։ Ասոր դէմ հռոմեղած
,, փօրթուկալին դեսպանը անանկ կերպով
,, մը վարվեցաւ՝ որ շատկէ չիտակ ծանր ա-
,, նարգանք տըվաւ քահանայապետին, ը-
,, սելով որ՝ ան չեմ ուզէր քառտինալ դօռ-
,, ուիճիանիին հետ բանի մը վըրայ խօսիլ,

„ բան մը տեսնալ ։ Ասիկայ չլսուած բան
„ է, որ մէկ օտար դեսպան մը համարձա-
„ կի՝ ետ կենայ՝ քաշվի գործառնութիւն
„ ( մասլահաթ ) տեսնալու մէկ իշխանի մը
„ հետ՝ որ տէրութիւնը դրած է զինքը ան
„ բանին համար, իսկ ինքը միայն դեսպան
„ գացած է ան տէրութեանը քով ։ Անոր
„ անարգանքմընալ հասուց փորթուկալին
„ դեսպանը երբոր չուզեց Ճիզվիթներուն
„ վրայ եղած դիպուածին համար մէկ պատ-
„ ճառ մը լսելու, որոնք բռնութեամբ հա-
„ մայուն ծովեզերքը հանեցին առանց ի-
„ մաց տալու առաջուցմէ. չուզեցաւ մտա-
„ ծել մէկ խօսք մը կապելու, որ ճար մը
„ գտնըվի ժողվելու, կերակրելու ան խեղճ
„ Ճիզվիթները, որ զրպարտըված էին „ ։

Փորթուկալը Ճիզվիթներուն ապրանքը կառնէ,
Մալակրիտա Ճիզվիթը կերէ.

1761 ։

Բաւվալհօն Ճիզվիթները փորթուկա-
լէն դուրս քշելէն ետև՝ կուզէր իրենց ապ-
րանքնալ գրաւել ( զափթ ընել ), բայց
թէ որ մէկէնիմէկ առնըվէր՝ աշխարհ ամ-
մէն անանկ պիտոր զուրցէր որ՝ Ճիզվիթնե-
րը հարստութեան համար վերուցին, անանկ
կով փորթուկալի տէրութիւնը զինքը ար-
դարացընելու համար՝ փորթուկալցի ու-
դուրսի մեծաքանիներու հարցուց. ասոր հա-
մար լիզպոն քաղաքը չորս Սօռպօնեան

ա̃ծաբան բերել տըվին ֆրանսայէն, չորս ա̃ծաբանալ ծպանիայէն Սալամանք համալսարանէն բերին։ Ու թէպէտ չիգիտցըվիր որ ինչ զուրցեցին աս ա̃ծաբաններըը, բայց 1761. փետրվ. 20, վճիռ ելավ թագաւորական, անով գրաւեցին առին Ճիզվիթներուն ամմէն ապրանքը, մէջը ապըսպըրելով որ՝ հոգեւոր տեղվանքներուն կապվին ան ապրանքները։ Աս եղավ ահա օրինակ, որ ուրիշ տէրութիւններալ համարձակութիւն առին, Ճիզվիթները վերցընել սկըսան, ինչպէս որ վարը պիտոր պատմենք։

Գրանք բանտը եղած Ճիզվիթներուն վըրայ, ասոնք իրեք տարվընե վեր բանտի մէջ մնացած էին, թըր համախոհ կամակից թագաւորը սպաննելու, բայց ասչափ ատենի մէջ մէկ քննութի՞ մը մէկ հարցմունք մը չըրին ասոնց վր̃, հիմա բանը դարձաւ ընկաւ գաբրիէլ մալակըիտա Ճիզվիթին վր̃, որ 76 տարվան ծեր էր, ասիկայ բանտէն հանեցին, և առանց մէկ հարցմունք մը մէկ խօրաթա մը ընելու ան արքայասպան յանցանքին համար՝ որուն համար բանտը գըրերէին, տարին [illegible] մատնեցին իբրև սուտ մարգարէ ու կեղծաւոր, և ոչ թէ արքայասպան։ Աս ատեանին գլխաւորը ը̃հանուր քննիչը՝ Թէ̃րին եղբայրն էր, ասիկայ իր առաջնիկայներով քննեց հրատարակեց որ մալակըիտան անմեղ էր։ Նո ատենը քաւալը հօննոր ատեան մը սահմանեց, որուն գլխաւորը քաւալհօրին ազգականն էր, ասոնքալ մէկ դի թողուցին քննելու ան յանցանքը՝

որ Թագաւորը սպաննելու համար էր, ուրիշ մէկ նոր դատ (տաւա) մը բացին երկու գրքին վրայ, որ կըսէին թէ մալակռիտան բանտին մէջը շարադրեր էր, մէկը սր̃ Աննային վարքը, մէկալը Նեռին պատմութիւնը, աս գրքերուն համար դատապարտեցին անիկայ իբրև Մոլորեցուցիչ, Գայթակղեցուցիչ, Կեղծաւոր, Սերմանօղ ամբարշտերու վ̃րդպտութեն, [illegible], Հերետիկոսապետ: Ասանկով աշխարհական դատաւորներուն ձեռքը մատնեցին, անոնք ալ վճռեցին երելու, միայն թէ իրեն իբր մէկ գթութիւն մը ընելու համար՝ առաջ խեղդել հրամեցին. ասանկով 1761. սեպտ. 20. հրապարակաւ երեցին մալակռիտան:

Աս եղաւ մէկ գործ մը աշխարհիս առջին գայթակղական ու ծիծաղական, վասն զի առաջ բռնել իբրև Թագաւորը սպաննօղ, ետքը մոռցընել իբրև սուտ մարգարէ, կըցըցընէ որ մէկ սուտութիւն մը՝ մէկ ոխակալութեն գործ մը կար մէջը, մանաւանդ որ գիտէին թէ ինչ արդիւնաւոր անձ է աս մալակռիտան, որ իր բարի նախանձայուզութեն համար՝ մեծաւորէն խնդրելով քարոզիչ գացեր էր վարի աշխարհ, մարանիօն ու պրասիլ. 40 տարիի չափ հոն քարոզչութեն մէջ աշխատելով, աղէկութիւններ ընելով, շատ յարգելի մարդ մընէր եղեր, ու սր̃ի անուն ունէր: Ասիկայ հոն կըմնար, աս փորձանքները չէր իգար իրեն, թէ որ մարիամ աննա փորթուկալի Թագուհին լիզպոն կանչած չըլլար կրօնքի բաները ե-

րեն յանձնելու համար , որուն վրայ է յու-
հաննէս Թագաւորնալ մեծ վարկում ու-
նէր , անոր ետեւէն հիմնակվան յովսէփ Թա-
գաւորնալ այնչափ համարում ունէր , որ
երբոր 1754 երկրորդ անգամ մալակաւիտան
դարձաւ եկավ ամերիկայէն , յովսէփ Թա-
գաւորը անձամբ առջին գնաց , անանկ ընդ-
ունեցաւ զինքը ։ Անոր համար մէկը ասանկ
կըգրէ ։ " Շատ հեշտ ( խօլայ ) է ցըցը-
" նել որ՝ ծիգվիլթնէրը մասնակից ու հա-
" մախոհ չէին Թագաւորը սպաննելու , ինչ-
" պէս որ շատ հեշտ է ցըցընել թէ ամբաս-
" տանութիւնէրը ստութեամբ եղած էին ,
" նենգութիւն ու ոլորակնէր բանեցընե-
" լավ . քովս անանկ յիշատակարաննէր ու-
" նիմ , որ աս բանս յայտնի կըցըցընեն ։
" Այս ան իշխաննէրուն՝ որ ասանկ մեծ
" բաներու մէջ անհոգ կըլլան անձամբ մըտ-
" նալ , անձամբ քննել " ։ Մէկ ջատագո-
վութիւն մը տպվեցաւ 1782 , ուր յայտնի
կըցըցընէ մալակաւիտային անմեղութիւ-
նը (1) ։

Մնաց որ՝ փորթուկալը թէպէտ անցած
տարի հռոմայու հետ կտրըվածութիւն մը
ունեցաւ , ինչպէս որ վերը պատմեցինք ,
բայց աս տարի 1761 որովհետեւ փորթուկա-
լի Թագաւորին աղջկանը՝ պրասիլու իշխա-

---

(1) Ոմանք կըգրեն որ աս տարվանս մէջ 1761 , նաեւ երկու վերոյիշեալ ծիգվիլթնէրուն գլխընէրը կտրե-ցին , որ են Մաթօս , ու Աղէքսանդր , իբր թէ խորհուրդ էին ըրված Թագաւորը սպաննելու ։

նուհւոյն մանչ զաւակ մը եղաւ՝ որ ըսուե-ցաւ Պետրոս իշխան, աս պատճառով փոր-թուկալին թագաւորը՝ աննուիրակէն ձեռ-քովը որ Նաբօլի կընստէր, մէկ թուղթ մը խրկեց սրբազան պապին շատ յարգութք ու որդիական հնազանդութք, իրեն օրհ-նութիւնը խնդրելով նորածին մանկանը համար, սրբազան պապն ալ ան թղթին պա-տասխանը գրեց։

Գ. Աշոբոլոյն ըրած նենգաղօգութեան գործքերը Նա-բօլին մէջ։

Նաբօլիին թագաւորը կարոլոս Է. օրէօր շէնցընելու հետ եղաւ Նաբօլին, անանկ որ քանի որ թագաւորեց Նաբօլի 25 տարւան մէջ, բոլորովին փոխեց Նաբօլին, իբր թէ մէկ նոր թագաւորութիւն մը ըրաւ, իրեն առջի պայծառութիւնը դարձընելով։ Ա-ռաջ երկիրներուն (մալիքեաններուն) տէր-վրտանքը շատ բռնակալութի կընէին գե-ղացոց վրայ, դատաւոր եղողները արդա-րութիւն չէին ըներ, ասոնք շտկեց. աղէկ օրէնքներ դնելով նորէն դատաստանագիրք շինեց, ծովու վրայ նաւեր ձգեց, ծովէն ցամաքէն սկսաւ առուտուր ըներ տալ. 400 տարիէն աւելի էր որ՝ Նաբօլիի դրօշակը (պայրախը) անճանաչ էր եղած, կարոլո-սին ատենը Նաբօլիին նաւերը՝ մէկ դիէն սկսան ինչվան Ստամպօլ երթալ, մէկալ դիացէն ինչվան մանիքա նեղուցը, որ ինկէ-

լեզւին առջին է. ասանկ միայն Բ. Ֆետերի-քոսին ու Անձեւան Ռօպերդոսին ատենը ե-ղած ունէր:

Շատ ալ երեւելի շէնքեր շինեց. Քաղէուղա քաղաք մը կայ՝ որ կալուած (մալքեանէ) էր եղած Հռոմ նստող Կաէդանի անուն իշխաններուն, Կարօլոս ասոնց ուրիշ կալ-ուածներ տալով (որոնց մէկնալ Սերմոնղա կըսվէր), նաեւ ըստակ տալով, Քաղէուղան անոնցմէ առաւ, մէջը շատ շինութիւններ շինեց անուանի Ճարտարապետին ձեռքովը՝ որ կըսվի Լուիճի Վանվիդելլի ասպետ. մէկ մեծ հօգետուն մը շինեց, հոն նստեցուց աղքատները ու բարբարական պտըտօղնե-րը, նոր Թատրոններ շինել տըվաւ, մեծա-գործ շինուածներ սրահներով՝ հին հռօ-մէական շէնքերու նման: Ամէնէն աւելի արդիւնաւոր գործ հնատիրաց առջին ան եղաւ որ՝ հնուցմէ իրեք քաղաք կային, ա-նուննին Էրքօլանօ, Բօմբէյա, ու Ստա-պիա, որ Վեսուվին կրակ ցաթկեցընօղ լեռան մոխիրին տակը Թաղված մնացեր էին Տիտօս կայսեր ատենէն իբր 71 Թուական-նին քնի; հիմա ան 1700 տարվընէ վեր Թաղված քաղքընէրը բանալ հանել տալով, իրենց աւերակները աղէկ կարգով մը շա-րել տըվաւ, ու Թագաւորական առատ վարձքով գիրքերու մէջ անցընել տըվաւ. որոնց համար շատ բազմութիւն դըրսեցինե-րու կուգան տեսնալու, բաց 'ի շէնքերէն տեսնալով կերպ կերպ ամաններ, բարչեր, եւն, կըզարմանան հին արուեստաւորներուն

վարպետութեանը վրայ, թէ ինչ աղվոր ձև (հիւսիւն, պիչիմ) գիտեն եղեր, ինչ քանդակներ (օյմաներ), և օրինակ կառնեն: Աս աղէկ գործքերէն զատ՝ կարօլոս զանազան արուեստներ ու երկրագործութիւնը ծաղկեցուց, գիտութիւնները շատցուց, համալսարանը իբր թէ նորէն ոտքի վրայ կեցուց: Անէկ հանդիսարան մը շինեց լեցուն հին բաներով՝ վերագրեալ աւերակներէն հանած, ուրիշ մէկ հանդիսարան մընալ՝ հին ըստակներու և վարպետաքան պատկերներու, որ Փարնեզեան ցեղէն ժառանգութիւն էր մնացած: Անէկ ժողովուրդ մը թող չիբաղձայ մեծութէ, այլ մեծագործ իշխանի, սաանկ իշխանը մինակ մէկ հոգի ամմէն մեծութիւն կըբերէ ան ժողովուրդին վրայ:

Վեսուպ, որ կրակ հանող լեռ է Նաբօլի քաղքին մօտիկ, 1757 խիստ բռնկեցաւ, շատ վնաս տըվավ, կարօլոս թագաւորը խեղճ վնաս քաշողներուն հոգ տարավ օգնութիւն հասնելով ամմէնուն:

## Սպանիայի թագաւորի Փերտինանտոսի ըրածները:

1752—1759:

Սպանիային թագաւորը Զ Փերտինանտոս՝ ջանք ունենալով իր երկրին եկամուտն ու վաճառականութիւնը ծաղկեցընելու, զանազան տէրութեանց հետ զանազան դաշնադրութիւններ ըրավ: Ասիէնդօ տեղը դաշ-

նադրութիւն ըրավ Լինկոլնշիրին հետ ափրի-կէին սև գերիները ծախու առնելու հա-մար. առանց անոնց չէին կրնար բանվիլ սպանիայէին հանքերը ( մատէնները ,) ամե-րիկայի մէջ. աս դաշնադրութիւս շատ դժա-րութի գտաւ: Նաև 1752 նորէն մէկ դաշ-նադրութիւն մը եղավ սպանիայի, աւստ-րիայի այսինքն, նեմցէի ու սառտէնեայի մէջ, անով հաստատեցին իրենց ըրած առջի դաշնադրութիւնին, ու ինչ երկիր որ ունէին իտալիայի մէջ, իրարու հետ խօսք կապեցին պաշտպանելու: Այն տարվանս մէջ յուն-վարի, զարհուրելի փոթորիկ մը եղավ, որ իրեք օր քշեց. քատիշէ նաւահանգստին մէջը 50 վաճառականնաւերէն աւելի կոր-սըվեցան զանազան դրօշակներով ( պօր-թախներով ), թող տուր պզտիկ նաւակնե-րը, հազար հոգիէն աւելի մեռան:

Աս տարվանս մէջ մեռաւ բիաչէնցաքաղա-քը քառտինալ Ալպէռօնին, 88 տարվան. իրեն ընդհանուր ժառանգ դրավ բիաչէն-ցա եղած դպրոցերեցը ( սեմինառիօն ), որ ինքը հիմներեր, մէկ միլիոն հռոմայի ու-ալի կամ ըսքուտ թողլով, աւելցածը թո-ղուց բիաչէնցայի մէջ եղած աղքատներու: Աս անունի մարդուս ինչպէս ըլլալը, տես աս դարուս եպքերը, ուր պիտոր դը-նենք երևելի մարդիկները կենցաղակրթու-թեան մէջ:

Ռաւաքքաս տեղը մէկ խռովութիւն մը եղավ, մէջինները կըպահանջէին որ՝ վեր-ջացընեն մէկ բաժանորդութիւն ( օռթա-

խութիւն ) մը Վուխորուպօս ըսված , որ շատ արգելք կուտար իրենց առուտուրին ․ աս խառովութիւնք քիչ մը ատեն յոգնեցուց սպանիային մեծերը , ետքը ինքիրեն վեր- ջացաւ ։

Սպանիայի ու փորթուկալի մէջ մէկ դաշ- նադրութիւն մը եղած կար , որուն գլխա- ւոր խնդիրքը աս էր որ՝ փորթուկալցիք սպանիացոց տան իրենց մէկ երկիրը , որ կըսվէր Պաղթականի խորհրդոյ , և իրենց առնեն պարակվային մէկ մասը՝ ուր որ ճիզ- վիթները քարոզութիւն ըրած էին՝ ինչպէս որ վերը պատմեցինք ․ աս փոխփոխելը չէ- ին ուզեր փորթուկալնները՝ բայց մէջը ոս- կիի հանք կայ կարծելովըրին , հիմա իրենց ձեռքը առնելէն ետև՝ տեսնալով որ սուտ է եղեր ան ոսկի ըրած հանքերնին , ուզե- ցին ետ տալ , ասկեց մէջերնին շատ երկան հակառակութիւն ծագեցաւ , որ ետքը Գ կարոլոս թագաւորին ատենը լմնցաւ նոր դաշնադրութենով ։ Անկլիզի հետալ շատ տարի վիճմունք ունեցան սպանիացիք ա- մերիկայի առուտուրի համար , ըստ որում սպանիացիք արգելված ապրանքներ կը- փախցընէին , նաև սպանիացոց պահապան- ներուն դէմ կըդնէին , բայց ինկլիզները որովհետև խիստ կըշահէին՝ ետ չիկեցան ։

Թագաւորը Ֆերտինանտոս մէկ անուանի մարդ մը ունէր՝ որ կըսվէր Էնսենատա մառքէզ , ասիկայ վեզիր էր դրած պտղի վր , ծովու վր , եկամուտներու և դատաս- տաններու վրայ , աս բաներս ամմէնն ալ

շտկեց եվելոք ծաղկեցուց աս մարդս, անանկ որ սպանիան ինկիլիզի հաւասարցընել հասցուց, բայց ասանկ արդիւնաւոր մարդը՝ ու ֆերտինանտոս թագաւորին սիրելի բարեկամը՝ յանկարծ ամէն իշխանութիւնը ձեռքէն առին, զինքնալ կռանատա բանտի մէջ դրին։ Շտկելը թագաւորական շահը՝ կրդպչի մէկ քանի մամնաւորաց շահուն, անոր համար խելացի գործունեայ մը՝ որ թագաւորութեն շահուն համար կաշխատի, աւելի կըլլայ ան ազգին՝ որուն մէջը ծաւալված է անձնասիրութիւնը։ Ասանկ ըլլալը աս մարդուս անկէցալ յայտնի եղավ որ՝ քննութիւնը ընելէն ետև՝ վրան մէկ յանցանք մը չգտան. անոր համար ֆերտինանտոս իրեն ազատութին տըվավ ու մեծկակ եկամուտ մը, շատ բաներու մէջավ շատ հեղ իրեն հետ կըխորհրդակցեր։

Սպանիայի թագաւորին տղան տօն լուիզ քարտինալը, որ դօլէտօի արքեպիսկոպոս ու սիվիլիայի եպիսկոպոս պիտոր ըլլար, տարիքը առած ըլլալով խնդրեց հռոմայէն հրաժարիլ քարտինալութէ ու եպիսկոպոսութէ, բայց ուզեց որ՝ ան աթոռներուն եկամուտներէն 150 հազար ըսկութ տարին իրեն առնէ։ Աս եկեղեցական եկամուտը թէպէտ դէմ բան էր ուրիշ տեղի կապել, բայց մեծ էր որբազան քահանայապետին խոհեմութիւնը, ատեննին պարագայները նայելով ամէն բանին հաւանութիւն տըվավ։

Այս թագաւորս Ֆերտինանտոս Թէ. որ աւելի ողջութիւն ունենար, աւելի աղէկութիւներ պիտոր ընէր. բայց մեղք որ տկարութիւն մը ունեցաւ, ինչ որ իր հայրը ունէր, ինչվան խելքին ալ տկարութիւն կուգար. անանկ որ՝ գիտես թէ ժառանգութէ (սոյով) կուգար աս ցաւս, միայն թէ ուրիշ զաւկըներուն վրայ չեկար աս ցաւս: Իր մեռնելը մօտիկնալու ատեն խելքը վրան գալով, ամմէն հոգիին բաները աղէկ հոգալով, 1759. օգոստ. 10. մեռաւ ջրգողութէ Մատրիտ, կամ ըստ ոմանց Վիչենցա քաղաքին մէջ, 46 տարվան. 13 տարի թագաւորելէն ետև: Թէպէտ իր կառավարելուն խելքը միջակ էր, բայց աղէկ պաշտօնատէրներ ունենալով իր ատենը աւելի աղէկցուց Սպանիայի կառավարութիւնը, քան ինչ որ էր իր հօրը Ե Փիլիպպոսի վերջի տարիները, թէ եկամուտի դիւացէն և թէ ծովային զօրութեն դիւացէն, անով խաղաղութեն մէջ պահեց իր աշխարհը, ան ատենը՝ որ ատենը ամմէն եւրոպա նաև ուրիշ երկիրներ ալեկոծութեն մէջ էին: Անանկ դեմ էր իրեն պատերազմը՝ որ աղեքսանդր կայսեր ըսածը իժիր կըկրկնէր, թէ աղէկ է մինակ տասը քաղաքացիի կեանքը ապրեցընել, քան թէ տասը թագաւորութիւն վաստըկիլ:

Պատերազմելուն տեղը՝ վաճառականութիւնը, արուեստները, ու երկրագործութիւնը ծաղկեցուց, սպանիացիք որ առաջ ուրիշ երկիրներէն բերել կուտային ձեռա

գործները, Ֆերտինանտոսին օրը իրենք ը-
նել սկսան ան ձեռագործները, կարօտ չե-
ղան օտարներու. Ջրանցքներ բանալ սկսան
սպանիայէն զանազան տեղերը, անով ամենէն
բարիք ամենէն տեղ հեշտ (խօլայ) կը խրկէին
աս գլխն ան գլին։ Ասոր շատ սկսած բանե-
րը՝ ետքը իրեն եղբայրը Գ. կարոլոս լմնցուց։
Ֆերտինանտոս հռոմայ նուիրակի ատեա-
նը վերցընել տըվավ, եկեղեցականաց նորա-
գութի տըվավ. բնութիւ հեզ ու հանդարտ
էր, ոչ բարկացող և ոչ խիստ, աւելի Ֆը-
րանսզի աշխուժութիւն ունէր՝ քան թէ
սպանիայի ծանրութիւն. իրեն մեծ զբօ-
սանքն էին որսորդութիւն ու երաժշտու-
թի. հասակը միջակ մանաւանդ թէ կարճ,
երեսը ազնուադէմ, բայց մէկ զաւակ մը
չունենալով՝ իր եղբայրը թագաւոր նըս-
տաւ, որ կըսվէր Գ. կարոլոս սեբաստիա-
նոս, ու նաբօլիի վրայ թագաւոր էր։ Ասոր
համար երբոր մեռնող թագաւորին յու-
ղարկաւորութիւնը ըրին, մատրիտ քաղ-
քին մշտնջենաւոր կառավարը՝ որ կըսվէր
Ալթամիրա կոմս, հրապարակաւ կանչեց
սովորութենը կեօրէ. «Կաստիլիա, Կաստիլիա,
Գ. կարոլոսին համար է։ Ոսկիէ արծըթէ պըզ-
տիկ ըստակներ ցրուելով նոր թագաւորին
պատկերովը տպած, ժողովրդեան բազմու-
թիւննալ Կեցցէ՛ արքայ կանչելով։

Երրորդ Կարոլոս Նաբօլիի Թագաւորութենէ հրաժարէ, սպանիայի Թագաւոր ըլլալու համար.

1759:

Երբոր Գ. Կարոլոս իմացաւ որ սպանիայի վրայ Թագաւոր է պիտոր, սկսաւ պատրաստութիւն տեսնալ հոն երթալու, ինչվան ալ որ ինքը սպանիա հասնի; կառավար սպանիայու դրաւ իր մայրը Եղիսաբեթ Թագուհին Ֆառնեզեան, որ վարժ էր կառավարելու: Իսկ Նաբօլիի վրայ Թագաւոր ձգեց իր առջինեկ զաւակը փիլիպպոս, վասն զի անիկայ իր ծնանելէն ետև 1747, երբոր տասնըմէկ ամսըվան եղաւ, մէկ վերնատութէ (Թութարըխի) ցաւ մը ունեցաւ, ասկից միշտ տանջըվելով անզգայ քան մընէր եղած, անմիտ ու անընդունակ մարդկային գործառնութեանց (մտաղահալթի). Նոյնպէս չըդրաւ երկրորդ զաւակն ալ՝ որ սպանիա պիտոր տանէր իբրև իշխան ասդուրիոյ, հապա իր երրորդ զաւակը դրաւ Դ. Ֆէրտինանտոս անուանելով:

Անոր համար կանչեց ամմէն տէրութեանց դեսպանները, անոնց առջին հոկտ. 5. հրապարակաւ հրաժարեցաւ իր տէրութենէն Նաբօլիի, ու տըվաւ Ֆէրտինանտոսի, անիկայ դնելով Թագաւոր Նաբօլիի, ասանկ ալ թուղթ մը հանեց: “Աս դարուս մէջ
„ եղած դաշնադրութիւնները կըցըցընեն
„ որ՝ ամմէն եւրոպային քաղձանքը աս է

„ որ՝ աւստրիական (Նեմչէի) ու սպանիա-
„ կան տէրութիւնները զատվլին իտալական
„ տէրութեան. Հիմա իմ եղբօրս մեռնելէն
„ ետև որ էր Դ. Ֆերտինանտոս, որովհե-
„ տև ինծի վիճակեցաւ սպանիայու թագ-
„ տը նստիլ, ինծի կեցնայ մէկ զատ թագա-
„ ւոր մը դնել նաբօլիին վրայ, անոր հա-
„ մար մէկ ժողով մը դրի երևելի խորհըր-
„ դականներու՝ որ քննեն նային իմ առջի-
„ նեկ զաւկիս որպիսութիւնը. աս ժողովը
„ բժիշկներով քննելով ինծի հասկցուցին
„ որ ատիկայ ամենևին ընդունակ չէ. չու-
„ նենալով տղայութէ վեր ոչ բանականու-
„ թիւն, ոչ կրօնք, և ոչ հասկցողութիւն,
„ յոյսալ չըկայ ետքը շտկըվելու. անկէց ի-
„ րաւունքը կեցնայ իմ երրորդ զաւկիս վի
„ Ֆերտինանտոսի։ Ասոր կըյանձնեմ իմ
„ երկիրներս որ իտալիայի մէջ ունիմ. ինչ-
„ պէս որ ես սպանիայի մէջ՝ անանկալ իմ
„ զաւակս իտալիայի մէջ ըլլայ ինքնագլուխ
„ անկախ թագաւոր, և որովհետև դեռ
„ պզտիկ է, մէկ սահմանադրութիւն մը
„ կըթողում իմ ստորագրութեամբս ու կնքովս
„ հաստատված. կուզեմ որ անոր կեօրէ
„ կառավարէ քանի որ պզտիկ է։ Արհրա-
„ մեմ որ ասկէց ետքնալ քանի պզտիկ տար-
„ վօք թագաւոր նստին իմ ունեցած եր-
„ կիրներուս վրայ որ իտալիայի մէջ են,
„ ինչվան որ 16 տարվան ըլլան՝ պզտիկ
„ սեպվին, 16 տարին անցնելէն ետև մեծ-
„ ցած սեպվին, ու բացարձակ կարենան
„ կառավարել։ Արհրամեմալ որ տղիս ետև-

„ էն եկած յաջորդութիւնը մէջը ըլլայ առ-
„ ջինեկներու վրայ մանչու դիպցէն. Թէ
„ որ Ֆերտինանտոս զաւկիս մանչուն ձիւ-
„ ղը հատնի, ան ատենը՝ որ ցեղն որ աւելի
„ մօտիկ է վերջի Թագաւորին՝ ան ցեղին
„ մանչու ձիւղէն առջինեկը Թագաւոր ըլ-
„ լայ... սաանկ պտըտի ամմէն զաւկընե-
„ րուս ցեղին վրայ, որ ունիմ և կամ պի-
„ տոր ունենամ։ Իսկ Թէ որ ամմէն մանչ-
„ զաւկիս ձիւղը հատնի, անցնի ան աղջ-
„ կան ցեղին առջինեկ մանչերու վրայ, որ
„ ամմէնէն աւելի մօտիկ են վերջին Թա-
„ գաւորին։ Երբոր աս ցեղնալ հատնի, ան
„ ատենը Թագաւորութիւնը անցնի իմ եղ-
„ բօրս Փիլիպպոսի ցեղին վրայ ըստ վերո-
„ գրեալ կարգի. բայց միշտ յիշելով որ՝
„ աս իտալիայի տէրութիւը Նաբօլիի կամ
„ երկու Սիչիլիային վրայ՝ ոչ երբէք միա-
„ նայ պիտոր Սպանիայի տէրութեանը հետ։
„ Ասանկով ես Նաբօլիէն գացածիս պէս՝
„ Ֆերտինանտոս իրեն խորհրդականներով
„ Թող բացարձակ կառավարէ աս երկիր-
„ ները որ կուտամ և իրեն կըպարգևեմ, որ-
„ չափ որ երկիր՝ ապրանք՝ իրաւունք՝ ու մա-
„ կանուն որ ունիմ„ ։

Աս գիրս ստորագրեցին նոյն կարոլոս, ու
իր տղան Ֆերտինանտոս 1759. Հոկտ. 6.
անոնցմէ ետև ստորագրեցին երևելի պաշ-
տօնատէրներ, որոնց մէջն էր բէռնար-
դոս դանուչչի։ Ասկէ ետքը նոյն կարոլոս
Հրապարակաւ Թախտը նստելով ժողով ըլ-
լաւ կանչեց քանի մեծեր ու դեսպաններ

որ կային Նաբօլիի տէրութեան մէջ, բարձր ձայնով կարդալ տըվավ դանուչչին աս թուղթս. Թուրը հանեց՝ իր տղին Ֆերտինանտոսի ձեռքը տըվավ, որ ան ատենը ութը տարվան էր, ըսելով իրեն։ Այս Թուրս պէտոր ըլլայ քուկին ու ժողովրդեան հաւատքը պաշտպանելու համար, ոչ երբէք ուրիշներուն ճիտս տալու համար։

Այն ատենը Նաբօլիի մէջ եղած ամենէն դաս մարդիկներու հաւատարմութիւն երդվըն-ցան պզտիկ նոր Թագաւորին Ֆերտինան-տոսի. կարօլոսնալ խորհրդականներ ընտ-րեց, որպէս զի քանի որ պզտիկ էր Թագա-ւորը իրենք կառավարեն, որոնց մէջն էր նաև դանուչչի դիւանագպիրը տէրութեան. ասիկայ ամենէն աւելի քանքարաւոր մարդ ըլլալով, ամեն բանք ինքը կըկառավա-րէր։ Կարօլոսին սաանկ հրաժարելուն վը՛ ոմանք իշխաններէն բողոքներ հանեցին, բայց փոփոխութիւն մը չըկըրցան ընել։

Նոսամայի կարգադրութիւնը վըրայ։

Աքվիսկըւանա եղած 1748 դաշնադրու-թեր կեօրե՝ Փիլիպպոս բառմային դուքսը (պէյը) որ վերոյիշեալ Գ. կարօլոսին եղ-բայրն էր, պիտոր ըլլար Նաբօլիի Թագա-ւոր, բայց զանազան մտածմունք արգելք եղան. մէյմը որ՝ եղիսաբեթ Թագուհին Ֆարնէզեան խիստ կըքաղձար որ չըմեռած՝ տեսնայ իր զաւակը Գ. կարօլոս՝ սպանիայի

Թագաւոր նստած. փիլիպպոսեան ալ որուն կրնար Նաբօլլի Թախտը նստիլ, գոհ եղաւ անոր տեղը ըստակ առնել, որ աս պատճառով խրկեց իրեն վերոյիշեալ Թագուհին եղիսաբեթ։ Մէկալ մտածմունքն ալ աս էր որ՝ նոյն աքվիսկրանայի հաշտութեր կեօրէ՝ կայսրուհին մարիամ Թերեզիան պիտոր ըլլար տէր բառմայի ու բիաչէնցայի երկիրներուն ինչվան նուրա գետը, բայց 1753 արանվէզ եղած դաշնադրութեը խօսք կապեցին որ՝ անոր եկամուտին տեղը ըստակ տան, Ճինիվիզին Թանգարանին (պանքօին) մէջը այնչափ ըստըկի գլուխ դնելով, կայսրուհին ալ որովհետեւ ծանր պատերազմի մը մէջ պիտոր մտնար պրուչին դէմ՝ որ եաքը պատմենք, աղէկ սեպեց երկրին տեղը այնչափ ըստըկին գլուխը առնելու. հիմա սպանիայի արքունիքը վախցաւ որ՝ փիլիպպոսը բառմային Թախտէն հանելով սպանիայի կամ Նաբօլլի Թախտը նստեցընելու պատճառովը, չըլլայ որ բառմային ու բիաչէնցային դքսութիւնը (պէյութիւնը) աւստրիոյ կամ նեմցէին ձեռքը անցնի։ Մնաց որ՝ ան պաշտօնատէրերը որոնց կայսրուհին յանձներէր Ճինիվիզ դրած ըստակը վեննա բերելու, կամ անհոգ եղան զգուշանալու, և կամ անհաւատարիմ գտնըվելով կերան, ըսելով որ՝ երրորդ մասը ան ըստըկին խարճերու գնաց։ Սառտենեայի Թագաւորին հետն ալ ուրիշ խօսք կապվեցաւ բառմայի դքսութեն երկիրներու վրայ։ Վասն զի աքվիսկրանու

եղած հաշտութեան մէջ չորրորդ. Թէութիւնը աս էր որ՝ երբոր բառմայի իշխանը առանց մանչ զաւակի մեռնի, կամ թէ բառմայի իշխանը յաջորդելու համար Նաբօլիին Թախտը անցնի, ան ատենը բիաչէնցան ու բիաչէնդինօն նուրա տեղէն ան դին՝ սառտէնեայի Թագաւորին տրվի. Հիմա Գ. Կարոլոսին Թագաւոր նստիլը սպանիային վրայ առիթ առաւ սառտէնեայի Թագաւորը, պահանջել սկսաւ իր իրաւունքը ըսելով թէ, եկավ ատեն որ ան տեղվանքները իրեն անցնի դաշնադրութեանը կեօրէ, որուն պաշտպան էր կեցած Ֆրանսային Թագաւորը, Թէպէտ և Նաբօլի ուրիշի ձեռք անցաւ։ Ֆրանսային Թագաւորը կըճանչնար որ իրաւունք ունի, բայց չէր ըլլար իրեն տալ ան երկիրը, կամ անոր նման մէկ երկիր մը առանց մէկ մեծ պատերազմ բանալու։ Անոր համար ետքերը 1763, Ֆրանսայի ու սառտէնեայի Թագաւորին մէջ մէկ դաշնադրութիւն մը եղաւ երկիրներուն տեղը ըստակ տալու 8 միլիոն դուռինեան լիռէ, այս Թէութիւն որ՝ երբոր սառտէնեայի Թագաւորին ձեռքը անցնի ան երկիրները, ան ատենը անչափ ըստակը Ֆրանսայի Թագաւորին հատուցանէ, ետ տայ։

## Երրորդ կարոլոսին ճամբորդութիւնը նաբօլիէն սպանիա երթալը, սպանիային թախտը նստիլը, ու նոր ըրած աղէկութիւնները.

### 1759— 1760.

Երրորդ կարոլոս՝ թագաւոր նստեցընելու հետ էր ֆէրտինանտոս իր տղան նաբօլիի վրայ, քատիչէն ու քառդաճէնաէն որ սպանիայի նաւահանգիստներն են՝ մէկ նաւատորմիղ (տօնանմա) մը ելաւ 16 մեծ նաւ, ու քանի մը ֆուխաթա, որոնց ուրիշ նաւերալ միացան մալթայէն գալով. ասոնք 1759. սեպտ. 29. հասան նաբօլի. թագաւորը Գ կարոլոս՝ ու թագուհին, նաև իրեն յաջորդօղ զաւակը որ Դ կարոլոս ըսվեցաւ, իրեք ուրիշ թագաւորազուն զաւկըները՝ ու երկու իշխանուհիք՝ մեծ հանդէսներով, ժողովրդեան բազմութք գնացին զանազան նաւերու մէջ մտան հոկտեմբերին սկիզըները։ Ժողովուրդը շատ ակամայ բաժնըվեցաւ ասանկ թագաւորէն՝ որ շատ բարերարութիւն ըրած ունէր իրենց. Ճամբորդութիւննին շատ յաջողութք եղաւ, չորս օրվան մէջ պառչէլլօնա հասնելով, որ սպանիայի մէջ քադալօնիա գաւառին մայր քաղաքն է. ուզեց որ պառչէլլօնային հին արտօնութիւնները նորէն դարձընէ, որ 1640ին եղած ապստամբու-

Թիւնէն առաջ ունէր (1)։ Երբոր սաստա-կօցցա հասաւ կարօլոս, իր երկու զաւակը՝ և մեծ մասը Թագաւորազուն իշխաններուն հիւրընտցան հարսանիթ ( խրզամուխ ) հի-ւրնտութեամբ. անոնք ըուրնտնալէն ետև

դեկտեմ. 9. մտան մատրիտ ։

Շատ ուրախուի եղավ կարօլոսի ու եղբ-սայբեթ Թագուհիին իր մօրը, որովհետև 28 տարի էր որ իրար չէին տեսած. շատ պարգևներ բաշխեց Թագուհիին, ու շատ հանդէսներ ( զինէթներ ) ըրին ան ատե-նը, բայց 1760. յուլիսի 13 ներս մտնալու և Թախտը նստելու հանդէսը ըրին սպա-նիական մեծութը՝ որ շատ քան առած ու-նի ասիացոց սովորուէ (2). ցուլերու ( պու-ղաներու ) կռուելուն խաղը ըրին ։ Հին սովորութիւն մընալ ունէին զարհուրելի, հերետիկոսները՝ ու ան հրէաները որ ձեռք ընկերէին, Թագաւորին պսակված օրը հրապարակաւ կերէին, հիմաւ ուզեցին ընել՝ բայց կարօլոս պզտիկուցմէ անչափ

(1) Նաև ան որ աս դարուս սկիզբէն առաջ ունէր. վասն զի երբոր աս դարուս սկիզբը ծեծ բացվեցաւ սպանիայի Թագաւորին յաջորդութենը վրայ, որովհետև պառչէլլօնան դէմ կեցողներէն մէկը եղավ, որ չէին ուզէր պօրպօնեան ցեղէն Թագաւորելը, ան ատենը Ե փիլիպպոս պօրպօնեան սպանիայի վրայ Թագաւորելով, պառչէլլօնան 1715 իր տակը առնելով, իր ամմէն արտօնութիւնները վերցուցերէր, պարտքալ ձգերէր վրան՝ որ մէկ մեծ խումբ մը զօրաց իր ըստրկովը պահէ ։

(2) Աս սովորութենը արպըները խօթեցին հօն, երբոր եօթներորդ դարու մէջ սպանիան առին ։

տարի նաքօլի նստած ըլլալով՝ իդալացոց բնութիւնը առեր էր, խիստ սոսկում ցըցընելով չիթողուց ընել ։

Յուլիսի 15. մեծ խորհրդականը կարդաց երդման ձեւը, որ կարոլոս իբրեւ Թագաւոր երկու քասդիլիայի ու արակօնայի՝ ունէր երդվըննալ ժողովրդեան, որպէս զի իրենց սովորութիւնները ու իրաւունքները պահէ. մանաւանդ արտառոց դիպուածներու մէջ տուրք ձգելու համար օրինաւոր ժողովքներով. աս Թուղթս սպանիացիք Ընծ Եօղի կըկոչեն ։ Արագոնին դրանաւ ան երդումը հաւատարմութեան՝ որ զանազան գաւառներ իրենց նուիրակներով պիտոր երդվըննային Թագաւորը ընդունելու, ու Թագաւորին զաւակը [1] Ճանչնալու Իշխան ատուռիոյ, որ էր ըսել Յաջորդ ու Ժառանգ Թագաւորութեան [2] ։ Աս երդումը ըրին Թագաւորնալ, ժողովուրդնալ ։

Կարոլոս սպանիային Թախտը նստածին պէս՝ սկսաւ բարեկարգութիւններ ընել, որ իր եղբօրը ատենը շատ աւրըված էր, հիւանդ ու ցաւագար ըլլալով անիկայ. իր ժողովուրդը կընայէր կըհոգար իբրեւ իր ընկերները ու բարեկամները, չէ թէ իր հպատակները. ամմէն ոլքերուն ու ոլքեվարներուն մէյ մէկ չափաւոր ատրուստ կապեց, եւ որովհետեւ Ճ փիլիպպոս Թագա-

(1) Աս զաւկին անունը կըռչէր կարոլոս անդոնիոս ։
(2) Աս բանս հին քասդիլիայի Թագաւորներէն դըրված էր ։

ւորը շատ պարտք թողուցերեր, կարօղոս հրամանն հանեց աղէկ եղանակով մը վճարելու։ Սանկալ վճարել հրամեց անձոռնի պարտքերը՝ որ եղած էին Գ. փիլիպպոսի, Դ. փիլիպպոսի, ու Ե. կարօլոսի ատենները, Թէպէտ և սպանիայէն խորհրդականները ցըցուցին Թագաւորին որ՝ ան պարտքերս արձըկված էին։

Կարօլոս իտալիայի մէջ շատ կենալով աղէկ հասկըցերեր որ՝ երկրագործութիւնը մեծ հարստութի՛ կըբերէ, աւելի հարուստ կըլլայ ան աշխարհը՝ որ ուրիշ աշխըրքներէն աւելի ցորեն, եղ, բուրդ, գինի, ու խփէկ ունի, մանաւանդ երբոր ծովեզերեայ ըլլայ, քան թէ ան աշխարհը՝ որ ոսկի հանք ( մատէն ) ունի, անոր համար սպանիա եկածին պէս հրամեց որ՝ անտալուսիա, մուրչիա, ու նոր քասդիլիա, Թագաւորական խարճով վարձուցան ըլլըվի, որոնց գետիններ բարեբեր էին, բայց երեսէ ձգած ըլլալով չէին բանեցընէր։ Սեջինները Թագաւորին պարտք ունէին, ցորեն ու ըստակ առած ըլլալով 1748էն մինչվան 1754. ասոնք ամմէնը շնորհեց ( պարգևեց ). ասկէց զատ՝ դուրսի երկիրներէն շատ ցորեն բերել տըլված ցանելու համար։ Սպանիացիք խիստ ուրախացան աս բանէրուս վ̃ր, բայց պաշտօնատէրերը որ իրենց շահը միայն կընայէին, ու ժողովուրդը աղքատցընելով իրենք հարստանալ կուզէին, գաղտուկ այնչափ արգելքներ դրին աս բանէրուս դէմ, Թագաւորին ու ժողովրդեան մէջնալ այն-

չափ բաներ ձգել տըվլին, որ սպանիացիք առջինէն աւելի թշուառութեան մէջ ընկան:

Մէկ անկարծելի սուգմընալ արքունեաց վրայ հասնելով առջի ուրախութիւնը բոլորովին կորմնցուցին. սուգը աս էր որ՝ մարիամ ամալիա թագուհին՝ որ սաքսոնիայի տնէն էր՝ 1760 սեպտեմ. 22. տիբացաւով (հիւմմայով) պառկելով, չորս օրէն ետև մեռաւ 36 տարվան. օխտը զաւակ ձգելով, հինգ մանչ ու երկու աղջիկ. կարոլոս թագաւորը ան ատենը 44 տարվան էր, մեծ կսկիծ ունենալով իր սրտին մէջը, ըսաց ան խօսքը՝ ինչ որ ատենօք իր հանրին ԺԴ լուիզը ըսեր էր թագուհիին մահուան վրայ: Աս իրեն մեռնիլն էր մէկ հատիկ նեղութիւնը, որ 22 տարվան մէջ տըւաւ ինծի թագուհին: Անկէց ետքնալ միշտ իր յիշատակը կսկիծը պահելով կարոլոս, ուրիշի հետ չիկարգըվեցաւ: Ըսեն որ որովհետև սաքսոնիայն ան ատենը շատ նեղութեն մէջ էր պրուշի ձեռքէն, որ վարը պիտոր պատմենք, թագուհին անոր վրայ հոգ տրտմութիւն ունենալով կամաց կամաց իր առողջութիւնը կորմնցուց:

Քանի մը ամիս առաջ նաև քառամայի թագուհին մեռնելով, մեծ սուգ թողուց սպանիայի արքունեացը. աս թագուհիս լուիզիա եղիսաբեթ՝ ԺԵ լուիզին ֆրանսայի թագաւորին առջինեկը ըլլալով, շատ հեղ ֆրանսա կերթար իր հայրը տեսնալու, անկէց շատ ըստըրկով կըդառնար, ասոր

անոր կըբաժնէր քաղաքին մէջ։ Նաւ որով֊հետև Փրանսային արքունեացը մէջ շատ կըլլար ծաղկի հիւանդութիւն, քաղաքի Թագուհինալ յաճախ երԹալ գալովը հոն, պըլշտորկվեցաւ, իր ծաղիկ հասակին մէջ մեռաւ։

## Փրանսա եղածները Թագաւորին ու քաղաքենդրին մէջ.

1757 ։

Լուիզ ԺԵ Փրանսային Թագաւորը կը֊տեսնար որ՝ հաւատքը օրէօր կըմոռցընար Փրանսային մէջը ; և օրէօր կըշատնար իր Թագաւորութեն Թշնամիները, սրտին մէջը կասկած ունէր կիմանար՝ Թէ որոնք են իւ֊րեն մահ ուզողները, երբոր ողջընցաւ, փարէզի քաղաքենդրին մէջէն 16 հոգի քշեց, երկու խորհրդականներուն քերդերը դնել տալով. ատոր վրայ քաղաքենդրին մէջի եղողները խիստ նեղեցան, որոնց Թա֊գաւորը միջին խօսքերով պատասխան տը֊վաւ։

Օգոստոսի մէջ Սէնծ խոայը կամ խորհրդուրդը՝ որ ինը ամեն վեր ինքը կընէր քաղաքեն֊դրին պաշտօնը, մարդ խրկեց վէռուսայլեա֊ուր կընտնէր Թագը, աղաչելով որ մէյ֊մը քաղաքենդրին մարդիկները ետ կանչէ, մէյմնալ՝ իրեն հանած իրեք հրամանը։ Ու խնդիրքս համարձակ կընէին, վասն զի գի֊տէին որ ժողովուրդը աւելի քաղաքենդրի

դին էր, մանաւանդ որ բօմբառտը խաթուննալ իրենց դին վատորկած էին, որ Թագաւորը հիւանդութեն ատենը իր պալատէն (սէրայէն) դուրս հաներեր, ողջընալէն ետև նորէն ներս առաւ: Ըս խաթունը Պէռնիս քահանան ձեռք առաւ, անոր բերնովը շատ յորդորեց Թագաւորը որ բառլամենդին հետ հաշտըվի, աչք գոցելով ինչ որ հաւատքի դէմ բաներ կընելին. տկարամիտ Թագաւորնալ ինչ որ ուզեց բառլամենդը՝ չէ չիկրցաւ զուրցել, կատարեց. Սուպօնեան ճծարաններուն արգելեց որ՝ իրենց ժողովքին մէջը չխօսին յանսեններանց հերետիկոսութեն վրայ. Ճեմարանիներալ ապսպրեց որ՝ Սնածին կանգակին վրայ չխօսաթեն :

Երբոր բառլամենդը եկավ տեղը նստաւ, ատեն ունեցաւ իրեն վրէժը հանելու, մանաւանդ փարէզի արքեպիսկոպոսին վրայ, որ եկեր տեղը նստերեր. անոր համար Թագաւորին դիպայէն երկու հոգի խրկել տըվավ իրեն՝ որպէս զի հրաժարի իր աթոռէն, խոստանալով թէ նը գերմանոսի արքայութիւնը իրեն տան, որ գրեթէ ամենէն հարուստն էր Փրանսայի մէջ, ու քառտինալ ընեն զինքը. իր տունեալ դուքս (պէյ), ու Նոռի ընեն, որ Փրանսայի մէջ ծայրագոյն մեծութիւն է : Բայց փարէզին արքեպիսկոպոսը Պէօմօն՝ առաքելանման վարդապետ ըլլալով՝ ատանք ամենը մերժեց, ու հաստատուն կենալով յայտնի արգելեց յանսեններանց ու խորհուրդնե-

ըը առնելու, անոր համար նորէն քշեցին Սօֆքա տեղը․ անիկայալ քշված տեղէն մէկ յորդորական թուղթ մը գրեց իր թեմի մէջի եղօղներուն, որով կըցըցնէ իր հաստատուն հաւատքը, ջերմեռանդութիւնը, խոնարհութիւնը, ու սէրը ։

Ասոր նման շատ եպիսկոպոսներ և ուրիշ եկեղեցականներ քշվեցան ։



# ՑՈՒՑԱԿ ԳԼԽՈՑ

## ՀԱՏՈՐՈՅՍ·

Երես.

